«Ազգայնական միտք» - **2**

ՀԱՅԿ ԱՍԱՏՐՅԱՆ



# ԱՐԹՆԱՑԻ՛Ր, ՀԱ՛Յ ՄԱՐԴ

**Նվիրվում է**
**Հայկ Ասատրյանի**
**ծննդյան 100-ամյակին**

Ծուփ՛ր այդտեղ թղթի պէս եւ գալարուիր որքան ուզում ես, մարմնի մոխիր եւ ոգու ստուեր կը դառնաս դու, եթէ յաւիտենականը իր ողջ խանդով չի արձագանքում մէջդ - «Գոյ ես, ո-րովհետեւ, այնքան ես հին, որքան՝ նոր»:
Ունայնութեան մնացորդ է որեւէ երամակ, նախիր կամ ժողովուրդ, եթէ դա իր գոյութեան պատճառներից դէպի ճակատագրի հարցերը չի անցնում նպատակի կամուրջով, եթէ արշալոյսին չի զգում, որ կեանքն աւելի՛ խոր իմաստ ունի, քան ապրելու հաճոյքն ու մահուան ցաւը, եւ վերջալոյսին չի գիտակցում՝ հենց նրա համար կրկին պէտք է արթնանալ, որ վաղուայ մէջ ն՛յնքան իմաստ կայ, որքան երէկուայ:
Հազարամեակների ձայնով մենք կանչում ենք -
«*Արթնացի՛ր, հա՛յ մարդ*»:

Յ. Ա.

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

«Ազգայնական միտք» շարքի հերթական հրատարակությունը ներկայացնում է մեր դարի հայ ազգային մտածող, իմաստասեր Հայկ Ասատրյանի տեսական մեծարժեք ժառանգության մի ստվար մասը: Գրքում զետեղված գիտական - ճանաչողական, պատմական - իմաստասիրական, հրապարակախոսական եւ այլաբնույթ նյութերը ամբողջական պատկերացում են տալիս հեղինակի գիտական հարուստ մտապաշարի, ամրակուռ աշխարհայացքի, երեւույթները էաբանորեն վերլուծելու կարողության մասին: Հրատարակվող նյութերի մի մասը վերջին տարիներին լույս է տեսել հայրենական մամուլում, առանձին գրքույկներում, իսկ շատ հոդվածներ Հայրենիքում տպագրվում են առաջին անգամ. այդ տեսակետից, սույն գրքույկը Հ. Ասատրյանի գործերի՝ մինչ այսօր եղած առավել ամփոփ հրատարակությունն է:

Գրքույկում տեղ գտած մի քանի հոդվածներ, որոնք ժամանակին գրվել են իբրեւ խմբագրականներ, բնագրում անստորագիր են, սակայն ակնհայտորեն պատկանում են Հ. Ասատրյանի գրչին:

Հեղինակի որոշ դատողություններ, որ հիմնվում էին իր ժամանակի գիտական մտքի վրա, այսօր՝ հայագիտության նոր նվաճումների առկայությամբ, ենթակա են սրբագրման:

Թեեւ Հ. Ասատրյանի անունը վերջին տարիներին հայտնվել է մեր մի քանի մտավորականների ու հասարակական գործիչների շուրթերին, սակայն, ցավալիորեն, նա դեռեւս մնում է իբրեւ «անհայտ» հեղինակ, իսկ իր գաղափարական բարձրարժեք ժառանգությունը, նույնիսկ գիտական շրջանակներում, չմարսված ու չարժեւորված:

*«Ազգայնական» Ակումբ*

# ՀԱՅԿ ԱՍԱՏՐՅԱՆ

*(կենսագրական համառոտ ակնարկ)* (1)

> **«Իբրեւ գիտության եւ տեսական խղճմտանքի մարդ՝ [դոկտ. Հայկ Ասատրյանը] իր խոսքը ծառայեցրել է ճշմարտության, իսկ փրկարար ճշմարտությունը՝ իր անիրավված ժողովրդին»:**
>
> *Գ. Նժդեհ*

Մեր դարի 30-ական թվականների Հայկական ցեղային շարժման գաղափարական գործիչների մեջ, իր հզոր իմացականությամբ եւ վառ արտահայտված անհատականությամբ առանձնանում է Հայկ Ասատրյանը, «Նժդեհի գլխավոր՝ գուցե եւ միակ խորհրդատուն» (2), որին Կարո Գեւորգյանը բնորոշում է՝ «գիտական մտապաշարով հարուստ եւ իր փիլիսոփայատիպ խառնվածքով հանրածանոթ...» (3):

Ծնվել է 1900թ. փետրվարի 5-ին, Ալաշկերտում (4): Արմատները Տարոնից են: 8 տարեկանում կորցնում է հորը (հայրը՝ Կիրակոսը, գյուղապետն էր), եւ քրոջ ու եղբոր հետ մնում է մոր խնամքին:

Նախնական կրթությունը ստացել է տեղի վարժարանում, որն ավարտելուց հետո մտնում է Հ.Յ.Դ. Աշակերտական միության շարքերը: Այնուհետեւ, ուսումը շարունակում է Երեւանի թեմական դպրոցում: Հայաստանի Հանրապետության օրերին, Հայկ Ասատրյանը՝ որպես պատգամավոր Աշակերտական կազմակերպությունից, մասնակցում է Հ.Յ.Դ. 9-րդ ընդհանուր ժողովին: 1918-19 թվականներին նրա խմբագրությամբ, Երեւանում լույս է տեսնում Հ.Յ.Դ. Աշակերտական միության օրգան «Շանթ»-ը (5):

Իր մասնակցությունն է բերում 1921թ. փետրվարյան ապստամբությանը, որի ճնշումից հետո, ծերբակալությունից խուսափելու համար, ստիպված, հրաժեշտ տալով հարազատներին, անցնում է Թավրիզ: Շատ չանցած, Թավրիզ է գալիս նաեւ Գ. Նժդեհը եւ միասին անցնում են Եվրոպա: Եվրոպայում նա ընդունվում է Պրագայի համալսարանի փիլիսոփայական բաժինը, որն ավարտում է 1930-ին՝ ստանալով դոկտորի աստիճան: Իր հետ ուսանած Անդրե Ամուրյանը հետագայում հիշում էր. «Հայկ մեծ եռան-

դով նուիրուեցաւ փիլիսոփայութեան ճիւղին: Կարդալու եւ պարապելու հետաքրքրական եւ ինքնօրինակ կերպ մը ունէր: Նախ՝ վերարկուն երբէք չէր հագնէր, այլ՝ կը նետէր ուսերուն: Յաճախ կը նստէր յատակին ու Նիցշէի եւ կամ Կանտի գիրքը առջեւ դրած՝ կը կարդար եղանակով, ճիշտ դերվիշի տպաւորութիւն ձգելով: Արդէն կենցաղով ալ Հայկը դերվիշ էր, աննիւթասէր, կեանքի հաճոյքներուն վրայ քամահրանքով նայող. Կ'ատէր սուտն ու կեղծիքը, շողոքորթութիւնն ու քծնանքը, մարդոց թերութիւնները կ'ըսէր իրենց ճակտին» (6):

Ուշագրավ են Ասատրյանին նվիրված հիշողություններում Բուլղարիայի նրա կուսակիցներից մեկի (որ հանդես է գալիս «Սօսեաց տղան» ծածկանունով)՝ իր իմացականությունը բնորոշող վկայությունները: «Մղուած իր սէրէն, ինչպէս եւ նպաստաւորուած իր արտակարգ յիշողութենէն, ան (իմա՛ Հ. Ասատրյանը - Մ. Լ.) ուսումնասիրած էր Հայաստանի աշխարհագրութիւնը մանրամասնօրէն: Հայերէն թէ օտար լեզուներով գրուած բոլոր գործերը, որոնք կը խօսին մեր երկրի մասին, ծանօթ էին անոր: Նաեւ մեր մատենագրութեան մէջ չկար տող մը, որուն վրայ ան տքնած չըլլար: Նարեկացիէն երկար հատուածներ կ'արտասանէր գոց: Իսկ առհասարակ հայերէն լեզուն ան իրեն համար վերածած էր տեսակ մը մասնագիտութեան: Տեւապէս «կը խուզարկէր» բառերը, կը բաղդատէր օտար բառերու հետ ու չէր հանդարտեր, մինչեւ որ չլուծէր անոնց ծագման կամ արմատի հանգոյցը: Սեղմ՝ իր մտածումներուն մէջ եւ ատկէ՝ քիչ մը «թանձր» արտայայտուելու իր ձեւով, Հ. Ասատրեան հարկադրուա՞ծ կ'ըլլար, թէ կը նախասիրէր նոր բառեր կերտել: Իր փոքրաթիւ գրքերուն եւ բազմաթիւ յօդուածներուն մէջ ունի մեծ թիւով բառեր, որոնք «իրն» են, եւ զորս կ'արժէ «լոյսին բերել», տրուած ըլլալով որ անոնցմէ շատերը արտայայտիչ են, հեշտալուր եւ մեր լեզուին օրէնքներուն համապատասխան: Որովհետեւ այս «տէրվիշը» ոչ միայն հասկացողութիւն եւ իմտութիւն, այլեւ ճաշակ ունէր: Ճաշակ՝ ամէն բանի մէջ ու գեղեցկագիտական ըմբռնումով» (7): Այնուհետեւ Հ. Ասատրյանը անցնում է Բուլղարիա, ուր մնում է Գ. Նժդեհի մոտ եւ գործում նրա հետ: Բուլղարիայի հետ է կապված նրա ազգային-քաղաքական գործունեության ամենաբեղուն եւ եռանդուն շրջանը: Հ. Ասատրյանը ուսուցչություն էր անում Սոֆիայի Գեւորգ Մեսրոպ ճեմարանում եւ, միաժամանակ, Հ.Յ.Դ. տեղի ԿԿ - ի քարտուղարն էր:

Հ. Ասատրյանը եղավ Նժդեհի ամենամոտ գործակիցը՝ 30-ական թվականների Հայկական ցեղային շարժումը ծավալելու եւ հիմնավորելու գործում: «...Հայկը աջ բազուկն էր Նժդեհին, երբ «Ցեղակրօնութիւն» գաղափարաբանութիւնը կը խմբագրէր» (8): Հ. Ասատրյանը խորապես ընկալեց

Նժդեհի ուսմունքը եւ, մի տեսակ, մեկնիչ (թերեւս չգերազանցված) հանդիսացավ նրա գաղափարների: Վերջինիս երկու մենագրությունների - «Ցեղի ոգու շարժը», «Ցեղը եւ իր տականքը» - վերաբերյալ Հ. Ասատրյանի մեկնաբանություններն ու խորհրդածությունները լավագույնս ա՛յդ են վկայում:

1932թ. Սոֆիայում, նրա նախաձեռնությամբ եւ խմբագրությամբ լույս է տեսնում «Խռովք» իմաստասիրական - գիտական ամսագիրը, որը, սակայն, կուսակցության կողմից աջակցություն չի ստանում եւ փակվում է: 1935թ-ից, Բուլղարիայի Հ.Յ.Դ. ԿԿ-ի ներսում ունեցած տարաձայնությունների պատճառով, կուսակցության հետ իր կապերը խզում է: Դրանից հետո, 1936թ., կրկին Սոֆիայում, Ներսես Աստվածատուրյանի (9) հետ լույս են ընծայում «Ցեղ եւ Հայրենիք» կիսամսյան, որը նույնպես երկար կյանք չի ունենում:

1937թ-ին՝ պաշտոնապես, Հ.Յ.Դ. բյուրոյի կողմից, հեռացվել է կուսակցությունից (10): Ի դեպ, Ասատրյանը կուսակցությունից հեռացվել է մի փոքր շուտ, քան Նժդեհը, եւ ոչ առանց հիմքի՝ «Ամրոցը», իր 1937թ-ի թիվ 20-ի խմբագրականում Հայկին՝ այս կապակցությամբ, համարում էր քավության նոխազ Նժդեհի «մեղքերին»:

Մեզ հայտնի են 1933թ. Սոֆիայում հրատարակված նրա երկու գրքույկները՝ «Ցեղանենգ շեյթանը» եւ «Մտածումներ հայկական ճգնաժամի, Հայ հեղափոխության եւ Մայիս 28-ի մասին»: 1995թ-ին Երեւանում լույս տեսավ նրա հոդվածների ժողովածուն:

1937թ-ից, Նժդեհի հետ հիմնում եւ մինչեւ 1944թ-ը հրատարակում են «Ռազմիկ» քաղաքական- հասարակական կիսաշաբաթաթերթը, որը, փաստորեն, Բուլղարիայի Ցեղակրոն կազմակերպության թերթն էր: Խմբագիրը Հայկ Ասատրյանն էր:

Եղել է Տարոնական շարժման հիմնադիրներից ու գաղափարախոսներից մեկը եւ 1938-39 թթ-ին, Ն. Աստվածատուրյանի հետ խմբագրել է Սոֆիայում հրատարակվող «Տարօնի Արծիւ»-ը, որը Տարոն-Տուրուբերան հայրենակցական միության պաշտոնաթերթն էր:

1942թ. նա ավարտում է Հայկական հարցին եւ արժեքներին նվիրված իր «Հայաստան - Արիական նախադիրք Առաջաւոր Ասիայում» գրքի Ա մասը (գրքի առաջաբանը գրել է Գ. Նժդեհը) եւ շտապ մեկնում Բեռլին՝ այն գերմաներեն թարգմանել տալու եւ անմիջապես հրատարակելու համար: Այդ գործի կարեւորությունը պայմանավորված էր նրանով, որ մի շարք եւրոպացի գիտնականներ սխալ տեղեկություններ էին տվել Հայ ցեղի ծագման մասին (կասկածի տակ էր դրվում հայերի արիական ծագումը), եւ այս ապատեղեկատվության հիման վրա նացիստական կուսակցության մեջ ձե-

ւավորվել էր մի թեւ՝ Ռոզենբերգի ղեկավարությամբ, որն հայերին վերագրում էր սեմական ծագում: Վտանգի տակ էր գերմանական տիրապետության տարածքում բնակվող շուրջ 400 հազ. հայերի գոյությունը, եւ հետեւաբար անհրաժեշտ էր գործնական ու գիտական-քարոզչական միջոցներով վերացնել այդ վտանգը:

Կապված Հ. Ասատրյանի Բեռլին մեկնելու հետ, 1943թ-ի սկզբին Գ. Նժդեհի կողմից Բուլղարիա է հրավիրվում Կարո Գեւորգյանը (որը Սալոնիկում 1928-1937թթ-ին խմբագրում էր «Հորիզոն» թերթը ու եղել է տեղի Ցեղակրոն Ուխտերի ղեկավարը), որն առժամանակ խմբագրում է «Ռազմիկը»:

1943թ. վերջին Հ. Ասատրյանը վերադառնում է Բուլղարիա եւ կրկին անցնում «Ռազմիկ» թերթի խմբագրության գործին, ինչպես նաեւ ավարտում գրքի Բ մասը, որը սակայն լույս չի տեսնում:

Երբ 1944թ. համայնավարները գրավեցին Բուլղարիան, իրար ետեւից ձերբակալվեցին Գ. Նժդեհը, Հ. Ասատրյանը եւ Ն. Աստվածատուրյանը: Հ. Ասատրյանը նախ ուղարկվում է Քիշինեւի բանտը, այնուհետեւ՝ Ուրալի բանտը, ուր գտնվում էր նաեւ Ն. Աստվածատուրյանը: Վերջինս կարճ ժամանակ անց մահանում է: Իր սիրելի ընկերոջ մահվան լուրը Ասատրյանն առնում է անկողնում ծանր հիվանդ պառկած եւ հազիվ կարողանում է տեսնել միայն նրա դիակը՝ բանտից դուրս հանելիս:

Հ. Ասատրյանի ձերբակալումից հետո հալածվում են նաեւ նրա ընտանիքի անդամները՝ կինը եւ երկու աղջիկները, որոնց աքսորում են Պավլիկենի քաղաքը (այստեղ է աքսորվել նաեւ Նժդեհի ընտանիքը): Նրանց ստիպում են ամեն առավոտ ու երեկո ստորագրություններ տալ՝ ներկայության համար, իսկ տիկնոջը նույնիսկ արգելում են աշխատել: 1947թ. տիկին Ասատրյանը Չեկայի կողմից ստանում է կեղծ երկտող՝ իր ամուսնու մահվան մասին, որից հետո նրան խրատում են ամուսնանալ, քանզի հակառակ դեպքում աշխատանքի իրավունք չի ունենա եւ կդիտվի որպես հակակառավարական անձ: 1951թ. տիկին Ասատրյանը ամուսնանում է մի բուլղարացու հետ, այդպես փորձելով պահել իր երկու աղջիկներին:

1955թ-ին, ընդհանուր ներման շնորհիվ՝ ազատվելով բանտից, Հ. Ասատրյանը, ծանր հիվանդ վերադառնում է Սոֆիա եւ ցավով իմանում իր ընտանիքի ու հատկապես կնոջ նկատմամբ՝ Չեկայի խարդավանքների մասին: Սակայն ստիպված է լինում հաշտվել իրականության հետ եւ մնում է իր մեծ աղջկա՝ Հեղինեի մոտ (ի միջի այլոց, Հեղինեի կնքահայրը եղել է Գ. Նժդեհը):

Սարգիս Սարունու վկայությամբ, բանտարկության տարիներին «թերթի

լուսանցքներուն վրայ, Հայկ գրած էր ընդարձակ դիւցազներգութիւն մը, որով կու տար հայ ժողովրդին ամբողջ պատմութիւնը, սկիզբէն մինչեւ մեր օրերը» (11), որը ցավոք կորել է: Աքսորի վերջին տարիներին գրված Ասատրյանի անավարտ, «հանգավոր մեկ վեպի» մասին է վկայում նաեւ նրա բանտակից ընկերը (12):

1956թ. հունվ. 13-ին, սրտի կաթվածից, Հ. Ասատրյանը վախճանվում է: Մահվան պահին, երկինք նայելով, երեք անգամ բացականչում է. «Ա՜խ, Հայաստան...»:

Այսպես է ընդհատվում ցեղադրոշմ կյանքը հայաշունչ մտավորականի, որի դեռեւս քիչ հայտնի տեսական ժառանգությունը կգա անշուշտ լրացնելու հայ, թերեւս ոչ այնքան հարուստ, ազգային - իմաստասիրական միտքը:

*Մուշեղ Լալայան*

---

1. Տեղեկությունների մի մասը քաղել ենք Ավոյի «Տոքթ. Հայկ Ասատրեան» հոդվածից, զետեղված «Յեղափոխական Ալպոմ»-ի (Բեյրութ) 1971 թ-ի թիվ 11-ում:

2. Ավո, «Նժդեհ», Բեյրութ, 1968 թ., էջ 457

3. «Հայրենիք» օրաթերթ, Բոստոն, 1957թ. օգոստ. 11, էջ 3

4. Ասատրյանի հարցաքննության արձանագրությունից արված քաղվածքում իբրեւ ծննդավայր՝ նշված է Թավրիզը. ԱԱՆ արխիվ, գործ թիվ 11278, հտ. 3

5. Գ. Լեւոնյան, «Հայոց պարբերական մամուլը», Երեւան, 1934թ., էջ 94

6. «Յեղափոխական Ալպոմ», թիվ 11, 1971թ., էջ 286

7. «Հայրենիք» ամսագիր, Բոստոն, 1958 թ., թիվ 5, էջ 81

8. «Յեղափոխական Ալպոմ», թիվ 11, 1971թ., էջ 291

9. Ներսես Աստվածատուրյանը 30-ական թվականների Հայկական ցեղային-վերանորոգչական շարժման գործուն մասնակիցներից է, Ցեղակրոն եւ Տարոնական շարժումների սյուներից:
Ծնվել է Սկյուտարում (Կ.Պոլիս), ծագումով տարոնցի է: Եղել է Հ.Յ.Դ. անդամ, Հ.Մ.Ը.Մ. Բուլղարիայի շրջանի պատասխանատու գործիչներից: Վարել է առեւտրական լայն գործունեություն՝ նյութական զգալի օժանդակություն բերելով ազգային - հասարակական կյանքին: Նրա մասին Կ. Գեւորգյանը գրում է. «Պուլկարահայ բոլոր խաւերէն սիրուած, ազնուական խառնուածքի մարմնացում, անձնուէր ու հայրենապաշտ..., որի համար իր առեւտրական փայլուն գործէն շատ աւելի կենսական էին մեր ազգային-քաղաքական շահերը եւ որի մօտ այնքան նրբօրէն բյուրեղացած էին հայրենասիրական զգացումներն ու ըմբռնումները» («Հայրենիք» օրաթերթ, Բոստոն, 1957 թ., օգոստոս 11, էջ 3):
Հ. Ասատրյանի հետ, Սոֆիայում խմբագրել ու հրատարակել են «Ցեղ եւ Հայրենիքն» ու «Տարօնի Արծիւը»: 1944թ-ին ձերբակալվել է համայնավարների կողմից եւ տարվել Ուրալի բանտ, ուր եւ մահացել է:
Իր մասին մեզ հայտնի շատ թե քիչ խոսուն գրությունը տե՛ս «Հայրենիք» ամսագիր, Բոստոն, 1958 թ., թիվ 7, էջ 107-109:

10. ԱԱՆ արխիվ, գործ թիվ 11278, հտ. 3: Կ. Գեւորգյանը, Հ. Ասատրյանի մահագրության մեջ եւս, նրան հիշատակում է՝ իբրեւ նախկին դաշնակցականի (Կ. Գեւորգյան, «Ամէնուն տարեգիրքը», Բեյրութ, 1957թ., էջ 642):

11. «Յեղափոխական Ալպոմ», թիվ 11, 1971թ., էջ 291

12. «Հայրենիք» ամսագիր, Բոստոն, 1958թ., թիվ 5, էջ 83

# ՎԵՐԱՆՈՐՈԳՉԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՍԿԻԶԲԸ *

*(«Խռովք»-ի առաջադրութիւնները)*

...զի ոչ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն,
այլ ծոյլք են եւ ծանձրացողք:

*ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ*

Դեռեւս Ե. դարում, հայ մտաւորական ընտրանին անհրաժեշտութիւն զգաց, իր ստեղծագործական ճիգերի մէջ մտցնել իմաստասիրական գիծը: Այդ եւ յաջորդ մի քանի դարերի հայ մտաւորականները հպարտանքն ունէին իրենց անւան կցել «փիլոսոփոս» կամ «իմաստասէր» մակդիրը:

Դրանք կարողանում էին ժամանակի գիտական ոգին կայտառ պահել՝ Հայաստանում:

Յետնական դարերում, սակայն, երբ «դպրոցապաշտութեան» (սխոլաստիցիզմ) կապանքներից ազատագրւած եւրոպական մտածումն իմաստասիրութեան մարզում բռնեց նոր եւ վիթխարի նւաճումների ուղին - Հայաստանի պատմութիւնը մեզ պարտադրեց հոգեւոր կեանքի անկման մի շրջան:

Մենք չօգտւեցինք Վերածնութեան (Ռենէսանս) եւ լուսաւորութեան դարաշրջանների գիտական ոգորումներից, այլ զարկ տւինք ոչ-գիտական կամ կիսագիտական գրական սեռերին եւ աստիճանաբար խորթացանք իմաստասիրելու արւեստին: Եւ այդ ա՛յն չափով, որ առանց այն էլ վիպապաշտութեան խոր ազդեցութեամբ դրոշմւած, 19-րդ դարում սկսւած մեր վերածնութիւնը, չկարողացաւ յօգուտ գիտական-իմաստասիրական մտածման արդիւնքների որդեգրման՝ մի ուղեփոխութիւն առաջ բերել: Միւս կողմից՝ հենց նոյն վերածնութեան շնորհիւ, ասպարէզից վտարւած գրաբարի հետ, հների ստեղծած արժէքներն էլ դարձան, գրեթէ, մեռեալ տառ:

Նախնեաց մտաւոր արդեանց ստորագնահատման զուգահեռ՝ գերագնահատւեց «առօրեան» եւ գործնականում անտեսւեց ա՛յն ճշմարտութիւնը, թէ ժողովուրդների պատմութիւնն ուժական մի առաջընթաց է (դինամիկական մի պրոցես), յորում ամեն «ներկայ» պայմանաւորւում է «անցեալ»-ով, ամեն «լինելի»՝ մի «եղեալ»-ով: «Առօրեան» մի դատարկութիւն է որ ուզում է լեցւել պատմագործ «ես»-ի ինքնարժանացմամբ, դառնալ յաւիտենարժէք «ներկայ»:

Թէպէտեւ, հայ իմաստասիրութիւնը 15 դարու պատմութիւն ունի, բայց այսօր ողբալի է մեր գիտական պաշարը եւ ամօթալիօրէն աղքատ՝ մեր փիլիսոփայական գրականութիւնը:

* * *

Պատճառները, որոնց հետեւանքով հայ մտածումն իմաստասիրութեան մարզում, գրեթէ, անպտուղ մնաց, բաժանւում են երկու կարգի.

ա) Առարկայական-պատմական.

բ) Ենթակայական-հոգեբանական:

Պատճառների առաջին խմբակցութիւնը պայմանաւորւում է Հայաստանի բնութեան ներանջատական նկարագրով եւ մեր քաղաքական ճակատագրով:

Իմաստասիրութիւնը յօրինուածների (սիստեմների) մի գիտութիւն է, իսկ երկրի անմիաձոյլ նկարագիրը, պատմական աղիտաւոր ցնցումները, անկանոն եւ ընդհանրապէս աննպաստ քաղաքական ելեւէջները զրկելով ժողովուրդը սեփական կեանքն յօրինուածաբար կազմակերպելու կարելիութիւնից - նրան անընդունակ պիտի դարձնէին զարգացնել մտածումի այնպիսի բարդ մի հիւսուածք, որպիսին է իմաստասիրութիւնը:

Ինչո՞վ բացատրել, ուրեմն, ա՛յն փաստը, որ Հայկական «ես»-ը չկարողացաւ բնական իրողութիւններն ու պատմական անցքերը պատշաճեցնել իր կենսական շահերին կամ ուրիշ խօսքով, ի՞նչպէս եղաւ, որ մեր գոյութեան կռւում, «առարկայական իրականութիւնները» յաղթահարեցին մեզ:

Որո՞նք էին արգելիչ պատճառները - արդեօ՞ք, միայն թշնամիների քանակական գերազանցութի՞ւնը, միայն երկրի եւ շրջապատի աննպաստ պայմաննե՞րը: Բայց ոյժերի տնտեսութեան օրէ՞նքը - ժողովրդական կամ ազգային կազմակերպեալ կորովի (էներգիա) նպատակայարմարօրէն սակաւ սպառումով շատ արդիւնքներ ձեռք բերելու արւե՞ստը: Մեր բարձրաւանդակի իրաւամբ անառիկ դի՞րքը:

Առա՛նց ժխտելու արտաքին ծանր պայմանների եւ գործօնների դերը, չենք կարող (եւ պէտք չէ՛) ուրանալ մեր ենթակայական մեղքերը:

Բարոյական մեղքերը քաւելու համար, քրիստոնէական եկեղեցին յանձնարարում է զղջում: Պատմա - քաղաքական մեղքերը քաւելու համար, գիտութիւնը յանձնարարում է անցեալի աննախապաշար վերագնահատում, այսինքն՝ հին ճշմարտութեանց թօթափում եւ նոր ճշմարտութեանց որդեգրում:

Վերագնահատելով մեր անցեալը՝ պիտի խոստովանենք, որ ենթակայական մեր անթիւ մեղքերը սւեցին, դարձան անյաղթելի չարիք նաեւ այն

պատճառով, որ մեր կեանքի ու գործի մեջ գիտականութիւն չմտցրինք:

Եւ չմտցրինք, շնորհիւ, մասամբ ա՛յն թերութեան, որ արդէն 13 դար առաջ, մատնանշում է Շիրակացին. «...զի ո՛չ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն, այլ ծոյլք են եւ ծանծրացողք»:

Ցայսօր էլ սրբագրումի փորձ չարեցինք եւ հետեւանքն ա՛յն եղաւ, որ հոգեւոր ծուլութեամբ պայմանաւորուած մտաւոր մակերեսայնութիւնը, ահա՛, խեղդում է մեզ:

* * *

Այսօր, մեր կեանքի ո՛ր կողմն էլ վերցնենք՝ գիտականութեան փոխարէն հանդիպում ենք բանդագուշանքի, մտածումի փոխարէն՝ յոյզի, ձեւի փոխարէն՝ քաոսի, կազմակերպութեան փոխարէն՝ անկանոնութեան:

Միայն գաղութներում հրատարակում ենք հարիւրի չափ թերթ-պարբերաթերթեր, որոնց 90 տոկոսը ծառայում է տգիտութեան եւ հոգեւոր պառակտումի գործին: Ունինք հարիւրաւոր «վարժարաններ», բայց հազիւ 1-2 կանոնաւոր դպրոցներ: Ունինք հազարից աւելի «վարժապետներ», բայց մանկավարժութեան սկզբունքներին ծանօթ, հազիւ, 1-2 տասնեակ ուսուցիչներ:

Աւելի՛ն:

Ունինք ահռելիօրէն սրուած գոյութեան կնճիռ-թափառական ժողովուրդ եւ քաղաքականապէս յօշոտուած հայրենիք: Բայց վերակազմական, վերանուաճողական համազգային ճի՞գ... Մեր մտաւորականութեան մի մասն է միայն երկնում: Միւսը՝ նստած ռուսական տակառում, երերում է հայոց խռովայոյզ լճակի ալիքներին եւ թմբուկ զարկում՝ «աշխարհի մէկ վեցերրորդականի» համար: Երրորդը՝ բացել է երախը եւ խօսքի ցեխ է թափում: Չորրորդը՝ փակել է ոգու դուռը եւ սեփական տկարութիւնն է որոճում: Իսկ թո՞ւրքը - նա քշում է իր երիվարը հայոց ամայացած դաշտերով, բարձրանում մեր հպարտ լեռները, տրորում նրանց զգայուն կուրծքը եւ մնում... անպատիժ:

«Արթնացի՛ր, Հայաստա՛ն», անհրաժեշտ, բայց տարաժամ կոչ, անհրաժեշտ՝ որովհետեւ, ահարկու է մեր կեանքի խռովքը, տարաժամ՝ որովհետեւ, ճշմարիտ գիտութեան համար անասելիօրէն խուլ են մեր ականջները եւ զարհուրելիօրէն կոյր՝ մեր աչքերը: Ուրիշ ժողովուրդներ ոտքի են ելնում վտանգից առաջ, մենք՝ մրափում ենք աղէտից յետոյ էլ:

Ինչո՞վ բացատրել այս երեւոյթը. կենսաբանական տկարութեա՞մբ: Բայց ինչե՞ր կարող էր անել իր ճակատագրի խռովքը գիտակցօրէն ապրող 2-3 միլիոնանոց ժողովուրդը:

«Իրապաշտական» սոփեստութիւնները, «առարկայական» փարիսեցիութիւնները չեն անցնում՝ այլեւս:

Երեւոյթը բարոյագիտապէս բացատրւում է ա՛յն փաստով, որ հայ մտաւորականութիւնը հակառակ սքանչելի բացառութիւնների, ո՛չ ցեղի ամօթանքն ապրելու առաքինութիւն ունի, ո՛չ էլ՝ ինքնափրկութեան հաւատ:

Եւ չունի մասամբ շնորհիւ հոգեւոր ծուլութիւնից, մտաւոր մակերեսայնութիւնից ծագած չարիքների:

Ունի՛նք մի հայրենիք - վեհակառոյց մի բարձրաւանդակ - վերծանե՞լ ենք նրա բնութեան խորհուրդները:

Ունի՛նք մերթ փառքով օծուած, մերթ մրով ծեփուած մի պատմութիւն. իմաստասիրե՞լ ենք նրա մասին, ծանոթացե՞լ նրա ընթացքի յատկորոշ ելեւէջներին, նրա զարգացման ներքին օրէնքներին, ղեկավար սկզբունքներին:

Ունի՛նք կենսական եւ հոգեկան բարձր կարողութիւններով օժտուած մի ժողովուրդ - կենսաբանական ուժականութեան (բիոլոգիական դինամիկա) անսպառ մի շտեմարան - ուսումնասիրե՞լ ենք նրա մարդա-հոգեբանական իւրայատուկ գծերը, փորձե՞լ ենք գիտական լոյսի տակ դնել նրա առաքինութիւններն ու մոլութիւնները, սրբագրել նրա հոգեբանական թերիները, մշակել՝ դրական կողմերը:

Ինչո՞ւ զարմանալ, որ չկարողացանք մեր բարձրաւանդակի ռազմագիտական անառիկ կէտերն օգտագործել մեր ինքնապաշտպանութեան համար, կամ՝ մեր ժողովրդի կենսա-հոգեկան կարողութիւնները վերածել դիմադրական եւ ստեղծագործ ոյժի, կամ՝ մեր մտաւորականութեան պարտադրել ազգայնօրէն ծեւակերպեալ մի աշխարհայեցողութիւն, գէթ, համահայկական եւ համահայաստանեան զգացում:

Ինչո՞ւ դժգոհել աշխարհից, երբ ինքներս խորշելով իմաստասիրելու արուեստից՝ զրկւեցինք մեր հոգեւոր եւ մարմնական ոյժերը գիտականօրէն կազմակերպելու կարելիութիւնից, դարձանք անոյժ եւ անսկզբունք մի հօտ, խաբւեցինք քաղաքական բոլոր «առեւտուրներ»-ի մէջ եւ ճշմարտօրէն հերոսական մեր պայքարների պատմութիւնը փակեցինք պարտութեամբ:

* * *

Ձեռնարկելով այս «փիլիսոփայական-գիտական» ամսագրի հրատարակման՝ ամենից առաջ, պիտի ջանանք դարմանել այս թերիները, այսինքն՝ վերացնել ա՛յն պատճառները, որոնք մեզ պահում էին մտաւոր մակերեսայնութեան շրջագծում:

Դրա համար, հոգեփոխութեան փորձերին զուգահեռ՝ մենք պիտի կատարենք յօրինուածական աշխատանք, ձգնելով իրականացնել հետեւեալ առաջադրութիւնները.

ա) Յօրինուածի (սիստեմ) վերածել հայ մտածման արդիւնքները, այսինքն՝ ցուցահանել հայ փիլիսոփայութեան գծերը, մշակել նրա պատմութեան եւ ներածութեան տարրերը: Ուսումնասիրել նաեւ այժմու հայ կեանքի հոգեւոր խնդրումները եւ վերլուծել որոշ աշխարհայեցողութիւն ունեցող հայ հոսանքների գաղափարաբանութիւնը:

բ) Լոյս սփռել հայոց հոգեբանական առանձնայատկութեանց վրայ, միջոցներ առաջարկել մեր հոգեբանական թերիները սրբագրելու եւ առաւելութիւնները համացեղային ստեղծագործ կորովի խթանն ու խարիսխը դարձնելու: Յոգեբանօրէն կազմակերպել մեր ցեղի ինքնապաշտպանութեան եւ վերափրկումի գործը:

գ) Մշակել հայոց պատմութեան փիլիսոփայութիւնը: Գիտական ուսումնասիրութեան նիւթ դարձնել մեր պատմական կեանքի միջավայրը - Յայկական Բարձրաւանդակը - իր բնական, աշխարհագրական, ցեղագրական, մարդաբանական, տնտեսական, կրօնական եւ այլ առանձնայատկութիւններով:

դ) Լոյս սփռել հայոց պատմական կեանքի, ընկերաբանական կառոյցի եւ սրա հոլովոյթների վրայ: Արժէքաւորել մեր կեանքի հնագոյն եւ նորագոյն յեղափոխութիւնները, գտնել կամ որոնել մեր պատմ. կեանքի զարգացման տրամաբանական կապն ու տարերային ցնցումների շղթայակցութիւնը, ինչպէս նաեւ՝ մատնանշել մեր քաղաքական-հասարակական վերածնութեան ուղիներն ու կարելիութիւնները:

Սակայն, յօրինուածական այս աշխատանքով, մենք ձգտում ենք ո՛չ թէ մեր «արւեստ»-ն ու «մշակոյթ»-ը շքեղազարդելու, այլ մեր կեանքի խռովքը ստեղծագործ ոյժի վերածելու նպատակին:

Ըստ այսմ՝ մենք էլ հայ մամուլի մի քանի ընտիր ներկայացուցիչների հետ՝ պիտի հետապնդենք հիմնական մի նպատակ - մեր ցեղային «ես»-ի յաղթական ինքնարձանացումը՝ հայոց պատմական կեանքի բնամարզում: Միայն թէ խնդիրներին մօտենալու եղանակով, որով մեր առաջարկելիք միջոցներով, մենք պիտի տարբերւենք նրանցից:

Մենք ելակէտ ունենք հոգեբանական ա՛յն կենսագործ ճշմարտութիւնը, թե առա՛նց ինքնայաղթահարման անկարելի է որեւէ այլայաղթահարում: Այս ասել է՝ արտաքին թշնամու պարտութեան էական պայմանը՝ մեր ներքին տկարութեանց ոչնչացումն է:

Որով՝ մեր առաջին նշանաբանն է՝ «Մա՛հ ներքին տկարութեան»:

Պայքարելով մեր ներքին տկարութեանց դէմ, մենք յոյս ունենք կազմաւորել հոգեբանական ա՛յն նախատեալները, որոնք ցեղակամ, ասել է՝ ինքնակամ դարձած զանգւածներին անխուսափելիօրէն պիտի մղեն մեր առաջադրած երկրորդ նշանաբանի հարազատման՝ «Մա՛հ արտաքին թշնամուն»:

Այս նպատակները նւաճելու համար անհրաժեշտ է.

ա) Շտապեցնել մեր պայքարի վերսկսումը,

բ) Գիտականութիւն մտցնել մեր ընդհանուր գործունէութեան եւ հոգեճանաչութիւն՝ մեր վաղւայ ռազմարւեստի մէջ·

Պահանջներ են սրանք, որոնք առա՛նց հոգեբանելու, առա՛նց իմաստասիրելու կը մնան անիրականանալի բաղձանքներ:

Սովորական փորձառութիւնից գիտենք, որ առա՛նց մեր նպատակներն իմաստաւորելու, նրանք կը մնան՝ աղօտ, իսկ առա՛նց յօրինւածական աշխատանքի՝ մեր ճիգերը կ՛անցնեն՝ ապարդիւն:

Փիլիսոփայութիւնը ձգտելով աշխարհի իրականութիւնները քննութեան առնող գիտութիւնների արդիւնքներն ընդհանրական յօրինւածի վերածել եւ իմաստաւորել՝ ընձեռում է մեզ կենսագործ եւ ընդհանրարժէք ճշմարտութիւններ:

Այս ճշմարտութիւնները վերացական ըմբռնումներ չեն, այլ կեանքում յաղթանակներ նւաճելու գործնական միջոցներ:

Որդեգրել այս միջոցները - նշանակում է՝ սպառազինւել հոգեբանօրէն, իսկ սպառազէն հոգեբանութեամբ պայքարի մտնել - նշանակում է՝ քայլել դէպի յաղթանակ:

Մեզ մնում է... արմատախլել հոգեւոր ծուլութեան եւ մտաւոր մակերեսայնութեան չարիքները, լծել հայ իմաստասիրութեան շէնքը վերա - եւ նորա - կառուցելու աշխատանքին: Ոչի՛նչ կարող է վտանգւած մի ժողովուրդի մտաւորականութեան աւելի՛ բարձր երջանկութիւն պատճառել, քան հոգեբանօրէն կազմակերպւած ներոյժ աշխատանքը՝ նրան, այդ ժողովուրդին ստեղծագործելու եւ յաղթելու արւեստին վարժեցնելու:

Որ իմաստասիրութիւնն այդպիսի մի արւեստ է - այդ գիտեն իրենց գոյութեան պայքարը գիտութեան օրէնքներին եւ զէնքերին պատշաճեցնող մեծ ազգերը, այդ կռահել էին հին դարերի հայ բարձր մտաւորականները, այդ պիտի գիտնանք նաեւ մենք՝ ստեղծագործելու եւ յաղթելու կարօտից տառապողներս:

---

** - Հոդվածը, որ 1932թ-ին, իբրեւ խմբագրական գրվել է «Խոռովք» ամսագրում, ոչ որոշ փոփոխումներով, նշված վերնագրով, արտատպվել է «Տարօնի Արծիւ»-ի, 1939 թ-ի թիվ 8-ում:*

# ՈՒԺԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ *

Նիցշէն իմաստասիրութեան մէջ մտցրեց կենսագործ ա՛յն ըմբռնումը, թէ ճշմարտութիւնը մի տեսակ մոլորութիւն է, առա՛նց որի, սակայն, որեւէ էակ անկարող է կենսաբանօրէն նպատակայարմար մի քայլ առնել:

Ելնելով այս վճռից՝ կենսաբան իմաստասէրները եւ գործնապաշտութեան (պրագմատիզմ) հետեւող մտածողները զարգացրին եւ ընդլայնեցին ա՛յն տեսակէտը, թէ ճշմարտութիւնը գործունէութեան մի միջոց է, աշխատելու եւ նւաճումներ անելու մի եղանակ (մեթոդ):

Ըստ «գործիական ճշմարտութեան» (ինստրումենտալ ճշմարտութիւն) այս ըմբռնումի՝ էակները եւ նրանց խնդրարկումները ձախողում կամ յաջողում են, շնորհիւ իրենց որդեգրած ճշմարտութեանց կենսագործ կամ կենսասպան ներքնակ յատկութեան:

Ըստ այսմ՝ մարդիկ եւ մարդկային խմբաւորումները - ցեղ, ազգ, ժողովուրդ - ապրում են իրենց կառուցած ճշմարտութեանց ույժով եւ մեռնում՝ սրանց անուժական, անգործնական նկարագրի հետեւանքով:

Կան առաջատար ճշմարտութիւններ, որոնք դրդում են ենթակային՝ օրհնել անցեալը, սիրել՝ ներկան եւ այսել՝ ապագան, եւ, ընդհակառակն, այնպիսիներ, որոնք անցեալը դարձնում են անէծքի, ներկան՝ ցաւի եւ ապագան՝ սարսափի աղբիւր:

Առաջինները լաւատեսութեան, ասել է՝ յաղթանակի հոգեւոր զէնքեր են, երկրորդները՝ յոռետեսութեան, պարտւողականութեան նախադրեալներ:

Ամե՛ն վերելքի կամ անկման մէջ, սակայն, դեր ունեն ո՛չ միայն մեր որդեգրած ճշմարտութեանց բովանդակութիւնները - «ի՛նչ»-ը - այլեւ մեր ըմբռնելակերպը նրանց մասին - «որպէ՛ս»-ը:

Ըստ գործնապաշտ մտածողների - Ջէյմս եւ համախոհներ - «ճշմարտութիւններն ապրում են վարկով», իսկ ամեն «վարկ» նախատեսում է վարկաւորող մի աղբիւր, արժէքաւորող մի «ես»:

Ինչպէս որ առա՛նց արժէքաւորման՝ չկայ արժէք, այդպէս էլ՝ առա՛նց ճշմարտագրման՝ չկայ ճշմարտութիւն, իսկ ամե՛ն ճշմարտագրում արդիւնք է «ես»-ի, ենթակայի, ճշմարտագրողի ներհոգեւոր ոգորումների, դեգերումների, գործունէութեան:

Ճշմարտութիւնը խտացեալ մի յօրինոյթ է, իսկ առա՛նց կառուցումի չկայ յօրինոյթ, որով՝ ճշմարտութիւնը կառուցւում է - նա կառոյց է, իսկ ամեն կառոյց հնարաւոր է մի կառուցողի միջոցով:

Ճշմարտագրելիս՝ իւրաքանչիւր ոք վարւում է այնպէս, ինչպէս Նարեկացին՝ իր «Ողբերգութեան Մատեան»-ը կազմելիս՝ (Ստացեալ հիմնեցի, կա-

ռուցի, կարգեցի, դիզի, բարդեցի, կառուցի, ցուցի»):
Ինչպէս ամե՛ն երկ, այնպէս էլ ամե՛ն ճշմարտութիւն, նախ մեր էութեան դրսեւորումն է: Բայց երկասիրելիս՝ մենք ազատում ենք ներքին տանջանքից, մինչ ճշմարտագործելիս՝ կապւում ենք մեր կռահումների ձեւին եւ բովանդակութեան: Երկասիրելիս՝ մենք թօթափում ենք անցեալը, ճշմարտագործելիս՝ սպառազինւում ենք ապագայի համար:
Մենք ենք ստեղծում, կառուցում մեր ճշմարտութիւնները, ապա՝ դրանք դարձնում մեր գլխին պատուհաս կամ օրհնաբեր նւաճումների միջոց:
Ճշմարտութիւնները մի՛շտ էլ ընդհանրացումներ են, այսինքն՝ բանականութեան ընձեռած բանաձեւումներ: Նրանց ճակատագիրը, սակայն, որոշւում է ա՛յն դրդապատճառներով, որոնց ներազդեցութեամբ կամ պարտադրումով բանականութիւնը մղւում է վերացման, ընդհանրացման, բանաձեւումի, կարճ՝ ճշմարտագործման:
Ճշմարտութեանց կազմաւորման խնդրում վճռական դեր են խաղում յատկապէս երկու տարբերորակ ազդակներ: Դրանցից մէկը կերպզգացութեան գործօն միտքն է, միւսը՝ գոյզգացութեան զինակիր կամքը: Առաջինով պայմանաւորւում է մեր ճշմարտութեանց ձեւական կողմը, երկրորդով՝ բովանդակայինը:
Ըստ այսմ՝ ճշմարտութիւնը մտային եւ կամային որակների փոխադարձ ազդեցութեամբ եւ կապակցութեամբ առաջ եկած մի համադրոյթ է:
Առաջատար եւ կենսագործ են ա՛յն ճշմարտութիւնները, որոնց համադրոյթը տեղի է ունեցած մտային եւ կամային որակների - ձեւի եւ բովանդակութեան - բնաչափ ներգործութեամբ, չափի զգացումով, որոնցում առանց միակողմանի չափազանցումի հաշւի առնւած են ճշմարտագործ ենթակայի բանական իրաւունքներն եւ կենսաբանական շահերը, եւ վերջապէս՝ որոնք ո՛չ սոսկական մտորոշումներ են, ո՛չ էլ՝ սոսկական կամավճիռներ, այլ՝ վճռորոշումներ:
Նման ճշմարտութիւնները մենք անւանում ենք ամբողջականութեան ճշմարտութիւններ, որովհետեւ նրանցով միա՛յն ենթական հրապարակ է գալիս իբր ամբողջական անձնաւորութիւն, իբր «բանական» եւ «կենսաբանական» էակ, միաժամանակ:
Կենսաբանական մի էակ մի՛շտ էլ շահեր է որոնում, որով՝ նրա ճշմարտութիւններն անխուսափելիօրէն օգտապաշտական (ուտիլիտարիստական) նպատակադրութիւն ունեն:
Որքան էլ մարդկային մեր բանականութիւնը յաճախ «գերերկրային»-ի սնապարծութեամբ է համակւում մեզ, այնուամենայնիւ, մեր ճշմարտութիւնների գործնական արժէքը չափորոշւում է նրանով, թէ ի՞նչքան եւ ո՞րպէս

նրանք ծառայում են մեր կենսաբանական նպատակներին:
Արժէքաւոր է ամե՛ն ճշմարտութիւն, որ կենսաբանօրէն նպատակայարմար է: Անարժէք եւ անիմաստ է ամե՛ն ճշմարտութիւն, որ կենսաբանօրէն նպատակայարմար չէ:
Կենսաբանօրէն նպատակայարմար ճշմարտութեանց ամենացայտուն յատկանիշն ա՛յն է, որ նրանք կրում են բարձր խառնւածքի (տեմպերամենտ) եւ ներքին ուժականութեան (դինամիկա) դրոշմը:
Ուժական ճշմարտութեանց հեղինակը մի հանճար է, որ ինչպէս Նիցշէն է ասում՝ «դարերի սիրտը բռնում է ձեռքը եւ ճմլում՝ մեղրամոմի պէս»:

* * *

Դաւիթ Անյաղթը հերքելով Պիւռհոն «իմաստակ»ի թերհաւատութիւնը՝ յանգեց իմացաբանական լաւատեսութեան - կարելիապաշտութեան: Ըստ նրա՝ իմաստունը նա է, ո՛վ ընդունում է կարելիութիւնը, այսինքն՝ լաւատեսօրէն ձգտում է հնարաւորի իրականացման:
Դարեր յետոյ՝ Դաւիթ Անյաղթի ժողովուրդը կանգնած իր գոյութեան ահարկուօրէն սրւած կնճիռի առջեւ, այլ մի դատելակերպ որդեգրեց - մեծապէս բացարձակապաշտական:
Այսօր, մեր կեանքի գերագոյն կնճիռը մեր Հայրենիքի վերանւաճման խնդիրն է:
Բայց ի՞նչ ենք մտածում այդ մասին.
- Մեր ճակատագիրը կախւած է միմիայն Ռուսաստանից, իսկ մեծամասնականների ճակատագիրը կ'որոշւի միմիայն Մոսկւայում: Ինչո՞ւ:
- Մեր ճակատագիրը կախւած է միմիայն թուրքական եղելոյթներից: Ինչո՞ւ:
Այս «ինչո՞ւ»-ները կարեւոր չեն, որովհետեւ բացարձակապաշտը միակողմանիօրէն կոյր է եւ հասկացողութիւն չունի կարելիութիւնների մասին. նա չի ըմբռնում, որ օրինակ՝ մեծամասնականների բախտը կարող է որոշւել մի աննշան լերան ստորոտում, մի գետակի ափին, մի լճի եզրին, մի մարդու մահով, աղիտաւոր մի արկածով, ռուսական գիւղում ծայր տւած մի շարժումով, արտաքին մի պատերազմով, իսկ հայկական խնդիրը կարող է լուծւել մեծամասնականների քաղաքականութեան փոփոխմամբ, Թուրքիոյ դէմ պայթող արտաքին մի պատերազմով, հայերի մի ընդվզումով եւ այլն, եւ այլն:
Դրա հանդէպ անչափելիօրէն նշանակալից է խնդրի հոգեբանական կողմը: Եթէ իրօք, մեր ճակատագիրը կախւած է Ռուսաստանից կամ թուր-

քական եղելոյթներից, էլ ինչո՞ւմն է մեր հայկական գործօնի դերը: Ի՞նչ արժէք ունենք մենք իբր պատմագործ ոյժ: Ոչի՞նչ: Կամ, եթէ մեծամասնականների ճակատագիրը միմիայն Մոսկւայում պիտի որոշւի, ի՞նչ արժէք ունեն մեր սէրն ու ատելութիւնը, մեր հիացումն ու դժգոհութիւնը՝ նրանց նկատմամբ: Ոչի՞նչ:

Այս ապրումները ներհոգեւոր բովանդակութիւններ են, իսկ նման ամեն բովանդակութիւն խտացեալ մի ոյժ է եւ հակամէտ պատմական ձեւ ստանալու: Սակայն, բացարձակապաշտն ասում է, որ այս ձեւը տալիս է մի ուրիշը, անդրզգացական մի ոյժ, բայց ո՛չ ինքը, տառապող, յուսացող ու մարտնչող «ես»-ը:

Ծուլութեան իմաստասիրութիւնն է սա: Դրա կրողները նրանք են, որոնք օրինակ թուրքական եղելոյթների մասին խորհրդածելիս ասում են.

- Թուրքիան անյաղթահարելի է, մանաւանդ որ բարենորոգումները նրան անհրաժեշտօրէն կազդուրում են:

կամ՝

- Թուրքիան անխուսափելիօրէն գնում է դէպի կործանում, բարենորոգումներն էլ աւելի պիտի խախտեն նրա դիրքը եւ նա անհրաժեշտօրէն պիտի ենթարկւի քայքայումի:

Ծոյլի մտածումը մի՛շտ էլ նենգ է եւ գիտէ բացարձակապաշտական բանդագուշանքներով ինքնամխիթարուել կամ արդարացնել սեփական «ես»ի տկարութիւնները:

Ո՞վ ասաց, թէ մի ժողովուրդ անյաղթահարելի է, ո՞վ՝ թէ որոշ օրէնքների կիրարկմամբ նա անպայման ուժեղանում է, կամ ո՞վ՝ թէ բնական որոշ օրէնքների պարտադրումով նա անխուսափելիօրէն գնում է դեպի անկում:

Սո՛ւտ է, թէ ծնունդների նւազումը կամ յաւելումը տեւական երեւոյթներ են կամ թէ նրանց հետեւանքով մի ժողովուրդ կարող է սպառւել կամ անբնականօրէն չափով աճել, սո՛ւտ է թէ տնտեսական տագնապի կամ փարթամութեան հետեւանքով մի ազգի քաղաքական կառոյցը կարող է իսպառ փլչել կամ յաւիտենապէս ամրապնդւել, սո՛ւտ է թէ բարենորոգումները կարող են մի երկրի անթիւ բարիքներ տալ եւ ո՛չ մի չարիք կամ անթիւ չարիքներ եւ ո՛չ մի բարիք:

Ճի՛շդ է միայն մի բան - ա՛յն, որ քաղաքականօրէն մենք բացարձակապաշտ ենք, միայն նրա համար, որ գործելու, մարտնչելու տրամադրութիւն չունենք:

- Թուրքիան անհրաժեշտօրէն հզօրանում է:

- Թուրքիան անհրաժեշտօրէն կործանւում է:

Ի՞նչ է այս բանաձեւումների հոգեբանական աստառը - ո՛չ այլ ինչ, քան՝

ա) Եթէ Թուրքիան անհրաժեշտօրէն հզօրանում է - ապա՝ ինչո՞ւ կռուել, ինչո՞ւ մաքառել, ինչո՞ւ նորանոր զոհեր տալ, երբ նա անյաղթահարելի պիտի մնայ:

բ) Եթէ Թուրքիան անհրաժեշտօրէն կործանւում է - ապա՝ ինչո՞ւ անճապարել, ինչո՞ւ աւելորդ արիւն թափել, ինչո՞ւ չսպասել իրերի բնական ընթացքին, մինչեւ որ նա տրամաբանական օրէնքով բոլորովին կը քայքայուի:

Աղաչո՛ւմ ենք, հայրենակիցնե՜ր, խռովքոտ այս օրերին, ձեզ պահէք ձեր իմաստութիւնները եւ եթէ կարող էք. տուէք մեզ երկաթ, վառօդ, ցեղի ցաւից ցնցուած վրիժառու ոգիներ, նրա գոյութեան հրամայականով առաջնորդուող կամքեր, ինքնափրկումի հաւատով սպառազէն սրտեր եւ մենք կը դառնանք կարօտի սլաք, յաղթանակի նետ, բացարձակապաշտութեան օրէնքները խորտակող ոյժ, պատմութեան անիւը դարձնող գործօն:

---

** - Հոդվածը, 1932 թ-ին, «Բացարձակապաշտության եւ կարելիականության պետության գործնական նշանակությունը» վերնագրով ընդարձակ կերպով տպագրվել է «Խռովք» ամսագրում:*

*Այն, թեեւ բավականին կրճատված, սակայն պահպանելով հիմնական էությունը, 1939 թ-ին «Ուժական ճշմարտություն» վերնագրով, արտատպվել է «Տարօնի Արծիւ»-ում (թիվ 12):*

# ՅԵՂԸ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔԸ ԻԲՐ ԱՆԲԱՆԱԿԱՆ ՈՅԺԵՐ

Դեռեւս չի զարգացել այն գիտութիւնը, որ պիտի կոչւի աշխարհիմաստութիւն (գէոսոֆիա): Յոգեբանութիւնն էլ մինչեւ հիմա չկարողացաւ յղկւել իբրեւ հոգեիմաստութիւն (պսիխոսոֆիա):

Բնազանցութիւնը սկզբից ցայսօր լծւեց գոյութեան հանելուկը մեկնաբանելու գործին, ուզեց հասկանալ ես-ի եւ բնութեան, ոգու եւ նիւթի, կեանքի եւ առարկայի իմաստը: Գիտական մի շարք սիստեմներ սահագին վարկածներ, գործնական նշանակութիւն ունեցող «ճշմարտութիւններ» կուտակեցին եւ սակայն հարցը թէ ի՞նչ է ոգին, ի՞նչ է կեանքը, ի՞նչ է սրանց իմաստը, դեռեւս սպասում է իր պատասխանին:

Ընդհանուր առմամբ ա՚յն գիտութիւնները, որոնք բնազանցութեան օգնելու յաւակնութեամբ գործի լծւեցին, իրենց պրպտումների ընթացքին պարզեցին մի բան - թէ «ես»-ի եւ «ոչ ես»-ի, ոգու եւ նիւթի փոխյարաբերութիւնը շատ աւելի բարդ է, քան միարմատական (մոնիստական) մտածողները ենթադրում են, թէ նրանց միջեւ եղած կապն ու անկապը շատ աւելի խորհրդաւոր է, քան երբեւէ կարող է ըմբռնել այսպէս կոչւած «մարդկային առողջ հասկացողութիւնը», քան կարող են սահմանել սովորական «ճշգրիտ» գիտութիւնները:

Աստւածաբանութիւնը, գաղափարապաշտ մտածողների զարգացրած տիեզերածնութիւնը (կոսմոգոնիա), տիեզերաբանութիւնը (կոսմոլոգիա), բարոյագիտութիւնը, պատմա-փիլիսոփայութիւնը եւն. որոնք ա՚յնքան յուզիչ հաւատով հետապնդում էին նպատակի եւ նպատակադրութեան խնդիրը եւ հոգեբանութիւնը, որ այնքան խնամոտ կերպով երեւան հանեց իմացութեան բանական եւ զգայական տարրերի այլազանութիւնը, անգամ նոր վիտալիստների իր խորութեան մէջ այնքան նշանաւոր կենսաբանութիւնը, եւ վերջապէս դրանց հետ ողջ իմաստասիրութիւնը՝ հանդիպեցին բանապէս անըմբռնելի եւ անբացատրելի խորհրդաւոր մի ոյժի, բնատարերային մի Մեֆիստոֆելի, որ ոգին եւ սրա յայտնութիւնը հանդիսացող պատմութիւնը յաճախ շեղում է նպատակի գծից:

Այս ոյժը կոչւում է անգիտակցական, տարերային, անբանական եւ սովորաբար անսպասելիօրէն ազդու է դառնում պատմականօրէն ճակատագրական վայրկեաններին եւ յաճախ որոշում դէպքերի բախտը, անկախ մեր իմացական ըմբռնումներից, մեր բարոյագիտական սկզբունքներից եւ բարոյական զգացումներից:

Դրա շնորհիւ է, որ շատ յաճախ կեանքում անբացատրելի են մնում հե-

տեւեալ տիպի հարցեր.

Ի՞նչպէս է լինում, որ աշխարհում յաճախ անբարոյականը յաղթում է բարոյականին, թզուկը՝ հսկային, մանրօրէն ենեգը՝ ոգու մեծութեան:

Ի՞նչպէս է լինում, որ յաճախ մեր որդեգրած գաղափարները, մեր բանականութիւնը, մեր զգացումները դաւաճանում են մեզ:

Ի՞նչպէս է լինում, որ յաճախ բարին ենք կամենում եւ չարը գործում:

Ի՞նչպէս է լինում, որ յաճախ սրտի խորագոյն յուզումով, նւիրումով եւ վճռականութեամբ մեր նպատակին ձգտելիս՝ հեռանում ենք նրանից:

Ի՞նչպէս է լինում, որ օրինա՛կ Հայաստանում, գրեթէ ամեն քաղաքական աղէտից յետոյ տեղի է ունենում ե՛ւ երկրաշարժ:

Ի՞նչպէս է լինում, որ օրինա՛կ, մի կին, մի կապիկ, մի այծ, մի ծառ կամ մի քար յաճախ պատճառ են դառնում, որ «ճակատագիրը» տարբեր մի բան տնօրինի, քան կարող է բանական թւալ:

Ի՞նչպէս է լինում, որ միեւնոյն պատճառը յաճախ տարբեր հետեւանքներ է ունենում:

Ի՞նչպէս է լինում, ուր «նպատակ»ը շատ անգամ զոհ է գնում մի «պատահականութեան», մի «արկած»ի:

Ի՞նչ է այս «նպատակ»ը: Եթէ դա Եսի գոյութեան կռահումն է եւ կարօտը, ապա դա ո՛չ միայն խտացած միտք է, այլեւ զգացում, ո՛չ միայն «բան», այլեւ զգայական տարերք: Այդ դէպքում ի՞նչպէս է լինում, որ ճակատագիրը, պատճառը, հետեւանքը, պատահականութիւնը, արկածը յաճախ կարողանում են փոխել Եսի զգայական տարերքով (կամք) եւ բանական կարողութիւններով (միտք) պայմանաւորւած նպատակների ուղղութիւնը եւ անգամ բախտը: Ի՞նչ ոյժեր են դրանք - արտաեսայի՞ն, թէ՞ ներեսային, ոգուն բոլորովին անմատչելի՞, թէ՞ միայն «դեռեւս» մութ ու անծանօթ: Եթէ բոլորովին արտաեսային՝ նրանք չէին կարող ամէն անգամ յայտնւել մեր գործունէութեան եւ մտածումների ճամբին, եթէ միայն ներեսային՝ նրանք պէտք է որ հպատակւէին մեր կամքին: Նրանք գտնւում են մեր եւ աշխարհի միջեւ, որով աշխարհի հետ գործ ունենալիս, նախ դրանք է, որ պիտի յաղթահարւեն: Հենց սրանում է ենթակայականի բախտորոշ դերը պատմութեան մարզում: Ե՞րբ է պատմութիւն ստեղծւում - ա՛յն դէպքում միայն, երբ պատմագործ ոյժը՝ ենթական մի բան յաղթահարում է: Ենթակայօրէն ե՞րբ է այս յաղթահարումը հնարաւոր - այնժամ միայն, երբ միտքն ու կամքը, Եսի բանական կարողութիւնները եւ զգայական տարերքը ներդաշնակեն: Ամբողջական «Ես»ը միայն կարող է գործել «բանականօրէն» եւ իշխել «տարերքին»:

Մենք գիտենք նաեւ մի այլ բան- որ մեր «եսը» միանպատակ չէ, որ աշխարհում կայ նպատակների բազմազանութիւն: Այս ասել է՝ որ պատմու-

թեան նպատակներն էլ փոփոխական են, որ պատմութիւնը նպատակի յաւիտենականութիւն ունի, բայց յաւիտենական նոյնանպատակութիւն չունի: Ո՞րն է նպատակի այս յաւիտենականութիւնը. առաջադիմութի՞ւնը: Բայց ո՞վ կը ձգտէր դրան, եթէ դա մի քիչ երջանկութիւն չխոստանար: Պատմութեան մղիչ ոգին ապերջանկութեան զգացումն է եւ երջանկութեան կարօտը: Պատմութիւնը ոգու ինքնափրկումի տենչ է: Եթէ այս տենչը յաւիտենական է - այդ նշանակում է, որ պատմութիւն յղացող ոգու առջեւ կայ անբացատրելիօրէն մութ, անբանական, անգիտակցական մի խոչընդոտ, մի հակառգի, որ իր հակազդեցութեամբ յաւիտենական է:

Ըստ այսմ՝ պատմութեան նպատակի յաւիտենականութիւնը պայմանաւորւում է անգիտակցականի յաւիտենականութեամբ:

Ի՞նչ է այս անգիտակցականը: Յոգեբանութիւնը բնազդների աշխարհը զատելով զուտ բանականութիւնից, նրան սահմանեց «ենթագիտակցական» բառով: Ենթագիտակցականը գիտակցականից տարբերւում է նրանով, որ ո՛չ թէ ուսուցւում է, այլ ժառագականօրէն փոխանցւում, ո՛չ թէ իմացական երեւոյթ է, այլ կենսաբանական, ո՛չ թէ անհատական մտորում է, այլ տեսակի խառնւածք, ո՛չ թէ մտքի ընդունակութիւն է, այլ արիւնի, ո՛չ թէ անցնելի է անհատի հետ, այլ զուգահեռ՝ սեռի յաւիտենականութեան:

Այս «ենթագիտակցականը» աւելի ազգակից է բնութեան, քան բանականութիւնը. նա զգայական որակ է, տարերային զօրոյթ. նա բնատարերքի շարունակութիւնն է կենսաբանական էակների մէջ:

Այս կենսաբանական «ենթագիտակցական»ը անօրգանական բնատարերքի հետ կազմում է ա՛յն խորհրդաւոր ոյժը, որ կոչւում է անբանական՝ «իրրացիոնալ»:

Մարդկային ոգու հզօրանքի գաղտնիքը եւ նրա ճակատագրի ողբերգութիւնը հենց նրանում է, որ նա թէ՛ իր ոյժերն է ստանում անբանականից, թէ՛ չի կարող ազատւել նրա տիրապետութիւնից:

Յզօրութեան գաղտնիքը հասկացել են մարդկային ա՛յն խմբակցութիւնները, որոնք ճակատագրի դէմ ոգորելիս՝ զգում են, որ պէտք չէ հակասութեան մէջ դնել բանականը եւ բնազդականը, որոնք գիտեն, թէ նւաճունակ մտքի բուն աղբիւրը առողջ բնազդն է:

Զուր չէ, որ անգլեւգերման մի շարք մտածողներ կամքը համարում են տարերային կոյր տենչանք, իսկ բանականութիւնը՝ նրա գործիքը:

Ո՞րն է կամքի աղբիւրը. այս հարցը էութեան հարց է, իսկ էութիւնները կազմւում են ոգուց եւ բնութիւնից:

Եթէ հարց տանք. ո՞րն է կամաստեղծ բնութիւնը, աշխարհիմաստութիւնը պիտի պատասխանի - Յայրենի՛քը:

Եթէ հարց տանք. ո՞րն է կամաստեղծ ոգին, կենսաբանութիւնը պիտի պատասխանի - Ցեղը:

Հայրենիք ու Ցեղ - դրանք երկուսն էլ անքանական ոյժեր են, որով աւելի՛ յաւիտենական, քան այլ որեւէ բան՝ երկնքի տակ:

Այդ է պատճառը, որ մարդկային պատմութեան բոլոր ոգորումները, վերջին հաշւով դառնում են դրանց շուրջը:

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936թ., թիվ 1*

# ՆԱԽՆԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ ՑԵՂԻ ՄԱՍԻՆ

*Ա) ՑԵՂԻ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ.-* Ցեղը բնագիտական-մարդաբանական ըմբռնում է: Դրանով մարդաբանութեան մէջ հասկացւում է ժառանգական ընդհանուր ստացւածքով օժտուած մարդկային որեւէ խմբակցութիւն: Ժառանգականութիւնը կենսաբանական զօրութենականութեամբ պայմանաւորւած այն օրէնքն է, որով տեսակները բնօրէն ձգտում են յաւիտենականացնել իրենց գոյութիւնը: Գոյութեան ինքնայաւիտենականացման այս մղումը օրգանապէս բարդ կառոյց ունեցող էակների մօտ բաւարարութիւն է ստանում անուղղակի ձեւով: Ո՛չ թէ անհատ էակն է յաւիտենականանում, այլ տեսակը: Այս առաջընթացը տեղի է ունենում սերնդագործման միջոցով: Սերնդագործումն ա՛յն երեւոյթն է, որի մասին մեր իմաստասէրներից Օհան Օձնեցի կաթողիկոսն ասում է «...ստուգապէս ծնունդ այնմ ասի, ուր յաւելու անձն, նոյն մնալով բնութիւնն»: Այս «բնութիւն»ը ինքը՝ ցեղն է: Որով՝ ցեղը նախ եւ առաջ բնութեան պահպանման զօրութենականութիւն է, նկարագիր է եւ խառնւածք: Այս պահպանումը հնարաւոր է դառնում անհատների միջոցով, որոնք կրում են տւեալ ցեղը յատկորոշող մարմնական եւ հոգեկան բնածին գծերը: Որով՝ ցեղը առանձնատիպ ոգի է եւ արիւն:

Այս առանձնատիպ ոգու եւ արեան ներդաշնակութեան շնորհիւ մարդկային խմբակցութիւնները խստօրէն տարբերւում են միմեանցից:

Ըստ Հանս Գիւնթէրի, մի ցեղ ներկայանում է մարդկային ա՛յն խմբակցութեան մէջ, որ իրեն յատուկ մարմնական նշանակների եւ հոգեկան որպիսութիւնների միութեամբ տարբերւում է մարդկային իւրաքանչիւր այլ խմբակցութիւններից եւ միշտ իրեն նմանն է սերնդագործում: Ըստայսմ՝ ցեղը ինքնանմանը սերնդագործելու զօրութենականութիւն է:

Էապէս տարբեր բան չի ասում Շայդտը, որ ցեղը համարում է «ժառանգական ընտրեալ յատկութիւնների» խմբաւորում:

Այս յատկութիւնների բնական ընտրութիւնը նախատեսում է կենսաբանական նպատակայարմարութեան մի առաջընթաց: Որով՝ ցեղը գոյութեան մարզում կենսաբանօրէն նպատակայարմարը ստեղծելու եւ խնամելու զօրոյթ է: Այդ է պատճառը, որ պատմութեան մարզում ցեղը հանդիսանում է ժողովուրդների գոյութեան պայքարի առաջնորդը եւ զէնքը:

Ցեղի ըմբռնումը պէտք է խստօրէն զատել ժողովրդի ըմբռնումից: Ցեղը գոյութեան ըմբռնում է, ժողովուրդը՝ պատմական-ընկերային: Երբ երկու կամ աւելի ցեղեր ձուլւում են եւ ստեղծում մարդկային նոր մի տիպ - առաջ է գալիս ազգութիւնը: Երբ ազգը ընկերային մի հաւաքականութիւն է կազ-

մում - առաջ է գալիս ժողովուրդը:

Ժողովուրդների եւ ազգերի կեանքի երեւոյթները սերտօրէն կապւած են իրենց ցեղային բաղկացութեան: Ինչպէս մարդաբան Ֆիշէրն է ասում, ժողովուրդների եւ պետութեանց ճակատագիրը ամենաուժեղ եւ ամենավճռական կերպով գտնւում է իրենց ցեղային բնութեան ազդեցութեան ներքոյ:

Ցեղը կենսաբանական ըմբռնում է, ազգութիւնը՝ պատմական, ժողովուրդը՝ ընկերային: Որով՝ ցեղն է ազգութեան եւ ժողովուրդի գոյութեան նախապատճառը եւ հիմքը:

Ցեղը ուժածին գործօն է, ազգութիւնը եւ ժողովուրդը՝ նրա արդիւնքներն են:

* * *

Ցեղի ըմբռնման այս սահմանումը մեզ մղում է մի քանի կարճ խորհրդածութիւնների: Պետութիւն ստեղծում են այն ազգերը, որոնց ցեղային բաղկացութեան գծերը յանգում են ներդաշնակութեան: Այս ներդաշնակութիւնը հնարաւոր է այն դէպքում, երբ ազգութիւնը բաղկացնող խմբակցութիւններից մէկը կարողանում է իր ցեղային խառնւածքը պարտադրել եւ հարազատել տալ միւսներին: Հայաստանի ներանջատական բնութեան շնորհիւ այս առաջընթացը մեզանում չափազանց դանդաղ կերպով տեղի ունեցաւ: «Արմեններ»ը չկարողացան իսպառ նւաճել «հայեր»ին: Հայաստանում ապրեցին քաղաքական տարբեր զգացումներ: «Արմեններ»ը մահը նախընտրեցին ստրկութիւնից, «հայեր»ը հացի աշխատանքը՝ ազատութիւնից: Մէկը հետապնդեց ազատութեան իդէալը, միւսը՝ շինարարութեան եւ հենց դրա շնորհիւ էլ հայոց մշակութային եւ քաղաքական «ես»ը մնաց պառակտւած:

Հայաստանում միայն բանապէս եւ ո՛չ թէ զգացումների ողջ խորութեամբ տիրեց ա՛յն համոզումը, թէ ազատութիւնը եւ մշակութային ստեղծագործութիւնը պայմանաւորւում են միմեանցով:

Երբ մի ազգի մէջ ցեղի ոգու բացարձակ տիրապետութիւնը չկայ - նրա առաքինութիւնները չեն կարող ներդաշնակ լինել: Իսկ ուր չկայ առաքինութիւնների ներդաշնակութիւն - այնտեղ չկայ ուրախ կեանքի ստեղծագործութիւն, այլ մտային - կամային տագնապ եւ ողբերգութիւն:

Սեբէոսը պատմում է, որ Բիւզանդիոնի կայսերապաշտական նպատակներին ծառայող հայրենասէր հայ իշխանները մի անգամ Մօրիկ կայսեր դառնութեամբ յիշեցրել են, թէ պատմութիւնը հայերին երբե՛ք շնորհ չարեց ապրել ու մեռնել իրենց սեփական պետութեան համար:

Հայոց պատմութեան այս ցաւոտ կանչը դեռեւս երկար ժամանակ կա-

րող է անարձագանք մնալ, քանի դեռ չի գտել մեր սրտի ճամբան:

Սիրտը՝ դա է ցեղի ոգու խառնարանը, որում գործում է ճակատագիրը տնօրինող տարրերը:

Ցեղի ոգին՝ դա հայրենաստեղծութեան յաւիտենական ճիգն է. դա ե՛ւ հայկականութիւն է ե՛ւ արմենականութիւն ե՛ւ աշխատանքի կարօտ ե՛ւ ազատութեան կռիւ:

*Բ) ՑԵՂԻ ԾԱԳՈՒՄԸ.-* Գոյութեան (ի մասնաւորի կենսաբանական) խորհուրդներից մէկն անհատականացման, այսինքն՝ օրգանապէս անբաժանելի ամբողջականութիւն դառնալու երեւոյթն է: Գոյութիւն եւ անհատականացում իբր ըմբռնումներ անխուսափելիօրէն կապւած են միմեանց: Դրանց յարաբերութիւնը աւելի օրգանական է, քան տրամաբանութիւնը սովորական իմաստով սահմանում է «բովանդակութեան եւ ձեւի» աղերսը: Առանց գոյութեան ոչինչ կարող է անհատականանալ, առանց անհատականացման ոչինչ կարող է ըմբռնել իբր գոյութիւն:

Մեր իմաստասէր կաթողիկոսը՝ Յովհ. Օձնեցին՝ ճշդօրէն նկատում է. «...ո՛չ գոյ բնութիւն անանձն եւ ո՛չ գոյութիւն առանց դիմաց, վասնզի յանձինս եւ ի դէմս տեսանին գոյութիւն եւ բնութիւն»:

Այո՛, աշխարհում ամենայն ի՛նչ անձնաւորւում է, ամենայն ի՛նչ դիմագծւում է, ամենայն ի՛նչ անհատականանում է: Մի բան գոյութիւն է ստանում ա՛յն ժամ միայն, երբ նա մտնում է անհատականանալու առաջընթացում: Գոյացութիւնը, էապէս, անհատականացման առաջընթաց է:

Անհատականացմամբ է պայմանաւորւում տեսակաւորումը: Տեսակը ոչ այլ ինչ է, քան ինքնատպութիւնը յաւերժացնելու բնաճիգ: Ցեղի գոյութիւնը նախ եւ առաջ պայմանաւորւում է այս բնաճիգով: Այս բնաճիգը նախատեսում է բազմազանութեանց բնական անհրաժեշտութիւնը: Եթէ բազմազանութիւնը բնական անհրաժեշտ առաջընթաց չլինէր - բնութեան մէջ չէր կարող գոյութիւն ունենալ ինքնատպութիւն, որով ե՛ւ տեսակ պահելու բնաճիգ:

Մարդկային սերունդների բազմակերպութիւնը, այսինքն՝ ցեղային բազմազանութիւնը Ֆիշէրը բացատրում է «ընտանեցման ազդեցութեամբ»:

Ըստ Շայդտի, ցեղի կազմաւորումը պատկերւում է հետեւեալ կերպով. ժառանգական տարբեր գծերով անհատներից կազմւած մի բնակչութիւն ապրում է որոշ մի միջավայրում: Այս միջավայրը մարդիկ ձեւաւորում են ըստ իրենց ճաշակի (մշակութային աշխատանք): Իւրաքանչիւր անհատ ընտրում է միջավայրի այն գիծը, որ ամենից շատ պատշաճում է իր էութեան: Ըստ այսմ՝ ցեղը նախ եւ առաջ պատշաճեցման բնաճիգ է: Ոչնչանալու են դատապարտւած բոլոր այն անհատներն ու խմբակցութիւնները, ո-

րոնք ընդունակ չեն իրենց մշակութային կամքը պարտադրել իրենց միջավայրին:

Սակայն մարդիկն էլ ձեւակերպւում են միջավայրից: Միջավայրի պատճառած այս ձեւակերպումները ժառանգելի չեն, բայց նրանք ոչնչացուցիչ անդրադարձում ունեն այն անհատների եւ խմբակցութիւնների վրայ, որոնք յարմարւելու ընդունակութիւնից զուրկ են: Յարմարումի այս երկու կողմերը - ներգործական յարմարում կամ պատշաճեցում՝ մշակութային աշխատանքով եւ կրաւորական յարմարում՝ միջավայրի ազդեցութեամբ - աստիճանաբար (3-ից մինչեւ 10 եւ 20 սերունդ) առաջ են բերում կենսաբանօրէն կարեւոր ժառանգական տուեալներով օժտուած միացեալ մի բնակչութիւն:

Ամբողջութիւնը բնական ընտրութեամբ ձեռք բերուած այս ինքնատիպ ունակութիւնների՝ կազմում է ցեղը:

Կենդանիների, բոյսերի եւ մարդոց բովանդակ ժառանգութիւնը բաղկանում է ցեղային եւ անհատական յատկանիշներից: Ցեղային յատկանիշները ժառանգական տուեալներ եւ ընդունակութիւններ են, որոնք փոխանցւում են ընտրութեան միեւնոյն եւ որոշ նախընթացին ենթակայ նախորդներից:

Ըստ Ֆրից Լենցի, ցեղը փոփոխութեան ենթակայ մի երեւոյթ է, որովհետեւ ցեղերի զարգացման ընթացքին մի՛շտ էլ ժառանգօրէն անկանոն զարտուղիութիւններ են հրապարակ գալիս, որոնցից կենսաբանօրէն յարմարագոյններն ընտրւում են, միւսները՝ ոչնչանում: Անփոփոխելի է միայն առանձին օրգանիզմների ցեղային յատկութիւնը, բայց ոչ նոյնը՝ մի ժողովրդի:

Այս նշանաւոր մարդաբանների սահմանումները դեռեւս մեզ սպառիչ մի բան չեն ասում ցեղի ծագման մասին:

Ցեղը միայն «ընտանեցման կերպ» չէ, ինչպէս Ֆիշէրն է ասում: Ո՛չ էլ դա միշտ այնպէս է կազմաւորւում, ինչպէս Շայդտն է ուզում ապացուցանել: Վերջապէս Լենցի մատնանշած փոփոխութիւնները չեն վերաբերում առանձին օրգանիզմների ցեղային յատկութեան:

Մեր խորին համոզումով՝ «ընտանեցումը», «պատշաճեցումը» եւ «յարմարումը» ո՛չ թէ ցեղածագման պատճառներն են, այլ ցեղային յատկութեան հետեւանքներ:

Ցեղը կենսաբանական երեւոյթ է, բայց նրա ծագումը կապւած է գոյի ընդհանուր խնդրին: Պատճառների շղթայակցութեամբ նա մեզ տանում է մինչեւ բնազանցութեան մարզը: Ցեղը որքան բնութիւն է, նոյնքան եւ ոգի: Որով նրա կնճիռը կը լուծւի բնագիտութեան եւ պատմութեան տուեալների

բնազանցական ընդհանրացումով:
Այս նկատումով էլ ցեղի ծագման մասին դեռեւս ասելիք կայ:

* * *

Ցեղի ծագման շուրջը արւած այս խորհրդածութիւնները կարող են մասամբ լոյս սփռել Յայաստանի ողբերգութեան բնական պատճառների վրայ:
Ապրում են ա՛յն ժողովուրդները, որոնք ցեղօրէն օժտւած են միջավայրը իրենց պատշաճեցնելու եւ նրան յարմարւելու ընդունակութեամբ:
Կարողացա՞ն հայերը պատմական անցեալում նպատակայարմար կերպով լրացնել կենսաբանական այս պահանջները:
Ո՛չ:
Րաֆֆին դառնութեամբ նկատում է, որ մեր ճակատագիրը այլ կը լինէր, եթէ վանքերի փոխարէն հայերը բերդեր շինած լինէին:
Իրականում հայերը վանքերի հետ կառուցել են ե՛ւ բերդեր - ստեղծել են բերդային մի սիստեմ: Եղել են հայեր, որոնք Յայրենիքի պաշտպանութիւնը համարել են կրօնական պարտականութիւն, հանդերձեալում աստւածային գթութիւն հայցելու միջոց:
Անի քաղաքի պարիսպների վրայ մենք կարդացել ենք մի արձանագրութիւն, որ մեր ցեղի յաւիտենականութեան ճամբին բոցավառւող մի լոյս է:
Յայ մի իշխանուհի (ուրեմն՝ այն էլ մի կին) վերակառուցել եւ ամրացրել է հայրենի քաղաքի պարիսպների մի մասը՝ Աստուծոյ ողորմութեամբ եւ իր հարազատների հոգու փրկութեան համար:
Ցեղի ինքնապաշտպանութեան գործը երկնքի ողորմութեան եւ սիրոյ դուռը բացող, աստւածահաճոյ եւ յաւիտենավայել աղօ՜թք...այո՛, հայկական միջնադարը մեզ թողել է ե՛ւ այս սրտաճմլիկ յիշատակը:
Բայց ինչո՞ւ զուր անցան սերունդների յուզումները, խռովքը, նւիրումը: Ինչո՞ւ հայոց հերոսականը չկնքւեց յաղթանակով: Արդեօ՛ք, միայն նրա՞ համար, որ հայերն աւելի վանագործ եղան, քան բերդաշէն:
Այդ չէ բուն պատճառը, այլ՝ աւելի խոր մի երեւոյթ:
Յայերը վատ կերպով միայն կարողացան յարմարւել իրենց Յայրենիքին: Նկատելի է, որ հայոց բերդերի եւ վանքերի հետքերը մեծ մասամբ գտնւում են մինչեւ 2000 մետր բարձրութեան սահմաններում: Յայերը չե՞ն հասկացել իրենց լեռների խորհուրդը եւ խուսափել են բնակութեան կայաններ հաստատել նրանց ծիւնամերձ բարձունքներում: Իրենց չքնաղ լեռնաշխարհում նրանք յամառօրէն պահել են հովտական ժողովրդի կենցաղ

եւ հոգեբանութիւն: Եւ հենց այս պատճառով էլ չեն կարողացել օգտուել իրենց անառիկ լեռների ռազմագիտական արժէքից: Դեռ հնուց ի վեր նրանք թոյլ են տուել, որ իրենց լեռներից օգտուեն օտար վաչկատուններ (Ղարաբաղի այժմեան «քոչ»ի երեւոյթը մնացորդն է այդ դրութեան), որոնք աստիճանաբար տիրացել են երկրի այդ բնական բերդերին: Ծանօթ է նոյնպէս, որ հայերն իրենց պատմութեան բախտորոշ ճակատամարտերը տուել են աւելի հովտային մարզերում, քան լեռներում: Հենց դրանով էլ պիտի բացատրել Տիգրան Մեծի պարտութիւնը՝ Տիգրանակերտի դաշտում եւ Վարդան Մամիկոնեանի ողբերգութիւնը՝ Աւարայրում:

Վատ կերպով միայն յարմարուելով իրենց միջավայրին՝ հայերը չկարողացան նաեւ դրսեւորել իրենց մշակութային ողջ կորովը: Խուսափելով լեռներից՝ նրանք չկարողացան նաեւ յաղթահարել իրենց գետերը: Երկրի ջրառատութիւնն անհրաժեշտ չդարձրեց ոռոգման սիստեմի զարգացումը, իսկ գետերի կատաղընթացութիւնը խանգարեց որեւէ նաւագնացութիւն: Հայաստանի գետերը ո՛չ թէ հաղորդակցութեան միջոցներ էին, այլ՝ խափանիչներ: Նրանց յաղթահարումը անհնարին համարուելով՝ հայերի մէջ չզարգացաւ պատշաճեցումի կամք: Այս կամքի բացակայութիւնը մէկ կողմից պիտի պատճառէր համահայկական կորովի ցրում, որով պիտի ընծայէր տեղական, բեկորային մի մշակոյթի կարելիութիւն, միւս կողմից՝ ժողովուրդը պիտի համակէր ինքնապաշտպանողական եւ ո՛չ թէ յարձակողական հոգեբանութեամբ: Հայոց պատմութիւնն էապէս ինքնապաշտպանութեան մի ճիգ է, իսկ հայոց բերդային սիստեմը՝ այս ճիգի մի արտայայտութիւնը:

Չհասկացանք մեր լեռների խորհուրդը եւ չկարողացանք յաղթահարել մեր գետերի քմահաճոյքը:

Յարմարուելու մէջ ապիկար եղանք եւ պատշաճեցումի նւազ կորով յայտնաբերեցինք: Դրա համար էլ թէ՛ Հայրենիքը կորցրինք, թէ՛ հայոց հազարամեակների հերոսականի ողբերգական վախճանը տեսանք:

Ի՞նչը կը փրկի մեզ - մեր ցեղային թերութիւնների սրբագրումը, կենսաբանօրէն ասած՝ ցեղային վերաշինութիւնը:

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936 թ., թիվ 1, 2*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲՆՈՒԹԱԳԻՐԸ

Հայկական Բարձրաւանդակը Խաղաղականից մինչեւ Ատլանտեան Ովկիանիոս երկարող եւ ասիական ու եւրացամաքամասերի կենտրոնական մարզերն ընդգրկող «Մեծ Սարահարթ»ի իւրաքնոյթ մի հանգոյցն է:

Գէոսոֆիական, աշխարհագրական եւ մարդաբանական տեսակէտներով, հսկայ այս սարահարթը ճակատագրական իր կնիքն է դրել բովանդակ աշխարհի բնութեան եւ պատմութեան վրայ:

Դա է մեր մոլորակի երկրաբանական դինամիկայի ամենահուժկու մարզը - հրաբխային ցնցումների, երկրաշարժների մեծ գիծը:

Դա է Հին Աշխարհի «այրեցեալ» եւ «սառուցեալ» գօտիների բնական բաժանիչը, դա է ընդհանուր իմաստով ինքը՝ «բարեխառն» գօտին:

Դա է բնական օրրանը սպիտակ ցեղի: Դա է ընդհանուր կերպով իրարից բաժանում դեղինների եւ սեւերի ցեղաշխարհները:

Այս սարահարթում բացառիկ դիրք է գրաւում մեր երկիրը - Հայոց Աշխարհը:

Երկրաբանական ուժական տեսակէտով, Հայկական Բարձրաւանդակը Մեծ Սարահարթի կենտրոնական հնոցն է: Նա գտնւում է Մեծ Սարահարթի ծայրամասային հրաբխական երկու մարզերի - ճաբոնական կղզիների եւ Իսլանդիայի - գրեթէ մէջտեղում:

Երկրաբանօրէն՝ նա աշխարհի ամենաերիտասարդ մի մասն է, որի բնական լինելիութիւնը դեռ շարունակւում է:

Աշխարհագրօրէն՝ նա ընդհանրապէս կենտրոնն է Մեծ Սարահարթի, որի արեւելքից արեւմուտք ձգւող լեռնապատերը ծայրամիտելով ու զօդւելով, կազմում են, իրարից գրեթէ հաւասար հեռաւորութեան վրայ ընկած, լեռնային երեք բաւիղներ - Կարակորում, Արարատ, Մոն-Բլան:

Դրանցից ամենամեծը - Հինդուկուշ-Պամիրի Կարակորումը - ունի ցայտուն ասիական բնութիւն եւ իր շուրջը համախմբում է Ասիան: Ամենից փոքրը - ալպեան Մոն-Բլանը - մարմնացնում է Եւրոպայի բնութեան առանձնայատկութիւնները եւ ընդհանրապէս ձեւացնում Եւրոպան: Սրանց մէջտեղում կարկառւում է հայկական Արարատը - բովանդակ աշխարհի ամենամեծ միազանգ կոնը - ուր մեղմանում են Կարակորումի խիստ եւ շեշտւում են Մոն-Բլանի մեղմ բնագծերը:

Միւս կողմից՝ Հայկական Բարձրաւանդակում Մեծ Սարահարթը խաչա-

ձեւում են հիւսիսից հարաւ իջնող ա՛յն լեռները, որոնք որոշում են Եւր-Ասիայի եւ Աֆր-Ասիայի բնութիւնները:

Այս իրողութիւնները, շատ տեսակէտներով, կնքում են Արարատի շուրջը տարածուող Հայկական Բարձրաւանդակի բնանկարը, ինչպէս նաեւ պայմանաւորում իրերի տրամաբանութեան ազդեցութիւնը՝ այստեղ արտայայտութիւն ստացած պատմական հոլովոյթների վրայ:

Մեր բարձրաւանդակը ներկայացնում է մի բնամարզ, ուր համադրուելով՝ անճանաչելի դառնալու աստիճան կերպարանափոխւում են եւ հակադրուելով՝ սպառուելու աստիճան աղօտւում են զուտ եւրոպական, ասիական կամ Եւր-Ասիական ու Աֆր-Ասիական բնագծերը:

Հայաստանն այս բոլորի նկատմամբ ե՛ւ կամուրջ է ե՛ւ վիհ: Նա ե՛ւ համաձուլում է այս բնագծերը ե՛ւ դրանք բաժանում իրարից ե՛ւ տարբերւում դրանցից:

Իր այսորակ տրոհական, միացուցիչ եւ անջատական դերն ու դիրքը՝ Հայաստանը պահում է նաեւ շրջակայ երկրամասերի նկատմամբ:

Հայաստան են թափանցում փոքր ասիական եւ իրանական սարահարթերի եւ միջագետեան ու մերձ-կասպեան հարթաշխարհների որոշ բնագծերը: Մեր Հայրենիքը մի մարզ է, ուր ինչպէս Լինչն է նկատում «միանում են շրջակայ երկիրների բնական իրականութիւնները»:

Աշխարհի չորս կողմերից արշաւող այս «իրականութիւններ»ը մէկ կողմից զիրար խաչաձեւելով կամ միմեանց դէմ մաքառելով երկրին տալիս են խայտանկարային մի պատկեր, միւս կողմից, իրար հակազդելով կամ ենթարկուելով Հայաստանի բնութեան իւրայատուկ քմահաճոյքին՝ սերտօրէն համաձուլւում են բնականի մի ամբողջականութեան մէջ:

Իր բնութեան ներձուլողական վիթխարի կարողականութեան շնորհիւ՝ մեր երկիրը ինքնարձանանում է իբր հակադիր բազմազանութեանց ներդաշնակումի իւրատիպ մի մարզ: Այս ինքնուրոյն ներդաշնակութիւնը մեր երկրին պարգեւում է ամբողջական ու միացեալ մի նկարագիր:

Արդէն իր յարաբերական բարձրութեամբ - 500-1000 մետր - փոքր-ասիական եւ իրանական սարահարթների նկատմամբ, իր տանիքակերպ կարկառումով ընդդէմ Միջագետեան եւ մերձ-կասպեան հարթաստանների՝ Հայաստանն երկրաբանօրէն, աշխարհագրօրէն, կլիմայով եւ տնտեսապէս խստօրէն զատորոշւում է իր շրջապատից:

Մեր Բարձրաւանդակը հրաբխային մեծ կոների եւ հանգոյցների, փարթամօրէն ճիւղաւորուող զուգընթաց լեռնապարերի եւ աշխոյժ տարհովտումի մի աշխարհ է: Նա զուրկ է մեծ հարթավայրերից եւ ջրային ընդարձակ մակերեսներից: Նրա բնանկարը դիմորոշում են չափաւոր մեծութեան

բարձրադիր հովիտները, պատշաճաւոր վեհութեան հասնող գագաթները, խոր կիրճերը, մանր լճերի ցանցերը եւ ոչ-հսկայահոս, բայց բազմաթիւ ու կայտառավազ ջրերակները:

Երկու բան, յատկապէս, խորհրդաւորում են մեր երկրի բնութիւնը - հրաբխային կոնը եւ աղբիւրը, որոնցից մէկի վեհութիւնը եւ միւսի քաղցրութիւնը միայն Յայաստանում կարելի է տեսնել եւ զգալ:

* * *

Խտացնելով ասենք.

ա) Յայկական Բարձրաւանդակը ներկայացնում է Մեծ Սարահարթի երկրաբանական ուժականութեան կենտրոնական մարզը:

բ) Նա գտնւում է մի կողմից եւրոպական եւ ասիական բնութիւնները մարմնացնող Ալպերի եւ Պամիրի, միւս կողմից՝ Աֆր-Ասիան եւ Եւր-Ասիան կերպարանաւորող Եթովպիական Բարձրաւանդակի եւ Ուրալի միջեւ:

գ) Իր բնական առանձնայատկութիւններով՝ նա տարբերւում է աշխարհագրական բոլոր այս միջավայրերից:

դ) Արեւելքից արեւմուտք նա իրար է կցում իրանական արիների եւ արմենօիդ-դինարեան-ալպեան ցեղի հայրենիքները, հիւսիսից հարաւ՝ նա միմեանցից բաժանում է զուտ կովկասեան եւ միջերկրականեան ցեղերի, մանաւանդ մոնգոլների եւ սեմական ժողովուրդների աշխարհները:

Այս ասել է.

ա) Երկրաբանական իմաստով մեր երկիրը հաւասարապէս պատկանում է ե՛ւ Ասիային ե՛ւ Եւրոպային:

բ) Իր բնութեամբ նա ո՛չ զուտ Ասիա է, ո՛չ Եւրոպա, ո՛չ մանաւանդ Աֆր-Ասիա (ուրիշ եզրով՝ Մերձաւոր Արեւելք), ո՛չ էլ Եւր-Ասիա:

գ) Իր աշխարհագրական դիրքով նա սահմանաւորում է Մերձաւոր Արեւելքը, որ սպառւում է Յայկական Տաւրոսի արտաքին պատերի տակ եւ Եւր-Ասիան, որ վերջանում է Յայկական Կովկասի հիւսիսային լանջերի առջեւ: Միւս կողմից նա իրար է զօդում Մեծ Սարահարթի ասիական եւ եւրոպական մասերը, որով՝ հանդիսանում է այս ցամաքամասերից մէկի ծայրը եւ միւսի՝ սկիզբը: Աշխարհագրական կոպիտ եւ միակողմանի հասկացողութեամբ միայն Յայաստանը կարելի է դասել ասիական երկրների շարքում: Երկրաչափական ըմբռնումով՝ նա ընկնում է Եւր-Ասիական եւ Աֆր-Ասիական գծի վրայ, բնութեամբ՝ նա աւելի Ալպերին է մօտ, քան Պամիրին, աւելի Բալկաններին, քան Իրանական Սարահարթին, Կովկասին, Լիբանանին

եւ Միջագետքին:

Հայաստանն որոշ իմաստով միայն Ասիա է եւ որոշ՝ Եւրոպա. իրականում՝ նա ոչ նրան է պատկանում, ո՛չ սրան: Իր բնութեամբ եւ աշխարհագրական դիրքով նա յաւիտենական մի կռախնձոր է Ասիայի եւ Եւրոպայի միջեւ, բայց նաեւ՝ բնական անհատականութեան ինքնատիպ մի մարզ, ցցուած ե՛ւ մէկի ե՛ւ միւսի դէմ:

դ) Հայկական Բարձրաւանդակի բնիկները չունեն ուղիղ գծի ցեղակցութիւն շրջակայ երկիրների ժողովուրդների հետ: Նման իրենց երկրի բնութեան, նրանք ցեղային մի գծով կապւում են Եւրոպային, միւսով՝ իրանական արիներին: Հայերը ցեղակիցներ ունեն, ազգակիցներ չունեն: Իբրեւ ազգութիւն մենք էլ մեր Բարձրաւանդակի պէս մնացինք ինքնատիպ անհատականութիւն, Եւրոպայի եւ Ասիայի հակամարտ ազդեցութիւնների միջեւ, մերթ ընդվզեցինք երկուսի դէմ՝ միաժամանակ, մերթ նրա հետ եղանք, մերթ սրա, բայց ո՛չ մենք յաջողեցինք դրանց ծունկի բերել, ո՛չ էլ դրանցից մէկն ու մէկը կարողացաւ մեզ կլանել:

Այդ յաւիտենական պայքարը-պայքար աշխարհագրական իրականութիւնների, պայքար ցեղերի, հոգեբանութիւնների - այսօր ընթանում է մեզ համար աննպաստ պայմաններում:

*«Տարօնի Արծիւ», 1938թ., թիվ 1*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԻ ԿԵՐՊԱՏՈՒ ԳՈՐԾՕՆՆԵՐԸ ԵՒ ԿԵՐՊԱՐԱՆԸ

Իրանական եւ Փոքր-Ասիական սարահարթների նկատմամբ բարձրադիր եւ հիւսիսանիստ, Ռիոն-Կուրի հովիտների եւ Միջագետ-Սիրիական հարթաստանների հանդեպ վիթխարակարկառ տանիք, Խորենացու բնորոշումով՝ իրո՛ք «հանուրց հիւսիսականաց վեհագոյն» մեր բարձրաւանդակը, կազմուած է խտօրէն խմբուած լեռնածալքերից:

Հայաստանն այնտեղ է, ուր երկրաբանական ահարկու դինամիկան Մեծ Սարահարթի ամենասեղմուած պատերը պարույկածել մի գալարումով շուռ է տուել դէպի հիւսիս եւ ընծայել- համասարահարթային իմաստով՝ մի «լեռնապարանոց», առաջաւոր ասիական տեսակէտով՝ կիսալուսնակերպ մի «լեռնակղզի»:

Լեռնագրօտներու իրար հեծնելու, իրարու վրայ թափուելու մոլուցքը եւ շրջակայ իրականութիւնների - Սեւ ու Կասպից ծովերը, Ռիոնն ու Կուրը իրենց հովիտներով՝ հիւսիսից, Հնդկաց Ովկիանոսի եւ Միջերկրականի ցռուկները եւ սրանց միջեւ ընկած Սիրիական բնութիւնը եւ Միջագետեան հարթաշխարհը՝ հարաւից - ճնշման օղակը, անկասկածօրէն մեր բարձրաւանդակը լեռնային վայրի մի բաւիղի կը վերածէին, եթէ ասպարէզ չգար ընդդիմադիր մի ոյժ:

Այդ ոյժը Հայաստանի բնութեան ահարկու հրաբխականութիւնն է: Դա այնպէս է ցնցել իր մարզը, որ այնտեղ երկրաբանական խաւերի կանոնաւոր դասաւորում ի զուր է փնտռել: Իրար են խառնուած իրենց ծագումով երկրաբանական տարբեր ժամանակների պատկանող, իրենց հանքային բաղկացութեամբ անհամասեռ խաւերը:

Յաճախ է պատահում, որ ո՛չ միայն ամբողջական եւ միազանգ մի գօտու հատուածներից, այլեւ սրանց մասերից ոմանք կրում են եռախաւեան շրջանի ծալագծերի կնիքը, ոմանք՝ աւելի հին, ոմանք՝ աւելի նոր: Նոյնանման անկանոն յարաբերութիւններն են ներկայացնում նաեւ հանքային շերտաւորումները:

Ահարկուօրէն տարերախառն է եղել Հայոց Աշխարհի բնայեղափոխութիւնը:

Բարձրաւանդակի հուժկու գօտիները, որոնք սկզբնական շրջանում, գրեթէ, համածոյլ էին, մասնատումի ենթարկուեցին միջախաւեան (միոքենական) մինչեւ նոր ժամանակների հրաբխականութեամբ, նորոգահողեան (պլիոքենական) մինչեւ վերջնագոյն շրջանների կեղեւների շարժմամբ ու

կծկումներով:

Երկրաբանական երրորդական խաւի (եռախաւ, տերցիէր) շրջանում յատկապէս, լեռնածալքերը կրկին եւ կրկին խորտակուեցին եւ նրանց կեղեւները՝ ուժգնօրէն նետուեցին այս ու այն կողմ:

Այն ժամանակներում Հայաստանը նման էր վիթխարի մի հնոցի, որում գալարւում էին կրակէ սիւներ՝ ո՛չ միայն շարժելով լեռները, այլեւ պայթած ռումբի կտորների նման ցրելով նրանց մասերը:

Հայաստանն ա՛յն աշխարհն է, ուր երկրաբանական դինամիկան լեռներ է շարժել:

Ա՛յն տեղերում, ուր փխրւում էին երկրի կեղեւի ներքուստ ճնշւող մասերը՝ բղխում էին հրահոսի (լաւա) ահռելիօրէն տիեզերայորդ շատրւաններ, որոնք նախ հրացայտում էին որոտացող գագաթներից վեր, ապա վիշապահոս կրակէ գետերի պէս՝ թափւում ցնցումներից դողացող լեռների լանջերից:

Աւարկու բնայեղափոխութեան վերջի շրջաններում, երբ նւազել էր կրակի մոլեգնութիւնը, որոշ պատռուածքներ լեցւելով ջրով՝ ծեւացրեցին բազմաթիւ լճեր, որոնք տակաւին որոտացող հրաբերանների հետ՝ երկրին տուին ճշմարտօրէն «հրոյ եւ ջրոյ» մի աշխարհի նկարագիր:

Նորանոր ցնցումների հետեւանքով - հաւանաբար, ա՛յն ժամանակներում, երբ երկրի ընդերքից սկսեցին արտավիժել հսկայաքանակ հրաբխանիւթեր եւ կարկառել մեր աշխարհի մեծափառ կոները՝ Մասիս, Արագած, Սիփան, Սուկաւ, Նեքրովք, եւն.- այս լճերից շատերի պատերը ճեղքւեցին եւ անդնդախոր պատռուածքների միջով, յատկապէս այժմեան մեծ ջրերակներից Արածանի, Եփրատի եւ Արաքսի գծերով, նրանց, այդ լճերի բովանդակութիւնն արտահոսեց երկրից դուրս՝ հեղեղելով Միջագետքն ու մերձկասպեան հարթաշխարհը, սրանց պարգեւելով կենսատու ջուր եւ արգասաբեր տիղմ:

Երկրաբանական վերջնախաւի շրջանում միայն, մեր աշխարհը կարողացաւ ստանալ իր այսօրուան կերպարանը՝ պահելով լռած կամ դեռեւս որոտացող վկաները փոթորկալից այն ժամանակների - հրաբխային հսկայ կոներն ու հանգոյցները: Անգամ պատմական մերձաւոր ժամանակներում, մի շարք հրաբերաններ մերթ ընդ մերթ բորբոքւում էին: Նշանաւոր մի հնոց - Թոնդրակը - որոտում է դեռ այսօր:

Հայկական Բարձրաւանդակի երկրաբանական լինելիութիւնը դեռ շարունակւում է: Դեռ հիմա էլ մեր երկրի կուրծքը հսկայական մի ամբար է բնաւժական զօրոյթի: Բայց եւ այնպէս, նա այլեւս հրահոսների մարզ չէ, այլ՝ խաւերի ճնշումներով ու կծկումներով պայմանաւորւող երկրաշարժե-

րի: Նոյնինքն զարզանդորոտ Թոնդրակը բաւարարւում է ծծմբախառն գոլորշի կամ եռման աստիճանի ցայտաղբիւրներ արտավիժելով:
Հայաստանը - դա հրահոսների եւ երկրաշարժների, երկրաբանական անհուն դինամիկայի ա՛յն աշխարհն է, որի բնութեան բնորոշիչը, իսկական կերպատուն հրաբխային ներբնակ ոյժն է:
Այս գործօնի դերն աւելի մեծ է մեր երկրում, քան Նեղոսինը՝ Եգիպտոսում:
Հայաստանը պարգեւն է իր բնութեան հրաբխականութեան:
Դրա պարգեւն է նաեւ Միջագետքը՝ բնական ստեղծարժէք իր գծերով, հին բոլոր իր քաղաքակրթութիւններով:
Հրաբխային զօրոյթը - դա զարդանկարեց մեր երկիրը զմայլելի իր խոր - եւ բարձրաքանդակներով, գեղանի հովիտներով եւ վեհափառ գագաթներով:
Ի՞նչ կը լինէր Հայաստանն առանց Արարատեան, Բագրեւանդի, Տարօնի եւ կենսարժէք մշակումների ու բարձր մշակոյթի կարելիութիւն ընծայող միւս դաշտերի ու հովիտների: Իսկ դրանք՝ ցնցումների հետեւանքով երկրից արտահոսած լճերի յատակներ են:
Որքա՞ն աղօտ պիտի լինէր նրա կերպարանը առանց Արարատի, Արագածի, Սուկաւի, Սիփանի, Բիւրակնի, Նեմրութի եւ միւս վսեմական կոների ու հանգոյցների: Դրանք սակայն, հրաբխային հսկայական կարկառումներ են, հրաբխանիւթերի ահռելի շեղջաւորումներ:
Հովիտների եւ գագաթների հետ՝ երկրի բնանկարը լրացնում են լճային եւ գետային հարուստ ցանցերը: Բայց լճերը, ջրային մեծ արտահոսումի ժամանակ, փրկւեցին շնորհիւ իրենց խոռոչների խորութեան, որոնք հրաբխային խառնարաններ են, հրաբերանային սկաւառակներ: Լեռնային անթիւ աղբիւրներն էլ, որոնք մեծ բնայեղափոխութիւնից յետոյ, փոխարինեցին հրահոսի երակներին՝ վտակներ եւ մանաւանդ գետային ցանցեր կազմելու հնարաւորութիւն գտան, մեծ մասամբ ցնցումների պատճառած պատռւածքների շնորհիւ:
Պատկերօրէն՝ մեր բարձրաւանդակը կարելի է նմանեցնել Միջագետքի ալեւոր գլխին ծնկաչոք բազմած եւ բազկատարած մի հսկայի: Հսկան հագել է լայնաթեզանի մի պատմուճան, որի գորշ հիմնագոյնի վրայ փողփողում են մերթ յաւիտենօրէն սպիտակափառ, մերթ կանաչ, մերթ խայտերանգ գոհարներ - մեր աշխարհի հրաբխային վեհաշուք հանգոյցները եւ փառատեսիլ կոները: Մէջքին կապել է քառածալ եւ բազմածուպ մի գօտի - չորս մեծ լեռնապարերը եւ դրանց կայտառօրէն ճիւղաւորուող բազուկները: Պատմուճանի անհունօրէն երիզւող ծալքերից անցնում են արծաթագոյն

անթիւ ժապաւէններ - հայաշխարհի լեռներից խունճապահար օձերի պէս իջնող, հովիտներում՝ վիշապօրէն ուռչող եւ կիրճերում՝ կայծակնօրէն ժայթքող փարթամ ջրերակները: Ուսերի վրայ եւ լանջքերին խայտում են բազմաթիւ կապոյտ պիտակներ - մեր երկրի անհանգիստ լճակները, որոնցից ոմանց ցամաքակեաց ժողովուրդը արժանացրել է «ծով» տիտղոսին:

Պատմուճանը խնամքով ասեղնագործուած է մերթ խայտաբղէտ, մերթ միայն կանաչ նկարներով - մեր երկրի զմայլանքից խենթացնող ծաղկաստանները եւ շքեղ մարգերը:

Յսկան գլխին դրել է կանաչ մի պսակ - Գուգարաց անտառը, գողտրիկ Լոռին - որի հիւսկէնները կախւում են մինչեւ ուսերը եւ մինչեւ կուրծքը - Մեծրանց հոյափառ անտառը, Սիւնեաց ծմակները, Տաւրոսի պուրակները:

Պատկերն իր ամբողջութեան մէջ ներկայացնում է բնական արարչութեան մի հրաշակերտը: Նրա առանձին դրւագներից շատերը, սակայն, աւելի՛ են տպաւորիչ: Արարատ լեռը, Սեւանի լիճը, Արածանի գետը, օրինակ, վեհութեան եւ խորհրդաւորութեան յաւիտենական ներշնչարաններ են:

Ամփոփենք.

ա) Յայկական Բարձրաւանդակն իբր բնա-աշխարհագրական իրականութիւն արդիւնք է երկրաբանական դինամիկայի հսկայածոյժ գործունէութեան, բովանդակ աշխարհում բացառիկ թափ ունեցող հրաբխականութեան:

բ) Ներբնակ այս հրաբխականութիւնն է մեր երկրի բնութեան իսկական դիմանկարիչը, նրան իր առանձնատիպ կերպարան տուող գործօնը:

գ) Յայաստանը կերպարանաւորուել է երկրաբանական վերջնախաւի շրջանում - նորածին աշխարհ է, թարմ բնութիւն, օժտուած լինելիական անհուն կարելիութիւններով:

դ) Իր այս գծի շնորհիւ, մեր երկրի բնութիւնը համակուած է տիեզերական ապագայատենչութեամբ - նա խորհրդազդու պատկեր է, բնաշունչ իրականութիւն:

Ի՞նչպէս են ազդել այս երեւոյթները մեր ցեղի հոգե-մարմնական կառոյցին վրայ.

ա) Յայը, նախեւառաջ, ոգու մարդ է, օժտուած կենսաբանական գերաստիճան դինամիկայով - յղութիւններով հարուստ ցեղ, որի մէջ յայտնութեան ոյժը գործում է զգացումների տարերային պոռթկումով - նա իմացական էակի ցայտուն տիպար չէ, այլ՝ զգացա-իմացական:

բ) Ցեղատիպ հայի մարմնակերպութիւնը կրում է իր երկրի բարձրաւանդակային բնութեան կնիքը - նա տիպար լեռնա-հովտական մարդ է: Իր մարմնական կազմով նա գրեթէ նոյնն է, ինչ ալպեան տիպի մարդը, մի քիչ

աւելի լայնակուրծ եւ հաստաբուն, մի քիչ աւելի դանդաղկոտ, բայց աւելի տոկուն:

գ) Նա հին ցեղ չէ. յամենայն դէպս նա իր արեան շաղախը եւ ոգու բնագծումը ստացել է Հայկական Բարձրաւանդակում. ունի լինելիական նկարագիր եւ իր բոլոր մեծ յղացումները կրում են դրա դրոշմը (յիշել Վահագնածնութեան երգը, Սասմայ ծռերը, Նարեկացու «առուղեկան յաւիտենականը», Զիւանու «Զախորդ օրեր»ը եւն., որոնց բոլորի մէջ լինելիական յաւիտենականի ստեղծագործ կարօտը կայ):

դ) Հովտական ապրումը հային պարգեւել է իդէալիստական ոգե-աշխարհ. կիրճերի եւ լեռների զգացումը՝ դրան միացրել է խորհրդապաշտական երանգը: Հայ ոգում իդէալիստական եւ խորհրդապաշտական գծերն այնպէս են խառնուել իրար, ինչպէս մեր աշխարհում միմեանցով պայմանաւորուող հովիտը, կիրճը եւ լեռը: Այս հոգեգծերը դեռ խառն են. դեռ չկայ ներդաշնակօրէն համաձուլւած, ներքուստ ամբողջացած հայը: Այստեղից՝ հայ էութեան մէջ ա՛յնքան շեշտւած «երկու ոգիների պայքար»ի պատճառը: Ինչպէս մեր բարձրաւանդակի բնութիւնը, այդպէս էլ մեր ոգին դեռ լինելիութեան մէջ է: Եւ հասկանալի է, թէ ինչո՛ւ հայն ա՛յնքան մեծ զգացում ունի անմահութեան համար: Անմահական «ջրեր»ի եւ «խնձորներ»ի դասական առասպելների աշխարհ է Հայաստանը, եւ զարմանալի չէ, որ նրա մարդը - հայը - ամենից շուտ պիտի կառչէր Յիսուսի «հանդերձեալ»ին: Հայը ներշնչական տիպ է, իսկ անմահութեան զգացումը՝ տիեզերական յաւիտենականի մեծագոյն ներշնչումը:

Գոյութեան ի՜նչ ահաւոր վտանգ, երբ հայը դեռ հոգեգծային ներդաշնակումի չյանգած, դեռ «երկու ոգիների պայքար»ի ներքին տագնապի մէջ՝ դուրս նետւեց իր բնական միջավայրից, իր լինելիատիպ Հայրենիքից, ուր անմահութեան առասպելը կենդանի ապրում էր, ուր բարձրաւանդակային երազկոտ բնութիւնը մարդուն անվերջ խօսեցնել էր տալիս ճակատագրի, երկրի թովչանքի, երկնքի, յաւիտենականութեան զգացումի հետ:

Օտարութեան մէջ ի՞նչը կարող է մեզ փրկել ոգու եւ արիւնի վատասերումից, եթէ չգործէ մեր լինելիական էութիւնը - ցեղը: Եւ ի՞նչը կարող է մեզ կրկին առաջնորդել դէպի երկիր, եթէ չվերայայտնւեն այն ոյժերը, որոնք մեր անցեալը դրոշմեցին հերոսականի կնիքով - ցեղը եւ իր հոգեւոր մեխանիզմ տարօնականութիւնը:

*«Տարօնի Արծիւ», 1938թ. , թիվ 2*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԻ ԲՆԱԿԱՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Հայկական Բարձրաւանդակ եւ պատմական Հայաստան - միեւնոյն բաները չեն դրանք: Առաջինը զուտ բնա-աշխարհագրական ըմբռնում է, որով՝ բնօրէն որոշ ու անփոփոխ, երկրորդը՝ պատմա-ազգագրական, որով՝ ենթակայ սեղմումի եւ ընդլայնումի, ինչպէս ինքը՝ կեանքի յարափոփոխ հոլովոյթը:

Անցեալում մեր քաղաքական կեանքն ու ուժն այնքան անկայուն եւ ելեւէջային են եղել, որ այսօր դժւար է առանց վերապահումի մատնանշել պատմական Հայաստանի սահմանները: Ո՛չ միայն օտարներն են յաճախ քաղաքականապէս մասնատել մեր երկիրը, այլեւ հայոց պետական դրօշը մերթ իր ազդեցութիւնը ծաւալելով (օրկ. Տիգրան Մեծի ժամանակ), մերթ վասալային մանրապետութեանց խորհրդանշան դառնալով (Արշակունիների անկումից յետոյ), մերթ տարագրւելով (Կիլիկեան շրջան), մերթ իսպառ չքանալով՝ պատճառել է այլազան սահմանագծումներ: Շփոթիչ դեր է խաղում նաեւ հին պատմիչների՝ հայերի Թրակիայից գալու եւ որոշ մարդա-պատմաբանների՝ հայոց փոքր-ասիական ծագման տեսութիւնները, որոնցից հետեւացւում է, թէ մեր ազգի նախօրօրանը Փոքր-Հայքն է: Հները պատմական Հայաստան ասելով՝ ընդհանրապէս հասկանում են Մեծ-Հայքը եւ Փոքր-Հայքը: Առաջինը մեր երկիրն ուսումնասիրող գերմանացի գիտնականների «Հայկական Բարձրաւանդակ» անւանած աշխարհագրական միաւորն է բնական Հայաստանը, որ ըստ մարդաբանական նորագոյն տւեալների, հայ ցեղի եւ ազգութեան կազմաւորման բնական միջավայրն է, այսինքն՝ հայոց յաւիտենական Հայրենիքը:

Բնօրէն սահմանագծւած այս բարձրաւանդակն է Հայոց պատմութեան գլխաւոր թատերավայրը եւ դա է պատկերւում ու զգացւում իբր մեր ամբողջական Հայրենիքը՝ անկախ ազգագրական պայմաններից եւ ժամանակների քաղաքական սահմանագծումներից: Այս հայրենըմբռնումն արդիւնք է ո՛չ միայն մեր ենթակայական տրամադրութիւնների, այլեւ՝ բնական գործօնների առարկայական անդրադարձումի-աշխարհագրօրէն ամբողջական երկիրն է պարտադրում օրգանական հայրենասիրութիւն, հայրենիքի յաւիտենական զգացում, հայրենազգացութիւն: Արարատը սրբազան է բոլոր հայերի համար, որովհետեւ դա կենտրոնական բաւիղն է Հայկական Բարձրաւանդակը ձեւացնող լեռների, բնական խորհրդանշանը Հայոց Հայրենիքի ամբողջականութեան:

Այսօր, Պարսկաստանն իր թաթարաբնակ Ատրպատականով երկարում է մինչեւ Արարատ: Թուրքիան արդէն ոտքը դրած Արարատեան դաշտում՝ սպառնալից կերպով սեղմել է խորհրդային «բեկոր-Հայաստան»ը: Արաքսի ձախ ափի որոշ կէտերում ռուս զինուորն է պահակում: Թուրքիոյ քաղաքական դրօշի տակ՝ Հայկ. Տաւրոսն ազգագրօրէն ստացել է զուտ քրտական նկարագիր: Հայկական Պարն ու Ծաղկանցն օրըստօրէ մերկանալով քրտութիւնից՝ նաեւ ազգագրօրէն ստանում են թուրք-թաթարական կերպարան: Հայկական Կովկասի այլեւայլ մասերում աչքի են զարկում թաթարական ազդեցիկ գծեր: Մեծրանցը ե՛ւ քաղաքականապէս ե՛ւ ազգագրապէս ստացել է թուրքական դրոշմ: Մեր երկիրը կազմող հինգ լեռնազօտիներից չորսը անցել է թուրքերի ձեռքը, մէկը՝ վիճելի դարձել հայերի եւ թաթարների միջեւ: Թուրքերը տիրում են մեր բարձրաւանդակի տարածութեան 4/5-երրորդականին, թաթարները եւ վրացիները՝ 1/10-երորդականին: Ազգագրօրէն՝ Հայկական Բարձրաւանդակը հազիւ իր 1/10-երորդականով պահում է հայկական կերպարան: Այս իրողութիւնները, որքան էլ նշանակալից Առաջաւոր Ասիոյ պատմութեան եւ մանաւանդ Հայաստանի, հայ ազգի գոյութեան, լինել-չլինելու կնճիռի տեսակէտով, այնուամենայնիւ, ի զօրու չեն Հայկական Բարձրաւանդակի բնական միութիւնը պառակտել: Հայկական Բարձրաւանդակը բնական մի միաւոր է, աշխարհագրական անբաժանելի մի ամբողջականութիւն է:

Ճիշդ է նկատում աշխարհագիր Էվալդ Բանզէն, թէ «աշխարհագրական առանձին բնութեամբ մի Քիւրտիստան գոյութիւն չունի», այսինքն՝ ոչ միայն այսր, այլեւ՝ անդր-տիգրիսեան լեռնաշխարհը պատկանում է Հայկական Բարձրաւանդակին:

Հայաստանն իրանական եւ փոքր-ասիական աւելի ստորանիստ սարահարթների եւ Միջագետքի, Ասորիքի ու Կովկասի դաշտագետիններից միջեւ տարածւած ամենակարկառուն բարձրաւանդակն է:

Հանրածանօթ է սահմանային այս ըմբռնումը, բայց շատ ընդհանուր, վերացական, իրական մանրամասնութիւնների մէջ՝ չբաւարարող: Ո՞ւր են վերջանում Իրանը, Փոքր-Ասիան, Կովկասը, Միջագետքը. ո՞րտեղից են սկսում Հայկական Բարձրաւանդակի բնական սահմանները: Անհրաժեշտ է այս մասին յստակ գաղափար կազմել: Կենսաբանօրէն եւ գործնական քաղաքականութեան տեսակէտից սահագին նշանակութիւն ունի լիազգաց հայրենըմբռնումը: Դա ասել է՝ նպատակի առարկայական եւ ամբողջական դիմագծումը: Դա ասել է՝ քաղաքական ուշադրութեան եւ ձգտումների կենտրոնացում: Դա կարող է լոյս սփռել էական այնպիսի հարցերի վրայ, որպիսիք են.

ա) Ո՞րն է բուն մեր Հայրենիքը, որից դուրս այլ «օջախ»ներ որոնելը բանդագուշանք է միայն, անհայրենազգաց քաղաքաբանութիւն, անստեղծագործ դեգերում, ուշադրութեան եւ կամքի ցրում, անկենսաբանական ցնորք:

բ) Կարո՞ղ է ներկայ Խ. Հայաստանը գոյութեան հաւատ եւ մանաւանդ վտանգի ժամանակ ինքնապաշտպանուելու յոյս ներշնչել:

գ) Հնարաւո՞ր է Հայաստանից դուրս հոգեւոր հայրենիք ստեղծել, անհող պետութիւն:

դ) Բնական ինչպիսի՞ սահմաններում հայերը կարող են իբրեւ ազգութիւն եւ պետութիւն օրգանապէս զարգանալ, այսինքն՝ տնտեսապէս, քաղաքականապէս, ռազմագիտօրէն յարաբերաբար ապահով դիրք նուաճել:

Հայը նախ ազգակիցներ չունեցող ժողովուրդ է: Եւ հենց դրա համար էլ նա սովորականից աւելի կարիք ունի երկու բանի - ցեղային ներկարողական ոյժերի յարատեւ լարումի եւ բնօրէն ամբողջական հայրենիքի:

Աշխարհագրօրէն ամբողջական որեւէ միջավայրի սահմանները ճշդորոշող հիմնական գործօններն են - երկրաբանական կազմը, լեռնա եւ ջրագրական դրութիւնը, կլիմայական, կենդանական եւ բուսական առանձնայատկութիւնները:

Հայկական Բարձրաւանդակն իր սեպօրէն իջնող կողերով, իր արտակարգօրէն ցնցուած եւ քաոսային երկրաբանական խաւերով, խստօրէն կտրտուած եւ բարձրակարկառ լեռնագօտիներով, մերթ հանգուցաւոր, մերթ միազանգ հրաբխային վիթխարի կոներով, բացառապէս հրաբխային ծագման լճային ցանցով, իր բարձրաւանդակային գետերի անմիապաղաղ - առաւելապէս կատաղընթաց - հոսանքով, աստիճանաբար դէպի արեւելք կամ արեւմուտք խոնարհւող ներքին հովիտներով, դէպի հիւսիս կամ հարաւ երկարող կիրճերով եւ եզերական դաշտերով, իր կլիմայական հակադրութիւններով եւ խայտաբղէտ բուսականութեան (յատկապէս ալպեան) փարթամութեամբ ներկայացնում է բնական բազմազանութեանց իւրայատուկ մի ներդաշնակութիւն:

Հայաստանի բնական սահմանները հասնում են մինչեւ այնտեղ, ուր այս բնորոշիչ ներդաշնակութիւնն աչքի է զարկում:

Կան դժւարութիւններ եւ դրանք ծագում են այն տեղերը, ուր այս ներդաշնակութիւնը պայմանաւորող բնագծերը կամ աղօտւում են կամ խառնւում շրջակայ երկիրների բնութեան երանգներին:

Այդ դժւարութիւնները շեշտւում են յատկապէս արեւելքում եւ արեւմուտքում եւ առաջին հերթին պայմանաւորւում են ջրային որոշ երակների ընթացքով: Որեւէ բարձրաւանդակի բնական սահմաններն ամենահատու

կերպով որոշում են լեռնաշղթաները եւ գետերը: Նշանակալից է, որ մեր երկրի բարձրագոյն սարահարթը եւ գլխաւոր ջրամբարը տեղագրօրէն նոյնանում են Բարձր-Հայքում:

Սակայն, այստեղից բղխող Եփրատն ու Արաքսը հակահոս իրենց ընթացքով Բարձրաւանդակի ներքին մարզում պառակտիչ դեր են խաղում, իսկ դրսից՝ լրիւ կերպով չեն եզրաւորում նրա սահմանները: Աւելի ապերախտ դեր է խաղում նոյն ջրամբարից բղխող Ճորոխը, որ Սպերի մօտից ատիճանաբար դէպի հիւսիս հակւելով՝ ի վերջոյ բռնում է շեշտւած հիւսիսընթաց ուղղութիւն եւ դուրս գալիս բարձրաւանդակից, զլանալով Հայաստանին բնական ելք եւ սահմանագծում՝ Սեւ ծովի վրայ: Շփոթ է ստեղծում ե՛ւ Կուրը, որի աղբիւրները նոյնպէս կապ ունեն Բարձր-Հայքի մեծ ջրամբարին հետ: Հայկական մեծ գետերին յատուկ արեւելեան կամ արեւմտեան ընթացքից շուտ խոտորելով՝ Կուրը շտապում է հակւել դէպի հիւսիս եւ Ջաւախքը Հայաստանի ու Վրաստանի միջեւ վիճելի դարձնելով՝ ստանում է զուտ վրացական գետի բնոյթ, ապա թեքւելով դէպի հարաւ՝ Խրամն ընդունելու կէտից բռնում է ուղղորոշ արեւելեան ընթացք եւ սկսում բնօրէն սահմանագծել Հայկական Բարձրաւանդակի հիւսիսը:

Ուղղընթաց են Հարաւային Հայաստանի (Տաւրոսի) ջրամբարից սնւող գետերը (Արեւմտեան եւ Արեւելեան Տիգրիսներ): Դրանք էլ, սակայն, լրիւ սահմանագծում չեն ընծայում: Արեւմտ. Տիգրիսը, որ կրում է նաեւ «Արղնի ջուր» անունը, վերին հոսանքում բռնում է հարաւահակ ուղղութիւն եւ երկրի բնական սահմանագծման նպաստելու փոխարէն՝ ներքուստ պառակտում է նրա բնութիւնը: Տիգրանակերտի հարաւից միայն նա ստանում է արեւելեան ուղղութիւն եւ համեմատաբար յաջող կերպով դառնում եզերական գետ, չնայած որ բարձրաւանդակի բնութեան գծերը թափանցում են նրա աջ ափից այն կողմը: Դրա հանդէպ՝ Արեւլ. Տիգրիսը (Ջերմ, Բոհդան) վայրագ իր ընթացքով եւ ահռելի կիրճերով պարզապէս կտրում է Հայաստանի բնութեան պատկանող Կորդուաց լեռնաշխարհը եւ դիւրութիւն ընծայում Զաբին եւ սրա օժանդակներին՝ այդ լեռնավայրը կապել Ասորեստանին կամ վիճելի դարձնել Հայաստանի եւ Միջագետքի միջեւ: Հետաքրքրական է, որ Արեւլ. Տիգրիսին Քսենոփոնը տալիս է «Կենտրիտէս» անունը, որ ըստ Մարքւարտի, ծագում է հայերէն «կտրիչ» բառից եւ համապատասխանում է այս գետի Հայաստանն ազգագրօրէն «կարդուխ»ների, որով՝ քիւրտերի աշխարհից կտրող, բաժանող դերին:

Շա՛տ աւելի բարդ է Կապուտան լճի եւ սրա աւազանի պարագան: Մինչ այս լիճը իր երկրաբանական ծագումով պատկանում է Հայաստանին, նրա աւազանի այլեւայլ մասերում, ինչպէս Աջի գետի հովիտում, յաճախ իրա-

նական բնութեան գծերը շա՛տ աւելի ազդու են: Միւս կողմից նշանակալից է, որ Կապուտանի աւազանի եւ իրանական Ամարդոս գետի (Կըզըլ-Ուզուն) ջրբաժան գոտին կազմող Սոհուն եւ Վազբուշ լեռնաշղթաները միայն բնօրէն յարմար կերպով սահմանագծում են Հայկական Բարձրաւանդակն ընդդէմ Իրանի:

Միւս կողմից իրանական Զագրոսն է իր ցռուկը խրում Կապուտանի եւ Հայկ. Տաւրոսի միջեւ, իսկ իրանական հիւսիսային գօտու բազուկները Գիլան-Մազանդարանից երկարելով՝ ձգտում են հարաւից հիւսիս կտրել արեւելեան Ատրպատականը եւ հասնել Արաքսի աւազանը: Հենց այս իրողութիւններն են պատճառը, որ Հայկական Բարձրաւանդակի եւ Իրանական սարահարթի սահմանագծումը ա՛յնքան դժուարանում է: Իրականում Ատրպատականը այն մարզն է, ուր Հայկական Բարձրաւանդակի եւ Իրանի բնագծերը զիրար խաչաձեւելով, չեզոքացնում են, եւ իբր փոխանցման գօտի ծառայող այս երկրին՝ ինքնուրոյնութեան քմահաճոյք պատճառում, որքան էլ նրա խարիսխը կազմող լեռնագօտիներից երկուսը - հարաւից հիւսիս երկարողները - Իրանական սարահարթի երկու պատերի շարունակութիւնն են, իսկ արեւմուտքից արեւելք տարածւող շղթաները՝ հայկական լեռների մասերը:

Ինչպէս տեսնւում է, ջրագրական իրականութեանց պատճառած դժուարութիւններին միանում են՝ լեռնագրականները: Եթէ Ատրպատականում իրանական լեռնագօտու հիւսիսային պատը Հայկ. Կովկասին է զարկւում, հարաւայինը՝ Հայկ. Տաւրոսին, ապա Ճորոխի ստորին հոսանքի եւ Կուրի ակունքների մարզերում էլ իրար են խառնւում Հայկ Կովկասի, Մեծրանցի, Պոնտեան լեռների եւ Ռիոնի հովիտները հարաւից եզերող շղթաների բազուկները, որոնք որքան էլ երկրաբանօրէն Հայկ. Բարձրաւանդակին խորթ չեն, կլիմայական եւ բուսական առանձնայատկութիւններով, սակայն, տարբերւում են նրանից: Նոյնանման դժուարութիւններ կան նաեւ Եփրատի Փինկեանի ծունկից մինչեւ Ճորոխի շրջանը, ուր Եփրատի եւ փոքր-ասիական Գայլ գետի (Լիկոս) ջրբաժան գօտիները կազմող, Ճորոխի մարզը Պոնտոսից բաժանող եւ Անտիտաւրոսի, Պոնտեան ու Բարձր-Հայքի լեռներին պատկանող շղթաներն մոլեգնօրէն խաչաձեւում են իրար: Վերջապէս շփոթ կայ Տաւրոսը պատռող Եփրատի եւ Արեւել. Տիգրիսի աւազանի հարաւ-արեւմտեան մասը կազմող մարզի միջեւ, ուր Հայկ. Տաւրոսի հուժկու բազուկները Միջագետքի դռների մօտ՝ տեղի են տալիս լեռնաբլուրների:

Շփոթաստեղծ դեր են խաղում ե՛ւ կիրճերը-բարձրաւանդակի ներքին հովիտների եւ եզերական հարթաշխարհների բնական դռները: Եթէ մի կողմից մեծ գետերը բարձրաւանդակի բնութեան գծերը տանում են դէպի շր-

ջակայ աշխարհները, վերջիններն էլ իրենց նկարագրի որոշ յատկութիւնները հոսանքների հուները կազմող կիրճերի հետ, մխրճում են դէպի երկրի ներքին հովիտները:
Տիգրիսի օժանդակների հետ Միջագետքը իրեն յիշեցնել է տալիս մինչեւ Բաղէշի կոնքը եւ անգամ զգալի դառնում Տարօնի դրան մօտ, Գրգուռի ստորոտը: Տիգրանակերտի դաշտում աւելի ցայտուն կերպով աչքի են զարկում միջագետեան որոշ գծեր, որոնք նոյնիսկ յամառում են մօտենալ Արածանու հովիտներին: Արաքսի ատրպատականեան օժանդակների շնորհիւ, իրանական բնութեան մէկ քանի երանգները թափանցում են մինչեւ Արարատի ստորոտը: Բնորոշիչ է մանաւանդ բարձրաւանդակի կենտրոնական հովիտը, այնքան հետաքրքրօրէն Հայաստանի բնութեան երկու ամենայիշատակելի հրաբխային զանգւածների-Մասիս եւ Արագած-միջեւ ընդլայնւած Արարատեան դաշտը, ուր Արաքսի ակունք Բարձր-Հայքի սարաւանդային եւ նոյն գետի ստորին հոսանքը կազմող Մուխանքի դաշտային-անապատային բնութեան գծերը իրար են խառնւում: Աւելորդ է յիշել Կապուտանի աւազանի մասին, ուր հայաստանեան եւ իրանական բնութեանց ազդեցութիւնները, գրեթէ, հաւասարազօր են: Վերջապէս, Կուրի եւ Ճորոխի օժանդակների միջոցով Կովկասի եւ Պոնտոսի անտառային բնութիւնն աւելի քան տպաւորիչ կերպով աչքի է ընկնում Հիւս. Հայաստանի այլեւայլ մասերում, յատկապէս Լոռիում եւ Մեծրանց լեռներում:
Որքան էլ այս իրականութեանց մանրամասնութիւնները խանգարում են բարձրաւանդակի բնօրէն հատու սահմանագծմանը (եւ հենց այդ իրականութիւններն են մեր պատմա-քաղաքական ճակատագրի բնական-առարկայական պատճառները), այնուամենայնիւ, պակաս նշանակալից չեն այն առանձնայատկութիւնները, որոնց շնորհիւ մեր երկիրը իր ինքնուրոյն կերպարանքով զատորոշւում է շրջակայ աշխարհներից: Ծանօթանա՛նք դրանցից մի քանիսին.
Ա) Հայաստանն արտաքուստ կենտրոնացեալ մի բարձրաւանդակ է, սեպօրէն իջնող պատերով, որոնք հսկայ տանիքների պէս կարկառւում են հարաւից Միջագետեան հարթաշխարհի, հիւսիսից՝ Ռիոն-Կուրի հովիտների դէմ: Իր բարձր դիրքը Հայաստանը շեշտում է նաեւ արեւմուտքում՝ փոքր-ասիական, արեւելքում՝ Իրանական Սարահարթերի նկատմամբ: Ըստ այսմ՝ Հայկական Բարձրաւանդակի սահմանները հասնում են մինչեւ ա՛յն կէտերը, ուր այս ցցւածքը նկատելի է:
Բ) Արտաքուստ կենտրոնացեալ թւացող մեր բարձրաւանդակի լեռները ներքուստ բաժանւում են արեւելքից արեւմուտք երկարող չորս գօտիների, որոնք կազմում են Հայաստանի բնութեան ողնաշարը: Հայաստանը,

անառարկելիօրէն, տարածւում է մինչեւ ա՛յն բոլոր կէտերը, ուր հասնում են այս գօտիների բազուկները:

Գ) Երկրի լեռնագրական իրականութիւնների պարտադրանքով Հայկ. Բարձրաւանդակի մայր ջրերակները հոսում են ընդհանրապէս արեւելքից արեւմուտք կամ արեւմուտքից արեւելք: Բոլոր այն վայրերը, ուր մեծ գետերը պահում են այս ուղղութիւնները, անառարկելիօրէն պատկանում են Հայաստանին, իսկ ուր նրանք ստանում են հիւսիսային կամ հարաւային ընթացք, այնտեղ վերջանում է Հայաստանը:

Դ) Դարձեալ, այս մայր գետերի բարձրաւանդակային օժանդակները հոսում են ընդհանրապէս հիւսիսից հարաւ կամ հարաւից հիւսիս: Բոլոր այն դէպքերում, երբ սրանք խոտորւում են այս ընթացքից եւ բարձրաւանդակից իջնելով նաեւ դաշտային ջրերակների բնոյթ ստանում, իրենց այս վերջին հուներում Հայաստանի բնութիւնը դարձնում են կասկածելի լինելու աստիճան աղօտ:

Ե) Գետերը եւ ո՛չ մէկ դէպքում բարձրաւանդակին հարազատ արեւելահակ եւ արեւմտահակ հոսանքով չեն ուղղւում դէպի իրենց աւազանները, որով եւ Հայաստանը չեն առաջնորդում դէպի ծով: Անգամ Արաքսը, որ իր միջին հոսանքում նախ հարաւահակ եւ ապա հիւսիսահակ ընթացքով մի աղեղ է քաշում Հայկական Կովկասի շուրջը, ի վերջոյ անցնում է այնպիսի մի մարզով, որ իր անապատային բնութեամբ, մակերեսի խոնարհութեամբ եւ կլիմայով հակադրութեան մէջ լինելով բարձրաւանդակի հետ, փաստօրէն խանգարում է Հայաստանի բնական ելքը Կասպից ծովի վրայ: Միւս կողմից, Պարխարի հուժկու կողերն իրենց դէմ մաքառող Ճորոխին Հայաստանից դուրս վանելուց յետոյ միայն, կարելիութիւն են տալիս՝ նետուել Սեւ ծովի գիրկը: Իսկ Հայաստանի բնութեան ամենահարազատ գետ Արածանու ահագին ջրով ուռճացող Եփրատի՝ Տաւրոսը պատռելու եւ Միջերկրական թափելու բոլոր փորձերը, իրենց աhռելի կատաղութեան մէջ մնում են ապարդիւն: Իջնելով Միջագետք՝ Եփրատն իրեն վիճակւում է անապատային տխուր գետի, իսկ Հայաստանին՝ անծով աշխարհի ճակատագիրը: Հայկական Բարձրաւանդակը, էապէս, բնական ելք չունի դէպի ծովերը եւ հայերը՝ կարծես մխիթարուելու համար, երկրի մի շարք լճերին տուել են «ծով» տիտղոսը:

* * *

Աւեց, որ Հայկական Բարձրաւանդակի բնական սահմանները հասնում են մինչեւ այնտեղերը, ուր դեռ աչքի է զարկում լեռնա-ջրագրական ա-

ռանձնայատկութիւնների ներդաշնակութիւնը:
Ըստ այսմ՝ մեր երկրի սահմաններն են.
Արեւելքից՝ Արաքսի աղեղը եւ Արաքսի ու Կապուտանի ջրբաժան գծերը (եւ միայն յարաբերականօրէն՝ Կասպից ծովը եւ Կապուտան-Ամարդոսի ջրաբաշխ գօտին):
Հարաւից՝ Տիգրիսի, Զաբի եւ Խապուրի ջրաբաշխական գծերը (եւ միայն յարաբերականօրէն՝ Զաբի աւազանը):
Արեւմուտքից՝ Եփրատը՝ Տաւրոսից դուրս գալու կէտից մինչեւ Պինգանի ծունկը եւ այստեղից՝ Եփրատ, Ալիս, Գայլ եւ Ճորոխ գետերի ջրաբաշխական աղեղնագիծը (եւ միայն յարաբերականօրէն՝ Եփրատի Պիւռամոսի ջրբաժան գիծը):
Հիւսիսից՝ Ճորոխի, Ռիոնի եւ Կուրի ջրբաժան մարզը, Խրամ գետը եւ սրա Կուրին միանալու կէտից, այս վերջին գետը:
Հայկական Բարձրաւանդակը, լայնագոյն իմաստով, այսինքն՝ յարաբերականօրէն իրեն պատկանող մարզերով, ունի շուրջ 380,000 քռ. քլմ. տարածութիւն:
Բուն բարձրաւանդակը, այսինքն՝ այն երկիրը, որ յաւելւածական մասերի կտրումով կրկին կը պահէ բնական իր ամբողջականութիւնը, տարածւում է Տաւրոսը կտրող Եփրատի, Հայկ. Կովկասն աղեղող Արաքսի, Ճորոխի, Զաբի, Կապուտանի աւազանի, Կուրի եւ զոյգ Տիգրիսների միջեւ:
Սա է հայոց բնօրէն անհատանելի եւ յաւիտենական Հայրենիքը, լեռնագրօրէն համախմբւած Արարատ կենտրոնական բաւիղի, ջրագրօրէն՝ սրա բազուկները հանդիսացող գօտիների աղբիւրների (առաւելապէս Բարձր-Հայքի ջրամբարի) շուրջը:

*«Տարօնի Արծիւ», 1938 թ., թիվ 3 - 4*

# ՀԱՅԵՐԸ ԵՒ ԻՐԵՆՑ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԸ

*Հայերը չկարողացան ազգագրօրէն միացեալ մի ամբողջականութիւն ստեղծել իրենց բարձրաւանդակում: Արտաշէս Ա.ի եւ Տիգրան Մեծի հայացման քաղաքականութիւնը համաբարձրաւանդակային չափանիշով թերի մնաց: Իրանական վաչկատուն ցեղերն աստիճանաբար նստակեաց դարձան յատկապէս երկրի հարաւ-արեւելեան շրջաններում: Որքան էլ հայ պատմագիրները մինչեւ Թովմաս Մեծոփեցի (ԺԴ.-ԺԵ.դար) Հայաստանի սահմաններում չեն ուզում քիւրտերի գոյութեան մասին յիշատակութիւն անել, այնուամենայնիւ աշխարհագրական մի շարք անուններ (ո՛չ միայն Կորդուք, այլեւ Մարակերտ, Մարդաղի, Վրնջունիք, Խոչակունիք, Մարաթուկ եւն., եւն.) վկայում են, որ նրանք մեր երկրում ապրելիս են եղել՝ իսլամից առաջ: Ղարծեալ Խորենացու «Վիշապազունք»ը ենթադրել է տալիս, որ հնուց ի վեր Մասիսը բնակւելիս է եղել քիւրտերով, իսկ արաբական պատմագրութիւնը, Հաբիբ Մասլամայի դէպի Արտաշատ կատարած արշաւանքի առիթով, Արարատեան դաշտում մատնանշում է մի «Նահր էլ - Աքրատ», որ նշանակում է «Քիւրտերի գետ»:*

*Երկրի ներսում, ինչպէս Աղձնեաց Սասուն լեռնավայրում եւ եզերական նահանգներից Տայքի, Ուտեաց, Փայտակարանի եւ Արցախի այլեւայլ մասերում խալդ-ուրարտական-ալանական ցեղերի հայացման առաջընթացը մինչեւ Թ. դարը դեռեւս չէր յանգել կատարեալ ձուլման: Բնորոշ է, որ այս նորադարձ «հայերի» որոշ զանգւածները Փայտակարանում, Ուտեաց եւ Արցախի դաշտային մասերում, ԺԱ. դարից սկսած՝ կամաց-կամաց ձուլեցին թաթարներին եւ դարձան շաղախ կովկասեան Ատրպատականի թաթարական ազգութեան: Տայքի բնակիչների մի մասը իսլամանալով մերւեց աջարացիներին եւ լազերին, իսկ Բարձր-Հայքին մերձակայ վայրերում (յատկապէս Սպեր, Խոտրջուր, Թորթում) բնակւող հատւածը օսմանեան տիրապետութիւնից յետոյ, ուղղակի թուրքացաւ: Նոյն ճակատագրից զերծ չմնաց անգամ Սասունը, ուր խալդական ծագում ունեցող մի շարք ցեղախմբեր նետւելով իսլամի գիրկը՝ միացան քրտական ազգային օրգանիզմին: Աւելորդ է խօսել Չորրորդ Հայքի Փոքր-Ծոփք (Դերսիմ) գաւառի «արմենօիդ» ցեղին պատկանող ղզլբաշների մասին:*

*Այս հայաստանականորձան աղէտը սրւեց յատկապէս իսլամի ներխուժումով, եւ սրանով առանձին թափ ստացած հայկական արտագաղթերով:*

*Հայկական արտագաղթը նախ սկսւեց Արշակունիների անկումից յետոյ՝ դէպի Յունական Հայաստան: Նա զանգւածային բնոյթ ստացաւ Է. դարից,*

*երբ Սամիկոնեաններին վերջին փորձը՝ համահայկական շարժումով կասեցնել արաբական առաջխաղացութիւնը՝ լայն արձագանգ չգտաւ նախարարների մօտ եւ Տարօնի դրան առջեւ յուսահատ մաքառումի մեջ ընկաւ Սամիկոնեան վերջին սպարապետը: Հայկական արտագաղթի ալիքներն ողողեցին Փոքր-Հայքը, Կապադովկիան, «արմենական թեմ»ի մարզը, Բիւզանդիոնը եւ կայսրութեան բոլոր մասերը՝ Թրակիայից մինչեւ իտալական թերակղզի եւ մինչեւ Հիւս. Ափրիկէ: Բայց Հայաստանի համար առանձնապէս ճակատագրական եղաւ ԺԱ. դարը, երբ կործանւեց Բագրատունեաց հարստութիւնը եւ հայոց քաղաքական դրօշը տեղափոխւեց Կիլիկիա: Այդ օրից Հայկական Բարձրաւանդակը իր որդիների համար դարձաւ դժոխք - մէկ կողմից հայոց արտագաղթի նորանոր ալիքներ, միւս կողմից՝ անկաշկանդ ներխուժում թաթարների - որոնք բռնեցին երկրի հիւսիս-արեւելեան եզերական դաշտերը եւ քիւրտերի, որոնք հարաւից առաջխաղալով նւաճեցին Բարձրաւանդակի լեռնագօտիները եւ կոները: Քիւրտ-թաթարական բռնագրաւումները քաղաքական մասնաւոր սիստեմ դարձան պարսկա-օսմանեան պատերազմների շրջանում. երբ թուրքերը պարսիկների ցեղակից սիւննի քիւրտերն էին զետեղում Հայաստանում, իսկ պարսիկները՝ թուրքերի ցեղակից շիա թաթարները: Սրանց վրայ, յատկապէս Բարձրաւանդակի արեւմտեան մասում աւելացան ե՛ւ օսմ. թուրքերը: Երբ սկսւեց հայ յեղափոխութիւնը, Հայկ. Բարձրաւանդակն արդէն բնօրէն վիճելի դարձած էր ո՛չ միայն քրիստոնէութեան եւ իսլամի, այլեւ հայերի, քիւրտերի եւ թուրք-թաթարների միջեւ: Քսաներորդ դարում հայերն ապրեցին իրենց պատմութեան ամենաահաւոր մարտիրոսագրութիւնը: Հայաստանի մեծագոյն մասում ջախջախւեց քրիստոնէութիւնը, որից յետոյ ժամանակի ոգին կշիռ տւեց ազգային-ցեղային գործօնին: Շիա թաթարները սկսեցին հոգեպէս բաժանւել պարսիկներից եւ կապւել թուրքերին, սիւննի քիւրտերը հակւեցին հայերին եւ պարսիկներին: Հայկական Բարձրաւանդակի պայքարը այսօր ստանում է նոր բնոյթ: Իրերի զարգացումով, կրօնների մոլեգին բախումը տեղի է տալիս ցեղերի լինել-չլինելու պայքարին:*

*ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*

Մի՞թէ Հայկական Բարձրաւանդակն ու հայ ցեղը արժանի էին այս ճակատագրին: Մի՞թէ այդ առաջընթացն անխուսափելի էր:

Այո՛, ասում է ցեղօրէն ան- «ես» մարդը, իրապաշտը, քաղաքաբանողը, նւաստը, խեւլօքը:

Չկայ աւելի վնասակար յիմարաբանութիւն, քան «իրապաշտական» կոչւած կիսամտածումը: Իրապաշտը նա է, ով չգիտէ անցեալը տառապելով ապրել, ով գտնւում է ներկայի կոպիտ փաստերի ազդեցութեան տակ, ով չգիտէ կռահել եւ տեսանել ապագան: Ով ժամանակի մի մասով է ապրում՝ նա յաւիտենականութեան տիպ չէ, նա ամբողջական էակ չէ, նա մարդա-բեկոր է, հոգեւոր թզուկ: Հայաստանի կործանման բուն պատճառներից մէկը հանդիսացաւ հայ ժողովրդի մէկ մասի կոպիտ ներկայապաշտութիւնը, «ռէալիզմը»: Դեռ այսօր էլ շատ հայեր հպարտանում են իրենց մտքի այդ տխուր առաքինութեամբ: Ես «ռէալիստ» եմ եւ գտնում եմ, որ Հայաստանը այլ ճակատագիր չէր կարող ունենալ, որ գաղութում բացի մեր ազգային մշակոյթը եւ համրանքը պահելուց այլ բան չենք կարող անել, որ առանց մեծ մի ոյժի աջակցութեան Հայաստանի վերանւաճման մասին խօսք լինել եւն., եւն: Այսպէս է դատում «ռէալիստ»ը, առանց մտածելու, ո՛չ Հայաստանը կարող էր այլ ճակատագիր ունենալ, որ գաղութներում ո՛չ մէկ ազգային մշակոյթ կարող է զարգանալ եւ ո՛չ մէկ համրանք պահւել, որ առանց ռազմաքաղաքական ոյժ ներկայացնելու՝ ո՛չ մէկ պետութիւն կարող է մեզնով հետաքրքրւել: Հայկական «ռէալիզմ»ը միշտ էլ եղել է եւ է՛ մեր ժողովուրդի տկարութեան պոչը, որ միշտ էլ քամւել է օտարից եւ արիւնոտւել. նա մի՛շտ էլ հոգեւոր մուր է ցանել մեր կեանքի վրայ եւ ստւերոտել մեր պատմութիւնը: Հայոց ողբերգութիւնը պայմանաւորւում է այս ազգի մանր, միայն առօրեայի իմաստով գործնական խելքով: Դարեր անընդհատ հայը ճարտարօրէն հաց հանեց իր բարձրաւանդակից եւ կշտացրեց իր ոսոխներին, մի վայրկեանով վտանգից խուսափելու համար՝ նա վար իջաւ իր լեռներից եւ երկրի ռազմագիտական կէտերը յանձնեց քիւրտերին, մի վայրկեանով աւելի հանգիստ ապրելու համար՝ նա բռնեց արտագաղթի ճամբան:

Ինչո՞ւ այսպէս եղաւ:

Հայը երկու բան չըմբռնեց - իր բարձրաւանդակի արժէքն ու խորհուրդը եւ Մամիկոնեաններին ցեղային կանչը:

Հայկական Բարձրաւանդակը - իրօք դա ճանապա՞րհ է, ասպատակող ցեղերի կարաւանների ուղի՞, ինչպես կրկնում ու թոթովում է պարտւողական հայը, «ռէալիստ»ը: Ո՛չ, հազար անգամ ո՛չ: Դա՝ նախ եւ առաջ բնական վիթխարի մի բերդ է եւ անառիկ բերդ: Օժտւած հսկայակարկառ լեռնապատերով եւ բազմաթիւ վսեմատիպ կոներով՝ աշխարհը կարող էր զարկւել նրան եւ փշրւել. եթէ ցեղի ոգին խօսէր այդ տիտանական բարձունքներից: Գէոսոֆիական բարձր մի ճշմարտութիւն է, թէ աշխարհագրօրէն ամբողջական մարզերը ներկայացնում են բնական մի անհատականութիւն: Բնական

անհատականութեամբ օժտուած երկրներում կենսաբանօրէն առողջ մի ցեղ կարող է քաղաքական ուրոյն նկարագիր ստեղծել, որ ասել է՝ ո՛չ միայն ինքնապաշտպանուել, այլեւ՝ աշխարհակալել: Հայկական Բարձրաւանդակը բնական մի անհատականութիւն է, ինչպիսիք են՝ օրինակ Իրանը, Կենտրոնական Ռուսաստանը, Բրիտանական Կղզիները եւն.: Իւրաքանչիւր բնական անհատականութիւն ունի իր բնաբեւեռը եւ իր բնակորիզը: Եթէ այս կորիզը ազգագրօրէն ամբողջական է եւ տուեալ ազգը կենսահոգեբանօրէն առողջ՝ նրա քաղաքական ոյժի ծաւալումը դառնում է անխուսափելի. ազգօրէն առողջ օրգանիզմները մի՛շտ էլ ծաւալւում են: Եթե այդ բնակորիզն ազգագրօրէն խոցւում է եւ տուեալ ազգը ի վերջոյ կործանւում՝ գիտցէք, որ նա կենսաբանօրէն եւ հոգեբանօրէն փտախտաւոր մի ընկերութիւն է եղել, ընկերային մի հաւաքոյթ միայն եւ ո՛չ թէ ցեղակամ եւ առողջ մի օրգանիզմ. ազգօրէն հիւանդոտ օրգանիզմները մի՛շտ էլ կծկւում են:

Այո՛, ահագին առաւելութիւնների հետ, Հայաստանի բնութիւնն ունի մի քանի թերութիւններ. օրինակ իր գետային կենտրոնախոյս սիստեմը, իր լեռնագօտիների ներանջատական մոլուցքը, իր եզերական կիրճերը: Հակահոս գետերը միշտ էլ առաջ են բերում տնտեսական եւ քաղաքական պառակտում: Օրինակ, Գերմանիոյ եւ Աւստրիոյ անջատումը պայմանաւորւում է Հռենոս-Էլբա-Օդեր-Ճպրէի (միով բանիւ հիւսիս-արեւմտընթաց ջրերակների) եւ Դանուբի (հարաւ-արեւելընթաց) հակահոս ընթացքով: Բայց ցեղերի հանճարը նրանում չէ, որ նրանք յարմարուեն միջավայրի բնական պայմաններին, այլ որ այս պայմանները պատշաճեցնեն իրենց գոյութեան:

Հայութեան ցեղօրէն արթուն տարրի մէջ պատմական ամբողջ անցեալում նկատելի է պատշաճեցման այս ճիգը: Արաքսն ու Արածանին հակահոս են, բայց Այրարատն ու Տարօնը չշեղուեցին համահայկական ուխտից- եւ հայոց պատմութեան միակ փայլուն գիծը Տարօնի հայրենանուէր զինակցութիւնն է Այրարատին: եւ այսքանը միայն: Ինչո՞ւ նոյն ոգին չիշխեց բովանդակ բարձրաւանդակում: Ինչո՞ւ հայը չկարողացաւ յաղթահարել իր գետերի քմահաճոյքը, իր երկրի ներ անջատական բնութիւնը:

Պատճա՞ռը.

Հայը չհասկցաւ Մամիկոնեանների ցեղային կանչը: Նա ապրեց աւելի իբր ժողովուրդ, քան թէ իբր ցեղ:

Առաջին հայ անունը, որ յիշւում է Դարեհի արձանագրութեան մէջ, դա Դատարսէսն է, «Դարեհի ծառան», այսօրւայ ըմբռնումով՝ «ռէալիստ» հայը:

Դուեր Տիգրան Մեծի շուրջը - դաւաճանից եւ թիկունքից, որդիներից եւ ազգականներից:

Արշակունիները չկարողացան ազատել, Փաւստոսի որակումով՝ «շնաբերան» Փիսակներից, Հայր Մարդպետներից, Մերուժաններից:
Եղիշէի ասելով՝ իդէալիստ Մամիկոնեանների հետ Հայրենիքի համար ոտքի ելած «ուխտապահ» բանակի թիւը 66 հազար էր միայն, մինչ ռէալիստ հայերը 60 հազարով խախտեցին ազգային ուխտը:
Մամիկոնեանների վերջին օրհասական կանչին արաբների դէմ՝ փոխանակ 180 հազար հայերի՝ արձագանքեցին միայն 18 հազար:
Եւ վերջապէս մօտաւոր անցեալում ծրագով չէի՞ն փնտրում հայդուկները եւ ամեն քայլափոխում չէի՞ն հանդիպում ռէալիստը, կրաւորականը, անտարբերը, ծաղրածուն, ողբերգուն, սարսափահարը, շահամոլը, խորամանկը, վախկոտը, հաշւետեսը եւ դաւաճանը:
Այսօ՞ր. այսօր սակա՞ւ են նրանք, որոնք ո՛չ միայն ցեղի կանչից են սարսափում, այլեւ «ցեղ» բառից:
Մարդն իր համար ճակատագրական մի անասուն է, կենդանական մի անցում, եւ նրա գոյութիւնը արժէք է ստանում միմիայն աստւածայինի հետ հաղորդակից դառնալու տենչով:
Մենք չենք ճանաչում այլ կերպ եւ կամուրջ մարդու եւ Աստծու միջեւ, քան ցեղը:
Ցեղը՝ դա ո՛չ միայն Աստուծոյ շունչ է, այլեւ յաւիտենականութեան ուղի:
Կարելի եւ առանց ցեղզգացութեան ապրել, բայց երբե՛ք ստեղծագործել յաւիտենականութեան ճամբին, որով եւ պատմութիւն երկնել:
Հայոց պատմութիւն - դա երկունքն է արմենական ցեղի ոգու:
Հայկական Բարձրաւանդակի ճակատագիր՝ դա հետեւանքն է՝ հայ ժողովրդի հոգեւոր ցեղաքափութեան:
Ի՞նչ ես մտածում տարագի՞ր հա՛յ:
Դեռեւս դու շարունակում ես մնալ կէս-ժողովուրդ, կէս-ազգ, կէս-ընկերվարական, կէս-աշխարհաքաղաքացի փերեզակ:
Դեռեւս դու կէս-«ես» ես, կէս-մարդ, կէս-բարի եւ կէս-չար:
Դու անկայուն ես, քմահաճ եւ փխրուն. դու դեգերում ես քեզնից դուրս, դու կորցրել ես ինքդ քեզ:
Ի՞նչ ասաց մարդկային հանճարը.
Գէոթէն ասաց.
«Կազդուրում դու ձեռք չես բերի, եթէ նա չի բխում սեփական հոգուց»:
Ջննե՞լ ես հոգուդ խորին անդունդները, տեսնելու թէ ի՞նչ կազդուրիչ ոյժեր կան՝ այնտեղ քնած:
Գիտե՞ս ի՞նչ բան է ցեղը - ոգուդ այդ ովկիանը անծանօթ:
Մի օր խռովե՞լ ես այդ ովկիանը, նայե՞լ ես երկնքին եւ գոյութեանդ ամ-

բողջ ոյժով զարկե՞լ ես հոգուդ կայծքարը:

Լսե՞լ ես Մամիկոնեաններդի կանչը, դարձե՞լ ես զայրոյթի աղաղակ.

«Արթնացի՛ր, Հայաստա՛ն»:

Երբ հովիւն է քնած՝ գայլը կը գրաւի փարախը:

Ցեղը քնած մնաց եւ Հայկ. Բարձրաւանդակը դարձաւ թշնամու տուն:

«Արթնացի՛ր, Հայաստա՛ն»: Գիտե՞ս ինչպէ՞ս է արթնանում խայթւած հպարտութիւնը, ինչպէ՞ս յանկարծօրէն մոխիրի տակից բորբոքւում է կրակը:

Կորա՞ծ է այլեւս Հայկական դատը. աշխարհը կարող է ասել, այո՛:

Բայց մենք կ'ասենք - Հա՛յ, տո՛ւր ցեղօրէն արթնացած մի սերունդ, զարկող ու զարկելով ստեղծագործող մի սերունդ եւ պատմութիւնը քեզ պիտի վերադարձնի քո երկիրը:

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936 թ., թիվ 2*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԻ ՊԱՅՔԱՐԸ

Հայկական Բարձրաւանդակի դարաւոր պայքարը մտել է նոր մի փուլի մէջ. խորացել են պատմական կնճիռները, խտացել են դարերի բոլոր զգացումները, բեւեռացել են ցեղերի գոյութեան կռահումները. եռում է կեանքի կաթսան եւ մօտ է ժամը, երբ նա կը պայթի:

Պատմութիւնը յաճախ է երկընտրանքներ հասունացնում. ժամանակի հոլովական զօրոյթը, իրերի տրամաբանութիւնը յաճախ են հարցերը յղկում եւ անհրաժեշտականութեան թափով ու երանգով դնում ազգերի առջեւ՝ «կա՛մ - կա՛մ»:

Ուր սուր հակասութիւններ կան՝ այնտեղ հայ պատմական առաջընթացների յղութիւն, դրութիւնը յեղաշրջելու խռովք: Ուր իրարամերժ նպատակներ կան, իղէալների խաչաձեւում, նաեւ կուտակուած ատելութիւն, արեան հետքեր, նախճիրների յիշողութիւն՝ այնտեղ անխուսափելի է բաղխումը:

Յոգով սպառուածները կարող են մոխիր ցանել իրենց գլխին, յիմարները՝ «խաղաղութիւն» զառանցել, բոլշեւիկները՝ «հայկական հարցը լուծուած» համարել, բայց պատմութիւնն առօրեայ տրամադրութիւններից տարբերւում է նրանով, որ նա քայլում է դարերի գծով:

Արի-արմենականների եւ մոնգոլ-թուրքերի հակամարտութիւնը - դա հազարամեակների ժառանգութիւն է: Հայկական Բարձրաւանդակի պայքարը - դա դարերի առեղծուած է:

Ի՞նչ է կատարուել մեր օրերին: Մեր օրերին այդ առեղծուածը մօտեցել է լուծումի:

Մի կողմից՝ Միացեալ Հայաստանի երազը, միւս կողմից՝ թուրքերի պաշարած Այրարատը:

Մի կողմից՝ տարագիր հայերի ներգաղթի տենչը, միւս կողմից՝ կիսամայի թուրքաց Հայաստանը:

Մտքի սովորական հակասութիւններ չեն սրանք, այլ՝ գոյութեան: Դատողութեան օրէնքով չեն հասունացել դրանք, այլ՝ էութեան, բնազդների, զգացումների յղութեան ոյժով: Դասակարգերի, կրօնների, տնտեսական շահերի հակամարտութիւն չէ դա, այլ՝ հայրենիքների եւ ցեղերի:

Ի՞նչ է ասում իրերի տրամաբանութիւնը.

Ա. Հայաստանում մէկ քռ. քմ.ի վրայ՝ 40, իսկ Հայաստանի թուրքապատկան նահանգներում՝ միայն 8 մարդ:

Հայկ. Բարձրաւանդակի 84 առ հարիւրը թուրք-թաթարներին եւ միայն 13 առ հարիւրը՝ հայերին:

Կամ այն 8-ը կամ այս 13-ը - երկուսից մէկը պիտի յաղթահարուի:

Ի՞նչ է ասում ոգիների տրամաբանութիւնը.

«Արթնացի՛ր, Հայաստա՛ն»:

Հայ ժողովրդի ողբերգութիւնը նրանում է, որ արեւ է երգում («Արեգակն արդար»), բայց քնամոլ է («Ի ննջման է ծանրութեան»), իդէալիստ է, բայց դրամատենչ, հայրենասէր է, բայց անձնապաշտ, իմացական է, բայց ոչ կռահող, խելք ունի, բայց ո՛չ երեւակայութիւն, սիրում է գիտութիւնը, բայց ծուլանում է նրանից օգտուել, գոռոզ է, բայց յարմարւում է նւաստութեան, քաջ է, բայց խորտակումի զգացում չունի, խիստ է, բայց անկարգապահ, եռանդուն է, բայց ներկային գերի, ոյժի պաշտամունք ունի, բայց ոչ հզօրութեան կամք, կենսաբանական զօրութենականութիւն ունի, բայց ոչ կազմակերպական հակում, մշակութային տենչ ունի, բայց ոչ քաղաքական կորով, արդարամիտ է, բայց ոչ ճշմարտասէր, ցեղ է, բայց գերադասում է ժողովրդի բարոյականը:

Զգացումների շփոթ է հայ ժողովուրդը, շուռ եկած էութիւն:

Իսկ թուրքը - դա հայ ժողովրդի հակապատկերն է՝ կենսաբանական տկարութիւն եւ ոյժի ծարաւ, անհաննար ոգի եւ քաղաքական կամք, անմաքուր սիրտ եւ գրաւիչ լեզու, բութ միտք եւ կարգապահական հակում, վախի զգացում եւ խորտակումի մոլուցք:

Հայը խորքով է արժէքաւոր, թուրքը՝ մակերեսով, նա էութեամբ է բարձր, սա՝ արտայայտութեան ձեւով: Հայը հոյակապ ցեղ է եւ անպիտան ժողովուրդ, թուրքը ստորին ցեղ է եւ սքանչելի ժողովուրդ:

Խանդավառւե՞նք, երբ Հայկական Բարձրաւանդակում հայերը դեռեւս համեմատական մեծամասնութիւն են կազմում:

Ընկճւե՞նք, երբ Անատոլիան թուրքերի համար մարդկային շտեմարան է, երբ թուրք եւ թաթարները հայերից 5-6 անգամ աւելի են, երբ թուրքերը պետութիւն ունեն եւ բանակ:

Առարկայական տուեալներ են սրանք, որոնք կարող են ե՛ւ բախտորոշ դեր խաղալ ե՛ւ մոխիր դառնալով՝ քամուն տրուել:

Ժողովուրդը՝ դա միշտ էլ ներկայապաշտն է, իդէալի եւ մեծագործութեան թշնամին, որ իր հացի հետ օրւայ մանր փաստերն է ծամծմում: Դա անհաւատ «ռէալիստ»ն է, որ չի հասկանում հակասութիւնների ոյժը՝ յեղաշրջուած ոգին յեղաշրջում է փաստերը եւ նրանց դասաւորումը:

Տայքի Շտէ գիւղում, Վահան Մամիկոնեանը 40 զինւորներով ոչնչացրեց թշնամու 4000-նոց գունդը:

Թուրքիայում յաճախ մի քանի կիսասատակ ոստիկաններ հայկական զանգւածները քշեցին դէպի աքսորի զարհուրանքը:

Պատմական գործօնների խառնուրդը մի բան է, որից բւագիտութիւնը ուղիղ եզրակացութիւն հանել չի կարող:

Յաղթում է ո՛չ թէ նա, ո՛վ փաստերի եւ նրանց հետեւանքների մասին է մտածում, այլ նա, ո՛վ գործում է եւ եզրակացութիւնը թողնում պատմութեան:

Թւով սակա՞ւ ենք - բայց ահա՛ գիտութիւնը, որ կրկնապատկում է մարդկային ոյժերը:

Յոգով տկա՞ր ենք - բայց ահա՛ արմենական ցեղը, որ կենսաբանական ոյժի անսպառ աղբիւր է, կորովի շտեմարան:

Մինչեւ այժմ ինչո՞վ յաղթեց մեզ թուրքը. իսլամի, քիւրտի, եւրոպայի հակամարտութեան, գերմանացիների, դաշնակիցների, բոլշեւիկների միջոցով:

Ինչո՞ւ այս բոլորը թուրքին նպաստեցին. որովհետեւ մեր մէջ արմենական ցեղը չտեսան, այլ՝ հայ ժողովուրդը:

Ի՞նչ է հայ ժողովուրդը. դա մի բան է, որին Բերլինի Վեհաժողովում խղճահարութեամբ ծաղրում են եւ դեռեւս տասնեակ տարիներ նրանից քրիստոնէական վշտով լեցուն հառաչագրեր ստանում, որին դարեր անընդհատ խոշտանգում են եւ օսման. սահմանադրութեան օրը՝ մի ժպիտով սիրտը գրաւում, որին անկախութիւն են խոստանում եւ կոտորել տալիս, որին թուրքերի օժանդակութեամբ խորտակում են եւ մոլեռանդ բոլշեւիկ դարձնում, որին Լոզանում ձեռնունայն դուրս են նետում եւ անպատիժ մնում, որին ներգաղթ են խոստանում եւ իր հոգեւոր հայրենիքից, իր ցեղային բարոյականից եւ իդէալներից կտրում:

Եթէ այս ժողովուրդն է, որ իր քաղաքական յիմարութեամբ, իր հոգու աղքատութեամբ, իր կոտրտուած կամքով, իր մանր հաշիւներով, իր հատւածական տրամադրութիւններով, իր եսականութեամբ, իր անկայուն բարոյականով, իր զգացումների խեղճութեամբ, իր սրտի ծուռ բաղձանքներով, վաղւայ օրհասին, կանգնելու է թուրքին առջեւ՝ Յայաստանի կնճիռը հիմակւանից լուծւած համարեցէք. նա յաւիտենական Թուրան է, Թուրանի կամուրջը եւ միջնաբերդը:

Բայց կա՛յ արմենական ցեղը, որ այսօր իր բոլոր դարերի խռովքն է ապրում. յաւիտենական ա՛յն ոյժը, որ այսօր թէ վաղը պիտի վարարի մեր էութիւնը:

Արժէքների ուսմունք չէ դա, այլ՝ ինքնահզօրացման տենչ: Քաղաքական դեգերում չէ դա, այլ՝ ոգու կենտրոնացում: Խնդրանք չէ դա, այլ՝ հրաման: Նահատակութեան քարոզ չէ դա, այլ՝ կենագործումի կամք: Ճակատագրին հնազանդւելու պատգամ չէ դա, այլ՝ պայքարի կարօտ: Նահանջ չէ դա, այլ՝

յարձակում:

Յաւունացել է Յայկ. Բարձրաւանդակի առեղծւածը եւ վերջին, օրհասական կռիւը անխուսափելի է:

Ո՞վ պիտի յաղթանակի: Նա՛, որ իբրեւ ժողովուրդ աւելի՛ ընդունակ է ինքնայաղթահարումի:

Ցեղի կամքից յաղթահարւած ժողովուրդ - դա ո՛չ միայն ոգու անօթ է, այլեւ՝ կենդանի ուժակիր, ո՛չ միայն պատմագործ հանճար է, այլեւ՝ յաղթանակի սուր:

*«Ցեղ եւ Յայրենիք», 1936թ., թիվ 3*

# ՎՏԱՆԳԻ ԳԻԾԸ

*Թուրքերը տիրելով Փոքր-Ասիային, Հելլեսպոնտոսից (Դարդանէլ) անցան Թրակիա, մտան Բալկաններ, խորացան մինչեւ Կենտրոնական Եւրոպայի դռները, առանց ձեռք տալու Վոսփորի շուրջը խցկուած բիւզանդական «կայսրութեան»: Նրանք նոյնիսկ խնամիական-բարեկամական կապեր հաստատեցին բիւզանդական կայսրերի հետ: Գրեթէ մէկ դար (93 տարի) թուրքերն իրենց տիրապետութեան կենտրոնում հանդուրժեցին բիւզանդական կայսրութեան այդ կղզեակը, մի օր էլ (1453 թ.) խորտակելու նրա պարիսպները եւ կայսրերի մայրաքաղաքում սուլթանների գահը հաստատելու:*

*ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*

Եթէ մի բոլշեւիկի հարցնենք, թէ ի՞նչ է կատարւում Խ. Հայաստանում, նա կը պատասխանի՝ չտեսնուած շինարարութիւն:

Իսկ եթէ լուրջ մի պատմագէտի հարցնենք, թէ ի՞նչ է կատարւում Խ. Հայաստանի շուրջը, նա կը պատասխանի՝ այնտեղ քաշւում է դեռին այն պարիսպը, որ մի ժամանակ թուրքերը քաշեցին Բիւզանդիոնի շուրջը:

Այն ժամանակւայ Բիւզանդիոնի սահմաններն էին. արեւելքից՝ Թուրքիա, արեւմուտքից՝ Թուրքիա, հարաւից՝ Թուրքիա, հիւսիսից՝ գրեթէ Վոսպորի լայնութեամբ մի գծով՝ Սեւ ծով: Խ. Հայաստանի սահմաններն են. արեւելքից՝ կովկասեան Թուրքիա (Ազրբէյջան), արեւմուտքից՝ Թուրքիա, հարաւից՝ Թուրքիա եւ թուրք-թաթարական Ատրպատական, հիւսիսից՝ Լոռւայ ձորի լայնութեամբ մի գծով՝ Վրաստան:

Մինչդեռ թուրքերը դարանակալում էին, բիւզանդացիք զբաղուած էին աստուածաբանական վէճերով, եւ օրհասական վայրկեանին Վոսփորից ո՛չ օգնութիւն ստացան, ո՛չ էլ փրկութեան ելք:

Այսօր նոյնանման օղակի մէջ ընկած հայերը վիճում են քաղաքական օրիենտացիաների եւ ընկերային խնդիրների մասին, կրքեր են հրահրում եւ դաւեր նիւթում, առանց մտածելու, որ Լոռւայ ձորի ճամբան կարող է մի օր փակւել:

Այս երեւոյթի բուն պատճառն այն է, որ մենք սիրտը թողած՝ զօռ ենք տալիս խելքին:

Բայց խելք, որի մէջ սիրտ չկայ, կենսաբանօրէն ի սպառ անպէտք է: Դա

մտքի այլասերում է եւ հոգեւոր վայրէջք:

Ամեն բանից աւելի մեզ պէտք է ոգու նոր յղութիւն, ցնցում եւ խռովք:

Հայաստանի առեղծուա՛ծ, հայոց գոյութեան առեղծուա՛ծ - սրանք ցեղի կնճիռներն են եւ ո՛չ թէ այլասերուած մտքի:

Այլասերուած միտքը՝ դա անարիւն ճարպիկութիւնն է, փերեզակների զէնքը, ապահովութեան խաբկանքը:

Ցեղը՝ դա վտանգի կռահումն է, կենսաբանական թափը, յաղթանակի կարօտը:

Յաղթանակ երազել - նշանակում է կանխազգալ վտանգը: Վտանգի գիծը՝ դա յաղթանակի կամուրջն է:

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936թ., թիվ 1*

# ՎՏԱՆԳ ԵՒ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ

Թնդանօթի միս, աննպատակ մահ - սա է վիճակւում անազատ ազգերին, եթէ դրանք ընդունակ չեն, վտանգից առաջ, նպատակ դնել իրենց հաւաքական կեանքին:

Գաղութում՝ ամեն հայ անձնանպատակ է - հոգեախտաւոր, որ պատրանքներով լեցրած իր փչակը համարում է գոյութեան ճակատագիրը:

Մեռնում են նրանք, որոնք իրենց ինքնանպատակ են դարձնում, աստւածացնում. եւ նրանք, որոնք կտրւում են նպատակից, Աստծուց:

«Նպատա՞կ» - «կայ այդ», կ'ասի ձեզ ամեն սոփեստ եւ ցոյց կը տայ մաշւած արժէքների փտած մի տախտակ, որի վրայ իր «ես»ն է գրւած, իր «ես»ի մանր գործը կամ մանր միտքը:

Յանճարները սպանւում են մանր գործերից, ժողովուրդները մեռնում են մանր առաքինութիւններից:

Ոգին է կեանքի խորքը, իսկ ոգու տարողութիւնը չափւում է նպատակի մեծութեամբ, ինչպէս բարոյականը՝ նպատակի իմաստով:

Նպատակի մեծութիւն եւ իմաստ չի ունեցել եւ չունի անցեղ հայը: Նա չունի բարոյական խառնւածք, նրա համար չկայ արժէքների աստիճանաւորում:

Ո՞վ իր անձը, իր մէկ ու կէս հոգիանոց «կազմակերպութիւնը» կը ստորադասի ազգի ճակատագրին:

Ինչո՞ւ է գաղութը նպատակների շփոթարան, արժէքների եւ բարոյականների խառնարան: Որովհետեւ հոգեւոր գաղութը, ամեն բանից առաջ, վտանգի մոռացումի ճիգ է: Ուր այս անկենսաբանական ճիգը կայ, այնտեղ շղթայազերծւում է հոգեւոր անիշխանականութիւնը: Դեռ հասկացողութիւն չկայ ա՛յն մասին, որ վտանգը սարսափի ուրւական, երեւակայութեան բանդագուշանք եւ մտացածին ահազանգում չէ, այլ՝ ընկերային զգացումի առաջին ստեղծիչ ազդակը, կեանքի կենսա-բարոյական դաստիարակը եւ պատմութեան մարզում այնքան անխուսափելի, որքան տեղատարափը՝ ամպումից, երկրաշարժը՝ հրաբխային ժայթքումից յետոյ: Քանի դեռ այս հասկացողութիւնը չկայ - չկայ կենսաբանօրէն նպատակայարմար ինքնապաշտպանութեան գործ:

Ի՞նչ է վտանգը - դա նաե՛ւ ոգու կռահում է: Ի՞նչ է յաղթահարումը - դա նաե՛ւ կռահող ոգու կանխումի ճիգի իմաստութիւն է:

Օրւայ հայ կեանքում կռահում չկայ - կայ միայն ենթադրութիւն. կան-

խումի մտահոգութիւն չկայ - կայ միայն պայմանների հաշւառում:

Ի՞նչն է անկարելին - պայքարը Յայրենիքի՞ համար: Ի՞նչն է կարելին - գաղութում «հայը՝ հայ պահե՞լ»ը, «ներգա՞ղթ»ը:

Ժողովրդի համար հնարաւոր են այն բաները, որոնցում ճիգի իմաստութիւն, նւիրումի եւ արիութեան պահանջ չկայ:

Ազատւել տկարութեան բանդագուշանքներից - ասել է ինքնապաշտպանութեան գործը հասկանալ ո՛չ թէ «պայքար այլասերումի դէմ», այլ՝ «պայքար Յայրենիքի համար»:

Դրանով միայն՝ հայը յաւիտենօրէն հայ կը մնայ:

*«Տարօնի Արծիւ», 1938թ., թիվ 2*

# ՑԵՂԸ ՄԻԱՅՆ ԿԱՐՈՂ Է ՓՈԽԵԼ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԸՆԹԱՑՔԸ

Մեր ոգու անհանգստութիւնը իր խորին պատճառներն ունի: Պատմութիւնը սովորութիւն չունի նոյնութեամբ կրկնուել, բայց խորհրդաւոր մի բան կայ այն փաստի մէջ, որ թուրքերն էլ այսօր նոյն ճանապարհներով են հետապնդում մեզ: Նրանք էլ Փոքր-Ասիայից մտան Հայկ. Բարձրաւանդակ եւ հետեւելով եփրատի եւ Արածանու ընթացքին՝ երկար ժամանակ կանգ առան (ու նոյնիսկ մտան ու դուրս քշուեցին) Արաքսի հովիտների դրան, եւ այսօր մէկ ոտքով արդէն տեղաւորուել են Արարատեան դաշտում:

Իսկ մենք բռնած խալդ-ուրարտացիների ճամբան՝ անընդհատ քշւում ենք դէպի հիւսիս:

Ո՞ւր ենք գնում. ո՞ւր է առաջնորդում մեզ պատմական իրերի ընթացքը: Այս հարցի սիրտը դեռեւս չկարողացանք լրջօրէն շօշափել:

Հայութեան այն մասը, որ «վտանգից» է խօսում, շարունակում է դեգերել իրենից դուրս: Նախապաշարուած պատմական տխուր յիշողութեամբ՝ նա իմաստութեան վերջին խօսքը համարում է աշխարհից հիասթափուել եւ ինքն իրեն չհաւատալ - մենք ոչինչ կարող ենք անել:

Իսկ այն մասը, որ չի հասկանում ազգերի ճակատագրի խորհուրդը, որ ընդունակ չէ ըմբռնել, թէ կիսուած Արարատեան դաշտը չի կարող Հայաստան լինել եւ մանաւանդ մնալ, որ «մատերիալիստական դիալեկտիկայից» թթռվելով պատմութեան կնճիռներն ըստ այս ուսմունքի հասկանալու չափ բանականութիւն չունի, «վտանգ»ը համարում է ազգայնական ծիծաղելի բանդագուշանք եւ յոխորտում - Խորհրդային Միութիւնը կարող է ամեն ինչ անել: Բայց ո՞վ ասաց, որ թուրքն էլ ընդունակ չէ շատ բան անել:

Խորհրդային Միութիւնը կարող է ամեն ինչ անել:

Թուրքը կարող է շատ բան անել:

Բայց աշխարհի ողջ բրտութիւնը, բռնակալների գազանութիւնը եւ դիւանագէտների ամենանուրբ մաքիավելիականութիւնը չեն կարող մի բան անել - սրանք չեն կարող օրհասական վայրկեաններին ցեղերի ոգու շղթայազերծումը սանձել:

Իրերի տրամաբանութիւնը մեզ առաջնորդում է դէպի անկում: Բայց կայ նաեւ ոգու տրամաբանութիւնը, որ ճնշում է իրերի սիրտը, որ փոխում է պատմութեան ընթացքը:

Երբ ժողովուրդն է յօրանջում - մենք ոչինչ կարող ենք անել:

Երբ ցեղն է բարբառում - մենք կարող ենք շատ բան անել:

Ցեղի կոչը՝ դա մի՛շտ էլ հայրենիքի համար մեռնելու կոչ է:

Հայրենիքը՝ դա մի՛շտ էլ անմահ է, երբ նրա դատի համար մեռնելու պատրաստակամ սերունդներ կան:

Ցեղի ոգին - եկել է ժամը, երբ նա պէտք է շղթայազերծւի:

Մեզ հարկաւոր չեն կրաւորականութեան քարոզներ - կրաւորականութիւնը մի՛շտ էլ հոգեւոր գերեզմանափորութիւն է: Մեզ հարկաւոր չեն քաղաքագիտական մանուածապատ դեգերումներ - հայը քաղաքականութեան մէջ մի՛շտ էլ յիմար է: Զուր չէ, որ Տակիտոսն ու ֆոն Լուշանը այսպէս են բնորոշել մեզ:

Մենք պէտք է օգտւենք մեր բուն կարողականութիւնից - Հայը իր պատմական կեանքի բոլոր թռիչքներն արել է իր ոգու ցեղային տարերքի ոյժով:

Ցեղը՝ դա ե՛ւ արիւն է ե՛ւ ոգի: Դա ե՛ւ կամք է ե՛ւ բանականութիւն: Դա ե՛ւ առաջնորդ է ե՛ւ ռազմիկ: Դա ե՛ւ խորհուրդ է ե՛ւ ստեղծագործութիւն: Դա ե՛ւ տառապանք է ե՛ւ յաղթանակ:

Ցե՛ղը միայն կարող է փոխել պատմութեան ընթացքը:

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936թ., թիվ 1*

# ՀԱՅԿԱԿԱՆ ՈԳՈՒ ՈՒԺԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Եղէգնի փողից՝ ծուխ էր բարձրանում,*
*Եղէգնի փողից՝ բոց էր բարձրանում,*
*Եւ բոցերի մէջ մի պատանի վազում...*

Այսպէս եղաւ հայ կամքի խորհրդանշան, հայոց պատերազմական աստուած Վահագնի ծննդոցը: Իր գոյստացման բնոյթով, նա յիշեցնում է Հայոց Աշխարհի երկրաբանական լինելիութիւնը: Վահագնածնութեան երգը մի խտացում է հայոց տիեզերածնական (կոսմոգոնիական) ըմբռնումի: Նա հրաբուխների եւ երկրաշարժների մի աշխարհի ժողովրդի դիցաբանախառն բնափիլիսոփայութիւնն է: Մտայղացման առիթը, պատմական ժամանակներում լճային մի խառնարանում տեղի ունեցած հրաբխային ժայթքման ահարկու մի տեսարանը տուած պիտի լինի:

Հոգեբանական տեսակէտից, սակայն, չափազանց հետաքրքրական է, որ հայն իր կենսաբանական կամքը պատկերում է ըստ իր Հայրենիքի բնաուժական ներքնակ զօրոյթի, ըստ վերջինիս ժայթքողական արտայայտութեան: Սա լինելիական հոգեբանութիւն ունեցող մի էակի յղացումն է: Ուժական մի աստուծոյ ըմբռնումը կարող է միայն ուժական կամզգացութեամբ պայմանաւորուել:

Աշխարհի երեւոյթները բաժանեցինք կայական եւ ուժական ստորոգածների: Նաեւ ցեղերի հոգեբանութիւնը, նրանց պատկերումը յաւիտենականութեան մասին, նրանց գործնական եւ վերացական իդէալները կրում են կայական կամ ուժական նկարագիր: Ցեղերից ոմանք ունեն լինելիական զգացում, ոմանք՝ յառողական: Առաջինները նորատենչ են, վերջինները՝ աւանդապաշտ: Նրանք իրանց գոյութեան իմաստը կապում են ապագային, սրանք՝ անցեալին կամ ներկային: Նրանց յաւիտենականութեան իդէալը տեւական շարժումն է, սրանցը՝ յարակայութիւնը: Նրանց երջանկութիւնն ասում է «եղիցի՛», սրանցը՝ «կա՛յ»: Նրանք կեանքը զգում են կենսաբանօրէն, սրանք ապրում են մեքենայօրէն: Նրանք պաշտում են կենագործ ոյժը, սրանք՝ վերացական իմացութիւնը եւն., եւն.:

Նիցշէն փառաբանելով գերմանների լինելիական հոգեբանութիւնը՝ նրանց էութեան մէջ տեսնում է զրադաշտական կենսախինդ ոյժը, լինելիական հաճոյքը (werdelust) եւ այդ իսկ պատճառով, նրանց բարձր դասում ծեւապաշտ, մեքենայազգաց, հոգով քարացած եւ կայապաշտ ռոմաննե-

րից (այսպէս կոչուած «լատինական» ցեղեր)։ Ուրիշ շատերի հետ՝ Բերտրամը նոյն Նիցշէին համարում է գերմանական լինելիական նոր կրօնադիցաբանութեան մեծ առաքեալը, գերմանական ոգու ուժականութեան մարմնացումը, իսկ Լուտերի շարժումը՝ գերմանական լինելիական ուժականութեան յաղթական ծառացումն՝ ընդդէմ ռոմանական կայապաշտական-դաւանամոլական (դոգմատիկ) հոգեբանութեան։ Գերմանական ոգու ուժականութիւնը ցայտունօրէն աչքի է զարկում նաեւ գերմաներէն յաղթ եւ ռազմաշունչ լեզւի մէջ - մի լեզու, որ աճեցողական ներքնակ զօրոյթ ունի, որ անընդհատ նորաստեղծւում է, մինչ ֆրանսերէնն օրինակ, կնքւած ու կաղապարւած է «քարացած» ձեւերի մէջ։

Աիեղ է նաեւ մեր հայ լեզւի ուժական թափը։ Ինչպէս մեր շատ հոգեգծերը, այդպէս էլ մեր լեզւի առանձնայատկութիւնները փիլիսոփայօրէն-հոգեբանօրէն տակաւին չեն վերծանւած։ Բայց առաջին իսկ ակնարկից՝ նրանք գալիս են վկայելու, որ հայ ոգու անդունդը բազմախորհուրդ մի ուժաւտան է։

Վահագնածնութեան երգի փշրանքը հայ քաջքային (դեմոնական) ոգու հուժկու արձանացման մի վկայագիրն է, հաւանաբար տիեզերածնական դիւցազներգութեան վիթխարի մի կոթողի կտորը։

Նարեկացին՝ հայոց ամենամեծ մտածող-բանաստեղծը, որի ոճն արդէն աիռելի ուժականութեամբ օժտւած վարար մի հեղեղ է, իր «առուղեկան յաւիտենական»ի գաղափարով տուրք է տալիս իր ցեղի ուժապաշտ ոգուն։ Դրանով նա ընդունում է, որ այս աշխարհում ո՛չ թէ յարակայութեան, այլ յարատեւ շարժման, անցումի սկզբունքն է յաւիտենական։

Նարեկացուց մի հազարամեակ յետոյ, «Զախորդ Օրեր»-ի հեղինակ Զիւանին՝ հայ ժողովրդի մտածող-աշուղը, կեանքի լաւատեսութեան հիմքը տեսնում է հէ՛նց նրանում, որ այս աշխարհում ոչինչ է կայուն, որ «փոփոխակի անցքեր շարունակ կու գան ու կ'երթան»։ Ուժապաշտ մարդ-էակի բարոյական երջանկութեան ըմբռնում է սա, ընդդէմ կայապաշտական կենսաhայեցողութեան բարոյականի քարոզիչներին, որոնք կեանքի յոռետեսութեան հիմքը տեսնում են անցաւորութեան մէջ, որոնք աղաղակում են «կա՛նգ առ, ակնթա՛րթ», որոնք սոսկալով մահից՝ կառչում են անփոփոխ, անանց եւ տենչազուրկ «հանդերձեալ»ի բանդագուշանքին։

«Սասմայ Ծռեր» աւանդավէպը, որի հերոսներն առիւծ են պատառում, սրի մի հարւածով 40 գոմէշի կաշի, 40 ջրաղացի քար եւ նրանց տակ եղած հսկայամարմին Մսրամելիքն են կտրում, ճկոյթի մի հարւածով ապառաժ քարից կրակ են հանում եւ այլն եւ այլն - այդ ուժական աւանդավէպը տալիս է յարատեւ շարժման (perpetuum mobile) պատկերը։ Չերոսի (Սասուն-

ցի Դաւիթ) զայրոյթից քարերը թռչում են այնպիսի ուժգնութեամբ, որ նրանք «մինչեւ էսօր գնում են, հա՛ գնում»: Նրանք «գնում են» բոլորի, հազարամեակներ, միլիառամեակներ յետոյ եկող սերունդների համար: Այդ քարերը պոկւել ու նետւել են «պատմական» մի վայրկեանում, բայց նրանց չուն այլեւս «յաւիտենական» է, որովհետեւ, քանի այս աշխարհը կայ՝ «էսօր»ը վերջ չունի: Անվերջանալի եւ անվախճան շարժականութիւն - ահա՛, սասունցի ուժապաշտ հայ լեռնականների ըմբռնումը յաւիտենականութեան մասին:

Այսպէս՝ ահարկու է հայ էութեան ուժական գիծը: Ապագայապաշտ է հայը. նրա կեանքի ամենաազդու մղօնը լինելիական տենչանք է, գալոց յաւիտենականի կարօտը: Իր խռովքոտ Հայրենիքի հրահոսային տարերքի պէս՝ գալիքի խորհուրդն է եռում նրա ոգում: Ուժականատիպ մարդ-էակի երկունք է սա - լինելիական հաճոյքի կորովը, որ կենսաբանօրէն առողջ ժողովուրդը օժտել է սերնդագործական բարձր կարողութեամբ, որ պատմութեան պարտադրած վտանգների կամրջին՝ արիւնլայ հային մղում է խորհրդածել. «Վերջը լաւ կլինի»... Ե՞րբ, ո՞ւր է այդ վերջը. դա էլ պատմականօրէն թանձրացեալ ժամկէտ չէ, այլ յաւիտենօրէն լինելիական, մտանորոգ մի յոյս: Հայը կարող է ե՛ւ կրաւորական զոհ լինել, բայց նա մի՛շտ էլ մեռնում է հաւատով: Այս հաւատը նրան ներշնչում է ցեղային անմահութեան զգացում - զգացում, որ պայմանաւորում է կենսաբանական զօրութենականութեան արտասովոր թափով:

Լինելիական հայը - դա յաւիտենատենչ մարդն է, յաւիտենական հայը:

Դանութեան մի նաւում, 1925 թւականի ամրան, կարդացի տարագիր մի հայու թողած հետեւեալ արձանագրութիւնը. «Աշխարհում ամե՛ն բան կը մեռնի, բա՛յց հայը՝ չի մեռնի»...

*«Տարօնի Արծիւ», 1938 թ., թիվ 3-4*

# ՀԱՅՈՑ ԳՐԱԻՈՐ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԷՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

## *Ազգային անձնաւորութեան արծանացումը Հայ գրականութեան մէջ*

Ապրումով խորհրդապաշտ, մտածումով բանապաշտ մի էակ է հայը:

Հոգեբանական այս գծերի փոխադարձ ազդեցութեամբ՝ հայու ցայտուն տիպը հանդիսանում է ո՛չ միայն մոլեռանդ գաղափարապաշտ, այլեւ՝ իր որդեգրած գաղափարների բանական ողբերգու:

Այսօրինակ մարդու էութիւնը լեցնում է՝ հոգեւոր տառապանքը:

Այդպիսին՝ տառապապաշտ է, որով՝ կրաւորական հերոսացումի տիպար:

Ներգործական բնոյթի ամե՛ն ոգորում կամ արծանացում ծագում է նրա ոգու ովկիանի տառապագին խռովքից:

Այստեղ՝ ստեղծագործութեան արմատական ազդակը տանջանքն է - հոգեւոր ցաւը:

Տակաւին հեթանոս հայը տիեզերքն ապրում էր իբր ցաւի մի հանգոյց:

Տիեզերական երկունքից է ծնւում հայոց պատերազմական աստուածը-Վահագնը:

Հասկանալի է, որ տիեզերքի եւ սեփական մարտական կորովի մասին նման պատկերում ունեցող մի ժողովրդի ոգում, քրիստոնէութեան գաղափարականը պիտի գտնէր պարարտ մի դաշտ:

Անշո՛ւշտ, հայոց քրիստոնէացումը պայմանաւորուում էր, նաեւ, պատմականօրէն հասունացած գործնական մի պահանջով:

Նրանով՝ հայը ձգտում էր քաղաքականապէս ինքնուրոյն դառնալու բաղձանքին՝ հրատապ մի խնդիր, որի լուծման համար անհրաժեշտ էր Հայաստանի եւ հարեւան աշխարհակալ ոյժերի միջեւ - Հռոմ եւ Պարսկաստան - կրօնա - մշակութային արժէքների եւ հոգե-բարոյական ըմբռնումների մի անջրպետ ստեղծել:

Սակայն, Արեւմուտքի վերահաս քրիստոնէացմամբ, Հայաստանը հոգեպէս խրամելու այս խիզախ քայլի հետեւանքները. դարձան խնդրական:

Տրդատն ու Լուսաւորիչը, տեսականօրէն, խնդրին մօտեցան՝ իմաստութեամբ, գործնականում, սակայն, մատնուեցին՝ ճակատագրական մի սխալանքի:

Նրանք, ըստ արժանւոյն, ընբռնել էին իրենց ժողովրդի հոգեբանու-թեան շեշտուած մէկ գիծը - հոգեկան կենտրոնացման բարձր ընդունակու-թիւն, սակայն անտեսել էին քրիստոնէական ուսմունքի յատկանշական մէկ տրամադրութիւնը - աշխարհաքաղաքացիութիւն (կոսմոպոլիտիզմ):

Իբրեւ աշխարհային ցաւի փիլիսոփայութիւն՝ քրիստոնէական վարդա-պետութիւնը պատշաճում էր հայկական տառապապաշտ ոգուն, որով՝ նոր կրօնը մեր ցեղի հոգեկան կենտրոնացման ընդունակութեան շնորհիւ, կարճ ժամանակում, կարող էր դառնալ ժողովրդական հոգեբանութիւն: Այդպէս էլ եղաւ:

Իբրեւ աշխարհաքաղաքացիական ուսմունք, սակայն, քրիստոնէութիւ-նը չէր համապատասխանում հայու քաղաքական երազանքներին եւ խորթ էր հայ ժողովրդի անջատական հոգեբանութեան:

Այս հակասութեան հետեւանքով քրիստոնէութիւնը, հենց սկզբից, Հա-յաստանի պատմութիւնը դրեց առեղծւածային մի շրջանակում եւ ծնունդ տւեց զանազան երանգներով եւ փոփոխակներով արտայայտւող կամ կեր-պաւորւող, բայց ամբողջ անցեալում մեր կեանքի ընթացքը դրոշմող ող-բերգութեանց մի շղթայակցութեան. սկզբում՝ պայքար ազգի քաղաքական եւ հոգեւորական հաստատութեանց միջեւ, ապա՝ պայքար ազգայնացւած միաքնութենական եւ արեւմտեան ընդհանրական երկքնութենական դաւա-նական ըմբռնելակերպերի միջեւ, միւս կողմից՝ պայքար հայ-քրիստոնէա-կան միարմատեան (մոնիստական) գաղափարապաշտութեան եւ պարսիկ-զրադաշտական երկարմատեան (դուալիստական) ներգործապաշտու-թեան միջեւ, աւելի՛ ուշ՝ պայքար քրիստոնէական բանապաշտության (ռա-ցիոնալիզմ) եւ իսլամական զգայապաշտութեան (սենսուալիզմ) միջեւ, վերջապէս, մեր օրերում, պայքար ազգայնական-դաշնակցական գաղա-փարապաշտութեան եւ հակակամ ապազգայնական-մեծամասնական նիւ-թապաշտութեան միջեւ:

Այս բոլոր ոգորումները մէկ յայտարարի բերելով, յստակօրէն պիտի տեսնենք, որ հայոց ողբերգութիւնը պայմանաւորւում է ազգայնականի եւ աշխարհաքաղաքացիականի աններդաշնակութեամբ եւ հակամարտու-թեամբ՝ նախ՝ հայ ոգում եւ ապա՝ հենց դրա հետեւանքով՝ պատմութեան մարզում:

Նախաքրիստոնէական շրջանում էլ կար այս հակամարտութիւնը - նա արտայայտւում էր իբր իրանական եւ հելլէնական մշակոյթների բախում - բայց ինչ քրիստոնէութիւնը սաղմնաւորեց Հայաստանում՝ մինչեւ այսօր էլ, անյաղթահարելի անէծքի պէս ծմլւում է մեր սիրտը:

Սկզբում, քրիստոնէական յորձանքը Հայաստանում առաջ բերեց ոգինե-

րի, արժէքների, ըմբռնումների, էութեանց մի շփոթ:

Ամբողջ Դ. դարը հոգեւոր տարանջատման, ներքին պայքարի մի շրջան է: Ժամանակի հայը օրօրւում է ազգայնականութեան եւ աշխարհաքաղաքացիականութեան միջեւ:

Եւ դրա հետեւանքը լինում է ա՛յն, որ մի կողմից Հայաստանի դռները բացւում են ասորա - յունական մշակոյթի որոշ արդիւնքների առջեւ - աշխարհաքաղաքացիութեան յաղթանակ - միւս կողմից՝ նւաստանում է երկրի քաղաքական դրօշը - ազգայնականութեան պարտութիւն:

Որքան էլ պարտւած, սակայն եւ այնպէս, ազգայնականութիւնը չի զինաթափւում, խպառ, եւ յետ-Նիկիական շրջանում, հայութիւնը կանգնում է բարդ մի կնճիռի առաջ. ինչպէս անձնաւորւել. վերածւել սոսկական մտօք քրիստոնեայ մի էակի՞, թէ՞ նոր վարդապետութիւնը կաղապարել ըստ ցեղային նկարագրի, ստորադասաբար ներձուլել՝ նրան:

Դ. դարու վերջերում - ա՛ւա՜ղ, արդէն ուշացած - ընդնշմարւում է հայկական էութեան ամենացայտուն մէկ գիծը - իւրացւած գաղափարները ցեղայնացնելու կամ ցեղօրէն դրոշմելու գիծը: Մեծն Ներսէսը քրիստոնէական աշխարհաքաղաքացիութիւնը փոխարինում է ներցեղային բարոյականով, Աւետարանի կարեկցանքի ուսմունքը, գործնականում, կապում է իր ժողովրդի առողջապահութեան խնդրին եւ հարթում՝ քրիստոնէութիւնն ազգայնացնելու ուղին:

Ե. դարը գալիս է հաստատագրելու, որ հայկական էութիւնը գաղափարները ներձուլման ենթարկող մի զօրոյթ է եւ ո՛չ թէ օտարամուտ գաղափարների ազդեցութեամբ՝ տարրալուծւող մի տկարութիւն:

Եթէ Գ. դարու վերջերին հայերը իրենց ազգայնականութիւնը փրկելու յոյսով զինակցեցին քրիստոնէութեան - ապա, Ե. դարում, քրիստոնէութիւնը ինքզինքը փրկելու համար՝ ստիպւեց զինակցել հայ ազգայնականութեան:

Ե. դարու հայ կեանքի խորհուրդն ու իմաստը հէնց ա՛յն յաղթանակի մէջ է, որ տանում է ազգայնացւած քրիստոնէութիւնը՝ քրիստոնէական աշխարհաքաղաքացիութեան դէմ - մի երեւոյթ, որ արդիւնք է հայ ազգի ցեղային հուժկու խառնւածքի, ցեղային ոգու ընդդիմադիր կորովի:

Բնորոշ է, որ մեզ ծանօթ հայկական գրականութիւնը մի զուգերեւոյթ է ցեղային ոգու ինքնարձանացման փորձի:

Է՛լ աւելի յատկանշական է, որ հայոց գրերի հեղինակը՝ Մեսրոպ, հայկական ռազմական կորովը խորհրդանշող Մամիկոնեանների հայրենիք, Նւիրական Տարօնի մէկ որդին է եւ հայկական բանակի՝ մեկ սպան:

Իբր մշակութային գործիչ, Մեսրոպը պատմական խոշոր դէմք է, բայց

նա աւելի՛ խորհրդաւոր է իբր հոգեբանական տիպ, իբր հայ ցեղի ներքին ուժականութիւնը մարմնացնող տիպար:

Եւ նրա մեծութիւնը հէ՛նց այս վերջին հանգամանքի մեջ է, մինչ իբր պատմական անձնաւորութիւն նա շա՛տ ուշ յայտնուեց մեր կեանքի հորիզոնում:

Այլ, բոլորովին այլ կը լինէր մեր ճակատագիրը, եթէ նա մէկ դար առաջ ծնուած լինէր:

* * *

Մեսրոպի գործի յաղթանակից յետոյ, յունա-ասորական ազդեցութեան վտարումը Հայաստանից եւ յետ-Քաղկեդոնեան շրջանի դաւանական ոգորումները տրամաբանօրէն պիտի դառնային՝ անխուսափելի:

Քրիստոնէութիւնը ձուլեց հայ ազգային ոգուն եւ հոգեբանական իւրայատուկ մի համադրումով՝ հայը հանդիսացաւ քրիստոնեայ մարդու մէկ տիպար՝«հայ-քրիստոնեայ»:

Այս համադրութիւնը - «հայ քրիստոնէական» - դարեր շարունակ դառնում է հայ գրականութեան նիւթը:

Դրա շնորհիւ՝ հայոց գրաբարեան շրջանի ամբողջ մատենագրութեան մէջ տիրական է ազգայնօրէն երանգաւորուած դաւանական գրականութիւնը եւ դաւանօրէն երանգաւորուած ազգային պատմագրութիւնը:

Երկու գլխաւոր այս սեռերին զուգահեռ, բայց նրանց ստւերի ներքոյ, զարգանում են մի կրօնա-բանաստեղծական եւ մի փիլիսոփայական-գիտական գրականութիւն:

Ստեղծագործական այս բոլոր ստորոգածներն իրենց բոլոր ուղղութիւններով, ընդհանուր առմամբ, համակուած են յատկանշական մէկ միտումով՝ հաշտեցում կամ համադրում տրամապաշտութեան (լոգիզմ) եւ խորհրդապաշտութեան (միստիցիզմ): Որքան էլ հայոց մեծագոյն հանճարների մօտ խորհրդապաշտութեան կապանքների մէջ մնալու՝ բռնազբօսիկ մի ճիգ է նկատւում, այնուամենայնիւ, հայ ստեղծագործութեան բնական շեշտը պահում է իր համադրական գիծը:

Համադրական այս բնաճիգն օտար քննադատներին մտածել է տալիս, թէ հայ ստեղծագործութեան էութիւնը կայանում է Արեւելքի եւ Արեւմուտքի մշակութա-քաղաքակրթական ոգորումները համադրելու փորձի մէջ:

Մեզ թւում է, որ այս եզրակացութիւնն արդիւնք է սխալ դիտողութեան. յամենայն դէպս հայ մտածողները (ո՛չ իսկ բանաստեղծները) ո՛չ նման գիտակցուած ճիգ են ցուցահանում, ո՛չ էլ գրական որեւէ մարզում, Արեւելքն Ա-

րեւմուտքին կարկատելու փորձով զբաղւում:

Մեր խորին համոզումով, հայ ստեղծագործութեան մեջ արտայայտութիւն ստացած համադրական ձգտումը հետեւանք է ո՛չ թէ Արեւելքն Արեւմուտքին զօդելու առարկայական, արտա - «ես» - եան պահանջի, այլ՝ մարդու ենթակայական, ներ - «ես» - ային ոգորումների:

Արդէն պատմութեան վիճակած դառն ճակատագիրը հայ ստեղծագործին պիտի ստիպէր մարդկային ոգու տարանջատման ողբերգութիւնն աւելի՛ խոր կերպով ապրելու, որով նաեւ, մարդու ապրում-մտածումի բեւեռները ներդաշնակելու բաղձանքին աւելի՛ բուռն կարօտով ձգտելու:

Պատահականութիւն չէ, որ բոլոր ժամանակների հայ մեծագոյն հանճարը - Գրիգոր Նարեկացի - հենց այս խնդիրը դարձրեց իր երկասիրութեան նիւթը:

Նարեկացին, սակայն, այս կնճիռն ապրեց իբր սեփական ոգու ողբերգութիւն:

Հետեւա՞նքը:

Սիաւոր կերպով տքնեց նա եւ տառապեց. մտածող-բանաստեղծի հզօր երեւակայութիւնը սարսափներ վիժեց. ճի՛շտ է, մեծ երկ ստեղծեց, բայց դուրս չեկաւ «երկու հոգիների պայքարի» ջրապտոյտից:

Զգայական ու բանական աշխարհները, Բնականն ու Գերբնականը, մինչեւ վերջ էլ նրա համար մնացին հակադիր մարզեր, եւ Բացարձակին ապաւինելու, նրան ձուլւելու յոյսը՝ մխիթարութեան մի կիսամիջոց միայն, նոյնիսկ՝ մի պատրանք: Նարեկացու ողբերգութեան մեջ խորհրդապաշտական տարրի կիրարկումն արդիւնքն է ա՛յն զգացումի, թէ բանապաշտութիւնն անզօր է մարդու էութեան հանգոյցը լուծելու:

Յուսահատւելով մտածումից՝ նա դիմում է իր «երկրորդ», զգացական «ես»ին եւ ճգնում խորհրդապաշտութեան միջոցով շարժման մեջ պահել տրամապաշտութեան ուժաթափ թեւերը:

Այդ փորձի հետեւանքով բանապաշտ փիլիսոփայի երկասիրութիւնն երանգաւորուեց խորհրդապաշտ բանաստեղծի գունեղ յոյզերով:

Արտաքին ներկը, սակայն, չապահովեց ներքին համադրումը, առեղծւածը մնաց անլուծելի եւ հեղինակի «ես»ը՝ ողբերգօրէն պառակտւած:

Աւելի՛ն:

Մեզ թւում է, որ Նարեկացու ողբերգութիւնը բարդացաւ հէ՛նց տրամապաշտութեան ու խորհրդապաշտութեան զօդման այս փորձի շնորհիւ:

Համադրական ճի՞գ... Բայց աշխարհի բեւեռների ներհակութիւնը, կեանքի անկամրջելի պառակտումը քչեր, շա՛տ քչեր ապրեցին կամ ապրում են դառնագին այնպիսի յոռետեսութեամբ, ինչպէս՝ մեր փիլիսոփայ-

բանաստեղծը:

Մինչեւ այսօր Նարեկացուն հաւասարածին մի հանճար չունեցանք, որով՝ հայ գրաւոր ստեղծագործութեան մէջ, տրամապաշտութեան եւ խորհրդապաշտութեան ներդաշնակման խնդիրը՝ մնաց մի հանելուկ:

* * *

Ահա՛, ներհոգեւոր համադրման այսորակ ոգորումներն են, որ օտար դիտողներին արեւելեան եւ արեւմտեան մշակոյթների ներդաշնակման փորձերի խաբկանք են տալիս:

Աւեց, որ հայ ստեղծագործողները նման փորձ չեն արել եւ չէին կարող անել հետեւեալ պատճառներով.

ա) Հայկական Բարձրաւանդակը բնական իւրա՛յատուկ մի մարզ է: Շրջակայ երկրներից այնտեղ թափանցող բնագծերն ենթարկելով երկրի ներձուլական քմահաճոյքին, չեն կարողանում աղօտել Բարձրաւանդակի խստօրէն անջատական նկարագիրը:

Այս համեմատութեամբ Հայաստան հասնող հոգեւոր տեսակի հոսանքներն էլ կրում են ո՛չ թէ կաղապարեալ արժէքների, այլ՝ ձուլելի տարրերի բնոյթ:

Ինչպէս որ շրջակայ երկրների բնագծերն ենթարկւում են Հայաստանի բնութեան քմահաճոյքին - այդպէս էլ՝ օտարամուտ հոգեւոր տարրերը հայ հոգու արւեստագործ կորովին: Դրանք չե՛ն կերպադրւում, այլ՝ կերպափոխւում են, չե՛ն դառնում ստեղծագործական հիւսւածքի թելեր, այլ՝ օգտագործւում են իբր հում նիւթ, ցեղային արւեստի ինքնարձանացման համար:

Այսորակ առաջընթացն արդէն, ո՛չ է՛ համադրական (սինտետիկ), ներձուլական (ասիմիլատիւ):

բ) Բարձրաւանդակի արիա-արմենական ժողովուրդը շրջապատւած լինելով քշնամի ցեղերով, ստիպւած էր ընդդիմադիր ոգի սնուցանել դէպի օտարները, որով նաեւ՝ դէպի նրանց մշակութային բովանդակութիւններն ու արժէքները:

Ճի՛շդ է, քաղաքակրթութիւնը փոխանցւում է նաեւ թշնամութեամբ եւ նրա առաջատար միջոցներից մէկը հէ՛նց միջցեղային պատերազմներն ու բախումներն են, բայց այստեղ խօսքը քաղաքակրթութեանց փոխանցման ձեւերի մասին չէ, այլ՝ արժէքների որդեգրման:

Կարելի է թշնամուց շա՛տ բան սովորել, բայց ընդդիմամարտի կողմից նրա մշակութային արժէքները միշտ էլ ժխտւում են:

Արժէքների պայքարը տարբեր հոգեբանական տիպերի ճշմարտու-

թեանց պայքար է, իսկ ո՛չ մէկ դէպքում մարտնչողն այնքա՛ն ժխտական չէ դէպի թշնամին, որքան սոյնորակ պայքարում:

Արեւելյան մշակոյթ ասելով հասկացւում է իրանական քաղաքակրթութիւնը, մոնգոլ-թաթարական կիսա-քաղաքակրթութիւնը եւ իսլամական կրօներանգ մշակոյթը, իսկ պատմութիւնը վկայում է, որ գրական կեանք ունենալուց յետոյ, հայերն այս բոլորի հանդէպ գարշանքից բացի այլ զգացում չեն ունեցել:

Այս իրողութեան պատճառն ա՛յն է, որ հայերը ցեղաբանօրէն մոնգոլներին բոլորովին խորթ են, արաբների հետ ոչ մէկ կապ չունեն, իսկ պարսիկներին կապւում են միայն հեռաւոր, գրեթէ, աղօտւած մի գծով:

Ցեղաբանական տարբերութիւնները պատճառում են հոգեբանական խորթութիւն, իսկ վերջինս՝ արժէքըմբռնումների հակամարտութիւն:

Միւս կողմից, հայերը ցեղային բազմաթիւ գծերով կապւած են փոքր-ասիական հին ժողովուրդներին եւ յոյներին, ինչպէս նաեւ մէկ գծով՝ հրէական որոշ ցեղերին, եւ կապւած են արեւմտեան ազգերին, յատկապէս այսպէս կոչւած ալպեան ցեղին:

Քրիստոնէութիւնն արդիւնք էր հելլէնա-հրէական հոգեմշակութային ոգորումների - այս ժողովուրդների մշակոյթների փոխադարձ ազդեցութեան, որով՝ նրա որդեգրումն հայերի կողմից՝ հոգեբանօրէն, ըստ ամենայնի, հասկանալի է:

Է՛լ աւելի հասկանալի է հայոց ողբերգական սէրը դէպի արեւմտեան էութիւնը:

Արեւմտեան էութիւնը հայը պատկերում է իբր պայծառ եւ հարազատ մի գիծ, արեւելեանը՝ մութ եւ խորթ, նա համարւում է մաքրութիւն, սա՝ ապականութիւն, նա՝ դրախտ, սա՝ դժոխք:

Արժէքաւորման այս խտորոնակ չափանիշը հոգեբանօրէն անկարելի պիտի դարձնէր արեւմտեան եւ արեւելեան էութեանց համադրման որեւէ ճիգ:

Էապէս, Արեւելքն ու Արեւմուտքը հայն ապրում ու զգում է իբր հակադրութիւններ:

գ) Կարեւոր մի ազդակ է նաեւ հայոց անհատապաշտական հոգեբանութիւնը: Սրանով է պայմանաւորւում հայոց ազգային անձնաւորման կերպը ստեղծագործութեան մարզում: Անհատապաշտը հոգեբանօրէն ձգտում է տարբերական տեսակի ինքնարձանացման: Նա չի հանդուրժում որեւէ իրաւախոհութիւն: Անգամ համամարդկային գաղափարներ որդեգրելիս, նա չի մոռանում ինքնածին մի ներկ տալ նրանց՝ իր էութիւնը շրջապատին խստօրէն հակադրելու մտահոգութեամբ: Քրիստոնէութիւնը լուսաւորչական

դաւանութեան, ընկերվարութիւնը Հ.Յ. Դաշնակցութեան միջոցով ազգայնացնելու հայկական ճիգը հետեւանք է ինքնահակադրման այս հոգեբանութեան:

Տարբերելու այս հակման շնորհիւ, ինչպէս յայտնի է, հայոց ազգայնացած քրիստոնէութիւնն ստացաւ ցեղի կրօնական անձնաւորման բնոյթ եւ իբր այդպիսին ո՛չ Արեւմտեան եկեղեցիների դաւանութեանց որեւէ զիջում արեց, ո՛չ Արեւելքի հակաքրիստոնէական յորձանքներին տեղի տուեց, ո՛չ էլ զրադաշտականութիւնը կամ իսլամը քրիստոնէութեան հետ հաշտեցնելու փորձութեան դիմեց:

Այդպէս, նաեւ հայոց գրաւոր ստեղծագործութիւնն ո՛չ զուտ արեւմտեան հունով ընթացաւ, ո՛չ արեւելեան կաղապար ստացաւ, ո՛չ էլ արեւելեան եւ արեւմտեան ներհակ ոգորումների արդիւնքներն ի մի ձուլելու տենչանքն ունեցաւ:

Հայկական խորհրդապաշտութիւնը զերծ մնաց արեւելեան վայրագ գունագեղութիւնից, իսկ բանապաշտութիւնը՝ արեւմտեան յաճախ անգոյն սառնութիւնից:

Այս տարբերութիւնն ոմանց կարող է միջին մի ճանապարհ, եզրերը հաշտեցնող մի եղանակ թուալ, սակայն, նա մնում է տարբերութիւն, իսկ տարբերութիւններն ո՛չ համադրական կառոյց են ընձեռում, ո՛չ էլ՝ փորձ:

դ) Այս բանաձեւումներն աւելի լրացնում են, քան ժխտում հայ ճարտարապետական արւեստի էութեան հիմնօրէն ծանօթ Ստրզիգովսկու ա՛յն պնդումով, թէ «հայոց անձնաւորութեան» արծանացումը «յատկապէս ճարտարապետութեան մէջ է երեւան գալիս»: (Strzygowski, Die Baukunst der und Europa, հատոր Բ, էջ 582):

Եթե Ստրզիգովսկին հայ գրաւոր ստեղծագործութեան մէջ հայկական անձնաւորութեան դիմորոշումը չի նկատում, ապա՝ այդ պիտի բացատրել, թերեւս, այն իրողութեամբ, որ մեր գրական արդիւնքների մէջ քանակապէս ահագին տեղ են գրաւում կրօնական բանաստեղծութիւնն ու աստուածաբանական երկասիրութիւնները: Իրականում, այդ «անձնաւորութեան» մենք հանդիպում ենք հայ ստեղծագործութեան բոլոր բնագաւառներում: Անգամ՝ կրօնական բանաստեղծութեան մարզում, վրիպաբար միայն, կարելի է չնկատել նրա պայծառ դէմքը:

Ի՛նչ վերաբերում է աստուածաբանութեան, հարկ է հաստատագրել, որ գրական մի սեռ է, որում, ընդհանրապէս, աղօտւում են ազգային անձնաւորութեան առանձնայատկութիւնները:

Եւ սակայն, անգամ այս մարզում, հայ աստուածաբաններն աւելի՛ մեծ չափով ու խնամքով ծառայում են իրենց ցեղային անձնաւորութեան արծա-

նացման գործին, քան քրիստոնէական միւս դաւանութեանց տեսաբաննե-րը:

Աւելի՛ն:

Հայ աստւածաբանութիւնն անողոք պայքար մղելով զրադաշտական եւ իսլամական կրօնների, ինչպէս նաեւ արեւմտեան դաւանութեանց դէմ, հանդիսանում է հայ ազգային էութեան պահպանման ամենանշանակալից ազդակներից մէկը:

Է՛լ աւելին:

Արտայայտչական իր կերպերով, հայ աստւածաբանութիւնը թողնում է ա՛յն անայլայլ տպաւորութիւնը, որ նա մեր ցեղային ուժականութեամբ (դի-նամիկա) պայմանաւորւած ազգային ընդվզական ոգու ամենաhուժկու մի արձանացումն է:

Վիճական եւ ընդդիմամարտ իր նկարագրով, հայ աստւածաբանութիւնն էլ, իր հերթին, մեզ ներկայանում է ո՛չ թէ իբր համադրման գործ, այլ՝ իբր հա-կադրական ույժ:

* * *

Ամփոփելով այս հատւածում արծածւած մտքերը, պիտի եզրակացնել.

ա) Հայկական Բարձրաւանդակը, դրսից թափանցող բնագծերը ներ-ձուլելով, շրջակայ երկիրների նկատմամբ՝ կառկառում է իբր ինքնատիպ, հակադրական եւ անջատական մի բնամարզ:

բ) Շնորհիւ բնական այս իրողութեան ներազդեցութեան, հայը ժա-ռանգել է անհատապաշտական հոգեբանութիւն, որով՝ շրջապատի նկատ-մամբ իբր ինքնատիպ, հակադրական եւ անջատական հոգեւոր էակ արձա-նանալու ընդունակութիւն:

գ) Արիա-արմենական ցեղագծերի փոխադարձ ազդեցութեամբ, հա-յու ապրումը դրոշմւում է չափաւոր խորհրդապաշտութեամբ, մտածումը՝ չափաւոր բանապաշտութեամբ, իսկ նրա էութիւնը՝ սոյն գծերի իրաւախո-հութեամբ կամ նոյնիսկ՝ համաձուլմամբ:

դ) Այս գծերի շնորհիւ հայկական ստեղծագործութիւնն արեւելեան եւ արեւմտեան ոգորումների նկատմամբ՝ ցուցահանում է տարբերական շեշտւած ոգի եւ ի վերջոյ, ստանում է ազգայնօրէն անձնաւորեալ դիմագիծ:

ե) Այս անձնաւորումը յստակօրէն արձանանում է նաեւ հայոց գրաւոր ստեղծագործութեան մէջ:

*«Խռովք», 1932թ.*

# ՀԱՅՈՑ ՆԱՒԱՍԱՐԴԱԿԱՆԸ

*(տպագրւում է որոշ կրճատումներով)*

Հին հայերի Նաւասարդ նշանաւոր աւուր հանդիսավայրն Այրարատ նահանգի Բագրեւանդ (Ալաշկերտ) գաւառի Բագաւան կամ Դիցաւան մեհենական աւանն էր: Բագաւանը գտնւում էր Զիրաւ լեռնադաշտում՝ Արածանի գետի անմիջական եզրին եւ Նպատ կոնաձեւ լերան ստորոտում: Այստեղ էր հեթանոս հայոց կենսատւութեան եւ պտղաբերութեան աստուածահայր Արամազդի եւ աստուածամայր Անահիտի «վանատուր», այսինքն՝ օթեւան պարգեւող, հիւրընկալող բագինը, որի փոխարէն այսօր, մենաւոր հսկայի պէս, խորհրդաւոր կարկառւում է (թուրքերի ձեռքում մնացած, բայց բարեբախտաբար տակաւին կանգուն) Ալաշկերտի Ս. Յովհաննու վիթխարակառոյց պատմական վանքը՝ «Ուչքիլիսէ»-ն:

Քիչ, շա՛տ քիչ բան է աւանդւած մեզ Նաւասարդական տօնախմբութեանց եւ խաղերի մասին:

«Աւանդւած»ով ըստ էութեան չենք զբաղւի. պիտի բաւարարւենք մի քանի խորհրդածութիւններով՝ որոնք թերեւս պիտի կարենան մի քիչ լոյս սփռել տակաւին խոր ուսումնասիրութեան կարօտ նշանաւոր այդ հանդիսութեանց բովանդակութեան եւ էութեան վրայ:

1) Հայոց ամանորային Նաւասարդ ամիսը, մօտաւորապէս, համապատասխանում է հոռվմէական օգոստոսին: Այս ամսի երկրորդ կէսին հասնում է Հայաստանի պտուղների թագուհի խաղողը, իսկ հունձքը՝ գրեթէ վերջանում է Արարատեան դաշտում եւ սկսում է Բարձրաւանդակի միւս զուտ ցորենաբեր հովիտներում, որպիսիք են օր. Ալաշկերտը, Անթափ-Մանազկերտը եւ Շիրակը: Այսպէս, Նաւասարդը Հայաստանի պտղաբերութեան ամիսն է: Նաւասարդեան հանդիսութիւնները տեղի էին ունենում երկրի պտղաբերութեան աստուածների բագնաւանում, որով՝ նրանք առաջին հերթին, կրում էին գոհաբանական եւ ընծայաբերական ցոյցի բնոյթ: Ուզում ենք ասել, որ Հայաստանի զանազան գաւառների ժողովուրդը, պտղաբեր աստւածներին իր գոհունակութիւնն արտայայտելու համար՝ բնական պարգեւներից բաժին էր հանում նրանց բագիններին: Քրմական դասն էլ այս ընծաների մի մասով կերակրում էր «ուխտաւոր» բազմութիւնները, միւսը՝ տնտեսում էր բագինի «Վանատուր» կոչումն արդարացնելու եւ տարւայ ընթացքում հանդիպող ճամբորդներին օթեւանի հետ նաեւ սնունդ հայթայթելու: Հաւանական է, որ նաւասարդական ճաշկերոյթը տեղի կ'ունենար հեթանո-

սական հանդիսաւորութեամբ, խմբակցաբար եւ ուրախ մթնոլորտի մէջ: Քաղաքական շարժառիթներ էլ կարող էին դեր խաղալ, որպէսզի տարւայ մէջ գէթ մի քանի օրով, լեռներով կտրտւած գաւառների միմեանցից մեկուսացած ժողովուրդը, Հայաստանի կենտրոնում ապրէր իբր համացեղային մի միաւոր, իբր ազգային եւ քաղաքական մի ընտանիք:

2) Նաւասարդեան տօնախմբութիւնները տեղի էին ունենում հայոց արքայական նահանգ Այրարատի սահմաններում: Ասել է թէ նրանք կազմակերպւում էին Հայաստանի կենտրոնական իշխանութեան - արքաների - նախաձեռնութեամբ: Այս պարագան կասկած չի թողնում, որ հանդիսութեանց մասնակցում էին թագաւորները իրենց շքախմբով:

3) Հանդիսավայրը Բագրեւանդ գաւառն էր: «Բագրեւանդ» իրանական բառ է եւ նշանակում է «հարուստ պարգեւատու»: Միհրական այս տիտղոսը պայմանաւորւում է այս գեղեցիկ գաւառի բուսական եզակի հարստութեամբ: Գաւառը ցորենի նշանաւոր շտեմարան է: Բացի այդ՝ նրա զմայլելի մարգագետիններն ու շքեղ լեռնալանջերը մինչեւ աշուն մնում են կանաչ եւ առատ կեր են հայթայթում խաշնաւոր կենդանիների ահագին հօտերին ու նախիրներին: Կասկած չկայ, ուրեմն, որ հանդիսութեանց կարող էր մասնակցել երկրի բոլոր նահանգների այրուձին, ինչպէս նաեւ ժողովրդական հեծեալ բազմութիւնը, քանի որ բնութիւնը նրանց երիվարներին ապահովում էր առատ եւ ձրի կեր:

4) Այրարատ նահանգի մէկ գաւառը կազմող եւ Տայք, Բարձր-Հայք, Տուրուբերան ու Վասպուրական նահանգների միջեւ տարածող Բագրեւանդը գրաւում է Հայկական Բարձրաւանդակի կենտրոնական մարզը եւ բնական հանգոյցն է Տարօն-Այրարատ ճանապարհի, որով երկրի մի մասից միւսը անցնող ճամբորդների համար հանդիսանում է կենտրոնական կայանը: Ո՛չ միայն իր բուսական փարթամութեան, այլեւ այս կենտրոնական դիրքի շնորհիւ էր, որ «Վանատուր» բագինը սեփականելու պատիւը վիճակւած էր Բագրեւանդին: Բարձրաւանդակի ամենահեռաւոր ծայրամասերից իսկ, ձիով, 5-6 օրւայ ընթացքում կարելի է հասնել Բագրեւանդ: Որով՝ հանդիսական մի առիթով, նա կարող էր այցելւել ո՛չ միայն Հայաստանի կենտրոնական, այլեւ եզերական նահանգների բնակչութիւնից:

5) Հանդիսութիւնները տեղի էին ունենում հայոց ամառնային կենտրոնական բանակատեղի Շահապաւանի (այժմ՝ Դիադին) մօտերը: Այդտեղ էր մէկը հայկական բանակի ռազմափորձային գլխաւոր վայրերից, որոնք հնում «ասպարէզ» էին կոչւում: Անկարելի է երեւակայել, որ Նաւասարդ ամսին, Շահապաւանի ասպարէզում մարզւող հայ բանակը չմասնակցէր այս համազգային տօնախմբութեանց եւ ռազմափորձային խաղեր, ձիարշաւ-

ներ կազմակերպելով՝ փայլ չտար նրանց:

6) Հանդիսավայրի մօտն են նաեւ իրենց հարստութեամբ, գրեթէ ամբողջ աշխարհում եզակի հանքային տաք ջրերը-Դիադինի այսօրւայ լքւած, անտէր, բայց նշանաւոր ցայտաղբիւր - ջերմուկները: Դժւար է կարծել, որ նաւասարդեան հանդիսականները նրանց հանդէպ անտարբեր կարող էին մնալ: Աւելի՛ն: Դժւար է չընդունել, որ թէ՛ Շահապաւանն իբր ամառնային բանակատեղի թէ՛ Բագաւանն իբր նաւասարդական հանդիսավայր՝ իրենց դիրքը մեծ չափով կը պարտին նաեւ այս ջերմուկներին, որոնք, ո՛չ միայն համահայաստանեան, այլեւ համաշխարհային նշանակութիւն ունեցող բնական հրաշալիքներ են՝ փառահեղօրէն հանդիսաւոր, ճշմարտօրէն երազային տեսարաններ:

Այս ջերմուկների արծաթափայլ եւ կենանորոգ շատրւանները, որոնք 5-10 մետր բարձրանալով խոնարհւում են դէպի իրենց ծծմբազանգ, սպիտակ-մարմարագոյն բնակերտ տաշտերը, ապա միանում՝ Արածանու կապոյտ յորձանքին, Ծաղկանց լեռների իրաւամբ «անթառամ» ծաղիկները, որոնք մինչեւ աշնան կէսերը պահում են իրենց օդասփիւռ, դրախտազմայլ բոյրը, Բագրեւանդի օգոստոսեան վճիտ, ակնապարար արեւը, նօսր, ախտափարատ օդը եւ այլ զմայլանքները - ահա՛ սրանք են կազմում հմայիչ ա՛յն ոյժը, որի միջոցով Բագաւանի աստւածները իրենց որդիներին Հայկ. Բարձրաւանդակի բոլոր ծագերից հրապուրում էին դէպի Զիրաւ լեռնադաշտը: Ըստ այսմ, նաւասարդեան հանդիսութիւններով հետապնդւում էր նաեւ առողջապահական նպատակ: Այս կէտը նշանակալից է նրանով, որ ենթադրել է տալիս, թէ հանդիսավայրում եղած խաղերը պատշաճեցւած պիտի լինէին առողջապահական պահանջների, այսինքն՝ մարմնակրթօրէն նպատակայարմար կանոնների:

7) Նաւասարդեան հանդիսութիւնները տեղի էին ունենում մարդկային ծիրքերի պարգեւատու աստւածների բագնաւանում: Այս պարագան իրաւունք է տալիս մեզ պնդել, որ այդ հանդիսութիւնները կրում էին նաեւ ծիրքերի ցուցահանդէսի բնոյթ: Որով՝ երգիչների, նւագածուների, բանաստեղծների, ձեռնածուների եւ այլ «տւածուրիկ»ների հետ՝ հանդիսութեանց փայլ պիտի տային նաեւ մարմնական ոյժով, ճկունութեամբ եւ այլ առաւելութիւններով «օժտւածներ»ը՝ ըմբիշները, նետողները, ցատկող-վազողները, լարախաղացները եւ այլն: Առանց մարմնամարզական որոշ կանոնների կիրարկման՝ այդ ծիրքերը չէին կարող մշակւել: Յայտնի է, որ օր. լարախաղացութիւնը ո՛չ միայն վտանգաւոր, այլեւ բարդ մի արւեստ է: Նա յենւում է հաւասարակշռութեան սկզբունքին վրայ - մի սկզբունք, որն առանց լուրջ մարմնակրթանքի անկարելի է գործնականացնել:

Ի՞նչ էր կապը Աշտիշատի եւ Բագաւանի հեթանոս աստուածների միջեւ: Բագրեւանդը սկսւում է այնտեղ, ուր Արածանին փոխում է իր սկզբնական հիւսիսահիւ ընթացքը եւ թեքւելով դէպի արեւմուտք՝ բռնում է իր բուն հովիտ Տարօնի ճամբան: Բնա-ռազմագիտօրէն այս գաւառը բացառիկ նշանակութիւն ունի: Դա է հանգոյցը Տարօնի եւ Այրարատի: Գաւառի արեւելքը տարածւում է Արածանու եւ Արաքսի ջրբաժան գիծը: Արածանու հոսանքն ի վեր կատարւած տարօնական հայերի պատմական չուն չէր կարող այստեղ ճակատագրական մի հանգրւան չարձանագրել: Այստեղից պիտի նետւէր Ուրարտուն նւաճելու մեծ քայլը. իսկ դա պիտի պահանջէր ոյժերի լարում եւ ամփոփում: «Վանատուր»ը կայանի, օթեւանի աստուածութիւն է, իսկ տարօնական հայերն իրենց բախտորոշ կայանը հենց այդտեղ պէտք է որ ունեցած լինեն: Յոգեւոր իմաստով՝ դա Վահագնի, հայոց պատերազմական ոգու օթեւան - կազդուրարանն է, Աշտիշատի աստուածների ոյժի ճառագայթումը՝ Այրարատի սահմաններին: Յետագային, այստեղ, Տրդատը հանդիպեց Տարօնից յաղթականօրէն եկող Լուսաւորչի քրիստոնէավառ բանակին: Եւ խորհրդաւոր կապը, որ կար հեթանոս Աշտիշատի եւ Բագաւանի միջեւ՝ քրիստոնեայ հայութիւնը պիտի պահէր Ս. Կարապետի եւ Ս. Յովհաննէսի էակցութեամբ: Անկասկած, հայոց նաւասարդական ոգու կենտրոնը Տարօնն էր, եւ թերեւս հնագոյն նաւասարդականները տեղի ունեցած են այնտեղ. թերեւս դա է ենթագիտակցական պատճառը, որ քրիստոնէութիւնից յետոյ հայոց նոր նաւասարդականի՝ Վարդավառի գլխաւոր հանդիսավայրը կրկին դարձաւ Տարօնը:

Ասւեց, որ Բագրեւանդի Ս. Յովհաննու վանքը բարձրանում է «Վանատուր» բագինի տեղը: Միանգամայն տրամաբանական է ընդունել, որ քրիստոնէութիւնից առաջ, հայ լարախաղացների ծիրքերի պարգեւատուներն եղել են Բագաւանի աստուածները: Յետագային, այդ պատիւը Բագաւանի նոր տաճար Ս. Յովհաննու եւ Մշու Ս. Կարապետի էակցութեան շնորհիւ՝ փոխանցւել է վերջինին: Ուշագրաւ իրողութիւն է, որ հայ լարախաղացների տարազը, իդէալն ու շարժուձեւը չեն համապատասխանում քրիստոնէական ոգուն: Նրանց վիուկապաշտական համոզումների եւ պարամոլեկան թռիչքների մէջ կայ հին, հեթանոսական մի գիծ, որի հետքերով մեր մտածումը ո՛չ թէ դէպի ճգնաւոր-մարգարէի անապատն է գնում, այլ՝ դէպի նաւասարդեան կենսախինդ առաւօտը:

Այս տւեալներից կարող ենք եզրակացնել, որ նաւասարդականները նախ եւ առաջ գոհաբանական-ընծայաբերական ցոյցեր էին, որով՝ նրանք կրում էին համաժողովրդական բնոյթ: Եւ որովհետեւ Յայաստանի ժողովուրդն երկրագործութեամբ եւ խաշնապահութեամբ էր զբաղւում, նրա հա-

մազգային տօնը պիտի ունենար գեղջկական-հովւերգական նկարագիր:
Թագաւորի, նախարարների եւ հայկական այրուձիի ներկայութիւնն ստիպում է մեզ ընդունել, որ տօնակատարութիւնը տեղի էր ունենում հանդիսաւոր որսագնացութեամբ եւ հեծելազօրային ռազմախաղերով:
Մարզարւեստն ո՛չ այլ ինչ է, եթէ ոչ կենսաբանօրէն նպատակայարմար շարժմանց կանոնների մի գումար:
Նաւասարդեան հայերն ունէի՞ն այսպիսի կանոններ:
Հայոց մարզականի համար բախտորոշ այս հարցումի հանդէպ պատմութիւնը մնում է լուռ. տրամաբանութիւնը, սակայն, ասում է՝ այո՛:
Պատմականօրէն յայտնի է միայն, որ հայերը նշանաւոր որսագնացներ եւ ձիավարներ էին: Նոյնպէս նրանք տալիս էին բարբարոս հսկաները խորտակող ախոյեաններ եւ մինչեւ մեր ժամանակները՝ ամենաճարպիկ պարանախաղացներ:
Որսարւեստը մարզական նշանակալից մի կերպ է: Նա պահանջում է ձիավարութեան, հետապնդումի, նետումի եւ հարւածումի վարպետութիւն: Ճի՛շտ է. սա ուղղակիօրէն չի մտնում մարզարւեստի բնագաւառում, բայց անուղղակիօրէն նպաստում է մարզարւեստի զարգացմանը:
Այրուձիական կազմակերպութեան արւեստը (որում հայերն այնքան հռչակւած էին) նախատեսում է ո՛չ միայն ձիավարական, այլեւ զինախաղական ճարպիկութիւն: Հայկական ձին նշանաւոր «օդապարիկ» նժոյգն էր, իսկ զէնքերը՝ հին ժամանակների պաղ ու ծանր գործիքները: Թէ՛ նժոյգի կառավարումը, թէ՛ ծանր զէնքերի գործածութիւնը պահանջում են մարմնական ոյժ եւ ճկունութիւն: Մարմնական ոյժը մարզանքի կենսաբանական աղբիւրն է, իսկ ճկունութիւնը ձեռք է բերւում մարզական կերպերի մշակումով, մարմնակրթանքով, մարմնամարզով:
Ախոյենական եւ մանաւանդ լարախաղացական արւեստներն արդէն պահանջում են մարզական բարդ կանոնների կիրարկում:
Այս մասին աւելորդ է երկարաբանել. հայ ախոյեաններն ու լարախաղացները մարդկային մարզական կորովի ամենափայլուն ներկայացուցիչներն են:
Ինչպէս տեսնւում է, մենք տրամադիր ենք ընդունել, թէ նաւասարդական հայերն ուրոյն մի մարզարւեստ ունեցած պիտի լինեն: Այդ մարզարւեստը, թերեւս, զուրկ էր տեսաբանօրէն հիմնաւորւած ամբողջականութեան իդէալից: Նրա արտայայտութեան կերպերը, սակայն, մատնանշում են սքանչելիօրէն զարգացած գործնական կողմը: Նաւասարդական հայերը կենսախինդ մարդիկ էին, համակւած հովւերգական-ուժապաշտական հոգեբանութեամբ եւ նւիրւած «մարդկային առողջ հասկացողութեան» վրայ խա-

ոխուած ու հեթանոսօրէն պարզ մի քաղաքակրթութեան:
Նրանք ո՛չ թէ բանականն ընդհանրացնող եւ հոգեւորը ճշմարտօրէն արժէքաւորող հանճարներ էին, այլ կամային-մարմնականը գնահատող գործնական տաղանդներ:
Այս գծերով էլ կնքւել է նրանց ո՛չ թէ համադրական, այլ կամքի եւ մարմնական ոյժի մշակման, ո՛չ թէ «կալոկագաթիական», այլ սոսկ «բիոլոգիական» մարզականը: Հայոց մարզականի զուտ կենսաբանական այս նկարագիրը համապատասխանում է հայ ժողովրդի լինելիական էութեան:
«Նաւասարդունիք»... այսպէս պիտի անւանել պատմական անցեալի, ներկայի եւ գալիքի (մինչեւ մեր ցեղի յաւիտենականը) ուժական եւ ուժապաշտ հայ տիպերը: Նաւասարդական հայն է առասպելաբանը Վահագնածնութեան, Տորք-Անգեղի, «Ո՞հ, տայր ինձ»ի, «Սասմայ ծռեր»ի: Այս տիպն էին մարմնացնում Տրդատը, Արտաւազդը, Սմբատը... Մամիկոնեան մեծ զօրավարները... «Նալղրան» Մանուկն ու Աբուլ-բուհարայ Ալօն... հայ յեղափոխական փաղանգի ընտիր հայդուկները, որոնք իբր ախոյեաններ կամ ռազմավառ հսկաներ, ապաւինած իրենց մարմնական, հոգեւոր, կամային եւ բարոյական ոյժին, իջան պատմութեան հանդիսավայրը եւ մի քիչ արեւ, մի քիչ հպարտանք եւ ապրելու ահագին տենչ դրին անընդհատօրէն բեկբեկւող մեր ցեղի կրծքի տակ: Դրանք մեր սրտում բորբոքեցին մի հրդեհ, որի բոցը մինչեւ «էսօր» բարձրանում է, հա՛ բարձրանում:

*«Տարօնի Արծիւ», 1938 թ., թիվ 3 - 4*

# ՏԱՐՕՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, ՅԵՂԱԿՐՕՆՈՒԹԻՒՆ, ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆՈՒԹԻՒՆ *...

Քաղաքական աշխատանք տանել կարենալու համար, անհրաժեշտ է երեք գործօն.

1) Պատմական՝զգացում,
2) Կազմակերպուած ոյժ,
3) Ապագայատենչ խռովք:

Առանց պատմական զգացումի՝ խորք, որով եւ ստեղծագործական ներքնակ զօրութենականութիւն չունի որեւէ կազմակերպութիւն, առանց վերջինի՝ նպատակահիմաստ չէ որեւէ ապագայատենչութիւն: Աւելին. առա՛նց երեք այս գործօններու ներդաշնակութեան, չկա՛յ ընդհանրապէս, պատմաստեղծումի որեւէ իրական ճիգ:

Մեր ծախողանքներու բուն պատճա՞ռը - թերի չէ՞ր պատմական զգացումը, պակասաւոր չէ՞ր կազմակերպութիւնը եւ անորոշ չէ՞ր պատկերումը՝ ապագայի մասին:

Վերցնենք ապագան, ի՞նչ կ'ուզէինք - կեանքի, պատուի, գոյքի ապահովո՞ւմ, աւտոնոմիա՞, ֆեդերացիա՞, ընկերային յեղաշրջո՞ւմ, անկախութի՞ւն: Մենք անծանօթ էինք նպատակի տեմպերամէնտի օրէնքին: Նպատակի թռիչանքը ստեղծագործական մեծ ոյժ է եւ այս ոյժը ազդու է, երբ նպատակի սահմանումը յստակ է եւ վճռորոշ: Բոլոր կարգի պատեհապաշտութիւնները առաջ կու գան նպատակի անստուգութենէն կամ այլազան նպատակներու ներքին բաղխումէն:

Դառնանք պատմական զգացումին, ի՞նչ բանին աւելի ականջ տուած ենք - մեր պատմութեան ձայնի՞ն, թէ՞ Պոլսէն, Թիֆլիսէն եկած հովերուն: Ի՞նչպէս կ'ապրէինք հայկական ողբերգութիւնը - աւելի իբր ներքի՞ն, թէ՞ իբր արտաքին պատճառներու գումար: Որո՞ւն կապած էինք փրկութեան յոյսը - հայ ժողովրդի ներքին կարողութեա՞ն, թէ՞ Եւրոպային:

Ի՞նչ էր կազմակերպութեան ոյժը - անհատներ, բայց ոչ զանգուած, խումբեր, բայց երբեք զինուած բազմութիւն: Պայմաննե՞րը - աննպաստ էին անշո՛ւշտ: Բայց յեղափոխութիւն ըսել է՝ նախ եւ առաջ պայմաններու յաղթահարում: Երբ չկայ այդ, անհատները հերոսական կը ստեղծեն, բազմութիւնները կը դառնան կրաւորական զոհ եւ յեղափոխութիւնը կ'անցնի աննպատակ:

Յեղափոխութիւնը ե՛ւ տարերային ոյժ է ե՛ւ մտածումի սիստեմ: Տարերքով կը պայմանաւորուի ոգիի ընդհանուր շարժը, սիստեմով՝ կազմակեր-

պութեան արտայայտչական թափը: Այսպէս, որովհետեւ կազմակերպութիւնը ամեն բանէ առաջ խառնուածք է, նկարագիր:

Ի՞նչն էր պատճառը, սակայն, որ հայ յեղափոխութիւնը ընդհանուր շարժի չվերածուեցաւ:

Սովորութիւն է պատճառները որոնել «իրական պայմաններու» մէջ: Բայց հնարաւո՞ր է ուղիղ ըմբռնում «իրական պայմաններու» մասին, երբ պակաս է պատմական զգացումը եւ յստակորոշ չէ նպատակը:

Հայ յեղափոխութիւնը յաջողեցաւ մէկ բանի մէջ - ան պանծացուց նահատակութեան ոգին: Մեծ նուաճում էր այդ - հերոսածին յղութեան, ճակատագիրը յաղթահարելու ուղիղ ճանապարհ:

Ո՞ւրկից կու գար այդ ոգին - ահա՛ թէ ի՛նչը գիտականօրէն ուսումնասիրուած չէր: Մենք հոգեգիտութիւն չմտցուցինք մեր շարժումին մէջ, չճանօթացանք մեր առաքինութիւններու աղբիւրին, եւ հետեւանքը այն եղաւ, որ նահատակութեան ոգին ի վերջոյ յանգեցաւ կրաւորական ոչնչացումի:

Հայ յեղափոխութեան մէկ այլ նուաճումը եղաւ փրկութեան տեսիլքը: Տեսիլք, բայց ո՛չ գործնական նպատակ: Ընկերային բովանդակութիւն ունեցող գործնական նպատակը նախ հանրապարտադիր է եւ միասեւեռ: Հայ յեղափոխութիւնը իր նպատակները հաշտեցուց քաղաքական վայրկեանի պահանջներուն, դարձաւ նպատակի պատեհապաշտ - հոս՝ ներքին պատճառը պատմական տխուր եզրակացութեան:

Տարբեր նպատակ կը հետապնդէինք Համիդեան օրերուն եւ յանկարծ կառչեցանք օսմանեան սահմանադրութեան համապետական նպատակներուն: Բոլորովին այլ պատկերում ունէինք սահմանադրութեան մասին եւ յանկարծ դրուեցանք ջարդի պատկերին առջեւ: Չէինք կռահած որեւէ արապատեան անկախութիւն եւ յանկարծ ունեցանք հանրապետութիւն: Նոր սկսանք քարոզել այն (Միացեալ եւ Անկախ Հայաստան), ինչ որ որդեգրած պիտի ըլլայինք 30 տարի առաջ, եւ յանկարծ նետուեցանք գաղութներ:

Իրօ՛ք, ողբերգական ճակատագիր - հակասութիւն պատմական ընդհանուր առաջընթացի եւ մեր նպատակներու, իրականութեան եւ մեր իդէալներու:

Պատճառագիտօրէն քննել այս երեւոյթը կը նշանակէ ո՛չ միայն վերծանել մեր պատմութիւնը, այլեւ գտնել մեր ճակատագիրը շօշափող հարցերու բանալին:

Անմիջապէս ըսենք, որ մտքի տառապանքէն ծնունդ առին երկու նոր շարժումներ - ցեղակրօնութիւնը եւ տարօնականութիւնը:

* * *

Մենք ունէինք կազմակերպութիւն - հակասութիւն չկա՞ր իր ընկերվարական ծրագրի եւ ցեղաշունչ գործի, իր մտաւորականի եւ ռազմիկի հոգե-աշխարհներու միջեւ: Կարդացէ՛ք Դաշնակցութեան ծրագիրը եւ կարդացէ՛ք անոր պատմութիւնը եւ դուք պիտի տեսնէք, որ չկայ ոգիի եւ արիւնի ներդաշնակութիւն: Ծրագիրը պաղ միջազգայնականութիւն է, պատմութիւնը խռովիչ, սրտառուչ հայկականութիւն: Ծրագրի մէջ լեզու առած է եւրոպական-ռուսական դասակարգային մտածումը, պատմութիւնը՝ յայտնութիւնն է հայկական ցաւի եւ հերոսական ոգիի: Այս հակասութենէն չտուժեցի՞ն յեղափոխութեան նպատակը եւ գործը: Ո՛ւր երկու ոգիներու պայքար կայ, հոն կայ ներքին տատանում, քաղաքական դեգերում եւ ձախողանք:

Ի՞նչն էր պատճառը այդ երեւոյթի: Մեր վերածնունդը թերի էր: Առաջնորդող լոյսը ամբողջովին չստացանք հայոց պատմութենէն, այլ նաեւ Եւրոպայի ընկերային շարժումներէն: Եւրոպայի ընկերային շարժումները իրենց միջավայրին յատուկ հոգե-տնտեսական յղութիւններ, ոգորումներ էին, մինչդեռ հայ երկրի եւ ժողովուրդի կեանքի պայմանները այլ էին: Մենք չեղեցանք Քրիստափորի «յաւելեալ արեան» տեսութեան գիծէն: Դա պատգամ էր, պատմական զգացումով օծուն խորին ծանօթութիւն ճակատագրի: Ռուսական 1905-ի յեղափոխութիւնը, օսմանեան 1908-ի սահմանադրութիւնը վարագուրեցին մեր աչքերը: Մենք կտրուեցանք ոգիի իրականութենէն: Հայոց պատմութեան ձայնը չմնաց անվիճելի առաջնորդի դերին մէջ: Եւ այդ եղաւ շնորհիւ այն իրողութեան, որ մենք անծանօթ էինք մեր վերածնունդը ճշմարտօրէն հոգեգծող գործօնին - տարօնականութեան:

Հոգեգիտօրէն մօտեցա՞նք հայոց պատմութեան ներքին տարերքին, բաղխեցի՞նք մեր ցեղի ոգիի դուռը, օրհասական կանչով ոտքի հանեցի՞նք բոլոր ժամանակները, իմաստասիրաբար փորձեցի՞նք վերծանել այն հարցը, թէ ինչո՞ւ սկիզբէն մինչեւ այժմ այդպիսին է տարօնական հայը - ցեղի գոյութեան պայքարի մէջ զուտ հայկական կրօնական խանդ դնող:

Եթէ կ'ուզէք նորը ստեղծել, դիմեցէ՛ք ձեր պատմութեան հին ոյժերուն, խառնւածքի ա՛յն տարրին, որ անցեալի մէջ ստեղծագործ եղած է եւ յաւիտենական: «Վերածնունդ» կը նշանակէ պատմական ոգիի վերակենդանացում: Վերածնունդ չկայ եւ ո՛չ մէկ տեղ, ուր կը բացակայի իմացական տառապանք եւ զգացումի խռովք՝ անցեալը կենդանիօրէն հոգեգծելու եւ դարձնելու ներկայի առաջնորդը: Մեր «վերածնունդ»ի մէջ գործեցին խորթ, հայոց պատմութեան անծանօթ տարրեր: Այդ էր պատճառը, որ յեղափոխութիւնը չդարձաւ խորքով՝ ազգային հոգեբանութիւն, արտայայտու-

թեամբ՝ համահայկական շարժում:

Ի՞նչ կ'ուզենք մենք: Մենք կ'ուզենք իրար շղթայել, իրարմով լրացնել քաղաքական կորովի երեք անհրաժեշտ տարրերը - պատմական զգացումը, կազմակերպուած ոյժը եւ ապագայատենչ խռովքը: Առաջինի աղբիւրը տարօնականութիւնն է - հայոց պատմութիւնը վարող յաւիտենական ոյժը: Երկրորդը ինքը՝ Դաշնակցութիւնն է, ժամանակի համահայկական միակ կազմակերպուած ոյժը: Երրորդը՝ ցեղակրօնութիւնը, որ ապագայի տենչ է, ուղին նոր սերունդի:

Ցգիտութիւնը եւ չարութիւնը միայն կրնան հակասութիւն կամ իրարամերժութիւն տեսնել այս երեք հոգեւոր բովանդակութիւններու միջեւ:

Յայը վաղուց կորսնցուցած է աշխարհը համադրաբար պատկերելու, որով իր որակները համադրօրէն օգտագործելու ընդունակութիւնը:

Քանի դեռ հոգենորոգաբար չենք վերակառուցած այդ ընդունակութիւնը, կիսատ պիտի մնան մեր բոլոր գործերը եւ ծախող՝ ճակատագիրը յեղաշրջելու փորձերը:

Ոգիի գործ է կազմակերպութիւնը. իսկ ոգին կու գայ ցեղէն: Կուգայ այնպէս, ինչպէս արիւնը: Մարդը ո՛չ միայն ֆիզիքական յատկանիշներու գումար մըն է, այլեւ հոգեկան գործօններու ամբողջութիւն մը: Զուգահեռականութիւն, ներքին փոխադարձ կապ կայ ա՛յն յատկանիշներու եւ այս գործօններու միջեւ: Ո՛չ միայն ժառանգականութիւնը, այլեւ պատմութիւնը, մշակոյթը ունին զարգացման իրենց ներքին «տրամաբանութիւնը»: Ժառանգականութիւնը նախ եւ առաջ տիպի եւ խառնուածքի փոխանցում է: «Տիպ»ը ե՛ւ մարմնական ըմբռնում է ե՛ւ հոգեկան: Իսկ խառնուա՞ծքը: Ֆիզիքական «տիպ»ի յատկանիշները անոնք են, որոնք կը մնան դիակի վրայ: «Դիակ» կը ստացուի ա՛յն ատեն, երբ որեւէ էակի մէջ կը սպառի գոյութեան դինամիզմը: Դիակը չունի գոյութեան ուժականութիւն, որով նաեւ՝ խառնուածք: «Դիակ» կը նշանակէ կենսաբանական ոյժերու դադար: Ի՞նչ են այս ոյժերը, որոնց «դադարում»ով որեւէ օրգանիզմ կը զրկուի խառնուածքէ: Այդ ոյժերը կենսահոգեւոր գործօններ են: Դեռ Արիստոտելը գիտէր եւ հիմնաւորեց, թէ ոգին է մարմնի ստեղծիչը: «էնթելէքիան» է, որ կը կառուցանէ «օրգանոն»ը: «էնթելէքիան» ոգին է եւ «օրգանոն»ը՝ օրգանիզմը: Ամեն կազմակերպութիւն ընկերային օրգանիզմ է: Որեւէ կազմակերպութիւն կենսիմաստ է, երբ ունի պատմական առաջադրութիւններ: Ոգին կը պայմանաւորէ «կենդանութիւնը», իսկ պատմութիւնը, որով եւ պատմական իմաստով նպատակադիր կազմակերպութիւնը՝ կենդանի մարդոց գործ է: Այսինքն, նախ եւ առաջ՝ ոգիի գործ:

Երբ գիտենք որ ոգին եւ արիւնը ցեղէն կու գան, երբ գիտենք, կազմա-

կերպութիւնը ոգին է, իսկ յեղափոխութիւնը, կռիւը՝ արիւնի նուիրաբերում: Երբ գիտենք այս բաները եւ կը մնանք անցեղաճանաչ, այո՛, այդ պարագային իրաւունք չունինք դատապարտել աշխարհը: Մենք ենք մեր ծախողանքներու պատճառը:

«Հիմնապէս» ինչո՞վ կը բացատրուի մեր 1915-ի աղէտը: Մեր գործիչները էապէս երկու բան կ'ըսեն.

1) Անակնկալօրէն պայթեցաւ համաշխարհային պատերազմը,

2) Թուրքերը մեզ խաբեցին:

Ինքնարդարացո՞ւմ է սա: Չես ունեցած կռահումի ընդունակութիւն, չես նախապատրաստուած, եւ թշնամին օգտուելով քո միամտութենէն՝ չսպասուած հարուածներ հասցուցած է քեզ: Եւ դու ջախջախուած ու պարտուած ես, չնայած որ պարտութեանդ համեմատութեամբ դու տկար չէիր եւ թշնամին հզօր չէր՝ իր տարած յաղթութեան համեմատութեամբ:

Ո՞վ է մեղաւորը:

Այնուհետեւ կրկնիր - «Թուրքը ոճրագործ է, դաժան, նենգ, կեղծաւոր, խաբեբայ»: Աշխարհը կը փոխո՞ւի:

Աշխարհը կը փոխուի ինքնասրբագրումով, որ ըսել է՝ զղջումի մեծ ողբերգանք եւ նորակերտումի անդուլ ճիգ:

Զղջումը մեծ առաքինութիւն է եւ ապագայ կառուցելու բարոյական ոյժ: Հրեաները կու լային եփրատի եզրին եւ այժմ ալ ունին «Լացի պատ»ը: Հրէից ամբողջ ապագան «Լացի պատ»ի խորհուրդի մէջ է: Հայը հոգեգիտութեան մասին հասկացողութիւն չունի: Բայց ողբերգութենէն աւելի մեծ ստեղծագործող ոյժ չկայ երկնքի տակ: Ճշմարտօրէն ողբերգել, կը նշանակէ գոյութեան ողջ դառնութեամբ, ցաւով, ցասումով, ոգորումով խորհրդածել ճակատագրի մասին: Կը նշանակէ ինքնաժխտումի սարսուռով եւ կարօտով ելուղի փնտռել այն բանի համար, որը քանի դեռ յայտնութիւն չէ ստացած, վերջ չունի քո բարոյական տագնապը:

Ի՞նչը կը պակսէր մեզ - պատմական զգացումը եւ միապատկեր, միասեւեռ ապագայի խռովքը:

Խորքով ապրիլ անցեալը եւ խռովքով՝ ապագան, կը նշանակէ ամբողջական, հզօրաթափ, լիարժէք եւ նպատակիմաստ դարձնել Դաշնակցութիւնը:

Այդ խորքը միայն տարօնականութիւնը կրնայ տալ, խռովքը՝ ցեղակրօնութիւնը:

Ցեղախռով երիտասարդութիւնը մի՛շտ ալ առաջապահ ոյժ է նպատակի գծին վրայ:

Ճիշդ կը նկատէ «Հայրենիք»ը, թէ «Ցեղակրօն Ուխտերը Հ. Յ. Դաշնակ-

ցութեան առաջապահ ոյժն են Ամերիկայի մէջ»...

Բայց ինչո՞ւ միայն Ամերիկայի: Ինչո՞ւ ամեն տեղ չստեղծել այս «առաջապահ ոյժ»ը: Եւ ինչո՞ւ չհասկնալ բարոյական թիկունքի, պատմութեան պահեստի ոյժերու նշանակութիւնը - ցեղի յաւիտենական կորովը, որ ստեղծագործօրէն արտայայտութիւն ստացած է յանձին այն խառնուածքի, որ այժմ «տարօնականութիւն» անունը ստացած է:

Առանց պատմութեան բոլոր ոյժերու ներդաշնակութեան, անհնար է պատմական գործ կատարել:

Ոգիի բանակ - ահա՛ թէ ի՛նչ դիմագծութիւն պիտի ունենայ հայութեան նոր կազմակերպութիւնը:

Ի՞նչ կրնան տալ մեզ այդ ուղղութեամբ տարօնականութիւնը եւ ցեղակրօնութիւնը:

Տարօնականութիւնը հայ ցեղի հոգե-բարոյական այն ոյժն է, որով դիմագծուած է մեր պատմական անցեալը:

Վերցուցէ՛ք հայոց պատմութիւն ստեղծելու առաջին ճիգը: Այրարատը գրաւող տարօնական հայերը, անշո՛ւշտ, իրենց բուն հայրենիք Տարօնի մէջ քաղաքական ոյժ եւ կազմակերպութիւն ունէին: Եւ այդ ոյժը մեծ էր, Հայաստանաստեղծ, հայակերտիչ: Վերցուցէ՛ք Վահագնապաշտութեան խորհուրդը, Արտաշիսեաններու՝ Հայաստանը ազատագրօրէն եւ քաղաքականապէս ամբողջացնելու հսկայաքայլ կորովը: Վերցուցէ՛ք հայոց քրիստոնէացումի բարոյա-քաղաքական խորհուրդը, Մեսրոպի գործի իմաստը, Մամիկոնեաններու անգամ գերմարդկային հայրենասիրութիւնը, հոգեգիտօրէն դեռ չվերծանուած «Սուլթան Ս. Կարապետ» որակում-ըմբռնումի հոգեբանականը, մեր մեծ մատենագիրներու տարօնցիական ծագումը եւ առհասարակ հայ մատենագիրներու տարօնական ոգին:

Այս բոլոր ոգորումները, խռովքները, նուաճումները իրենց եռքը ստացած Տարօնէն եւ յաճախ ծեւակերպումի յանգած տարօնական հայերէն նուաճուած եւ անոնցմով բնակուած Այրարատի մէջ (ուրիշ ի՞նչ բանի մէջ փնտռել Տարօնի եւ Այրարատի զինակցութեան գաղտնիքը) - այո՛, ասոնք է, որ կը կազմեն մեր պատմական ճակատագիրը:

«Պատմական ճակատագիր» հասկացողութիւնը կը նախատեսէ ե՛ւ բնազդը, ե՛ւ գիտակցութիւնը, ե՛ւ անբանականը, ե՛ւ բանականը: Ատիկա լիամփոփ կեանքն է՝ իր բոլոր հոլովոյթներով, որով եւ՝ ներկայի հոգեւոր պատուանդանը եւ ապագայի բանալին:

«Վերածնունդ» կը նշանակէ պատմական ճակատագրի լիակատար վերապրում: Ազգ մը, որ անընդունակ է իր անցեալի մէջ որոնել իր ներկայի խորհուրդը եւ ապագայի ստողը - նման ազգ զուրկ է պատմական զգացու-

մէ, որով՝ նոր պատմութիւն կերտելու կորովէ եւ հանճարէ: Մարդաբան Ֆոն Լուշանը, որ այդքան խնամով (նաեւ բարեացակամօրէն) ուսումնասիրեց մեր ցեղային պատկանելիութեան հարցը եւ ապրող ժողովուրդի կեանքը, մեզ որակեց «քաղաքականապէս յիմար»: Քաղաքական ամեն յիմարութիւն կը պայմանաւորուի նախ եւ առաջ պատմական զգացումի բացակայութեամբ: Յող՝ մեր ինքնախաբէութիւններու, սխալանքներու եւ վերջին հաշւով, աղիտաւոր ձախողանքներու ներքին պատճառը:

Կը թողունք այլեւս, որ հայրենասէր ամեն հայ ինքն անձամբ խորհրդածէ այն մասին, թէ ի՞նչ կրնայ տալ մեզ տարօնականութիւնը, որ իր խորքին մէջ հայոց պատմական զգացումի գիտութիւնն է, ցեղային վերադաստիարակութեան ուսմունքը:

* * *

Ցեղակրօնութիւնը մեր նոր սերունդի տարօնական խռովքն է: Դաշնակցականութիւնը ապրիլ եւ ըմբռնել իբրեւ մեր ցեղի յաւիտենական ոգիի յայտնութիւնը, կրօնականութիւն՝ զգացումի եւ բանականութեան, սրտի եւ մտքի մոլեռանդութիւն դնել ցեղի պայքարը եւ ճակատագիրը վարող կազմակերպութեան մէջ - ահա՛ ցեղակրօնութեան էութիւնը եւ նպատակը:

Նոր սերունդին յատուկ է կեանքը իբր երջանկութեան խորհուրդ եւ ամբողջականութիւն ապրելու մղումը:

Նա մի՛շտ ալ շղթայակցութիւն կը փնտռէ գոյութեան բեւեռներու միջեւ. գիտէ գոյութեան ողջ կարօտով շե՛շտ դնել այն հարցի վրայ, թէ «ո՞ւրկէ կու գանք, ո՞ւր կ'երթանք»:

Նոր սերունդը հաւասարապէս աւանդապաշտ է եւ ապագայատենչ: Նա առեղծուածային հանգոյց է անցեալի եւ ապագայի միջեւ: Գիտէ լալ անցեալի համար եւ մոլեգնիլ ապագայի կարօտէն: Յաւասար խանդով կրնայ սարսռիլ Վարդան Սպարապետի երիվարի պատկերին առջեւ եւ տենչալ օդանաւորդութիւն:

Նա տպաւորումի էակ է նախ, դրոշմուելու անգիտակցական բաղձանք եւ ըստ միջավայրի բարոյական պայմաններու ներազդեցութեան՝ ընդունակ ե՛ւ Յայաստանի համար քաղցրօրէն մեռնելու ե՛ւ սէրէն փխրուելու ե՛ւ համամարդկային գաղափարի մը համար զոհուելու ե՛ւ մանր եսականութիւնը ճակատագիր դարձնելու:

Ցեղօրէն առողջ նոր սերունդը կը նախատեսէ յաւիտենականութեան խանդով օծուն դաստիարակութիւն:

Ի՞նչ է յաւիտենականութիւնը - կրակ՝ անցեալի մոխիրներուն տակ եւ բո-

ցավառում՝ ապագայի հորիզոնին վրայ:

Տարերքի էակցութեամբ կը պայմանաւորուի աշխարհի համասեռութեան ըմբռնումը եւ անցեալի ու ապագայի էակցութեամբ՝ յաւիտենականութիւնը: Ժամանակը ապրումային առաջընթաց մըն է եւ ապրումներու շղթայակցութիւնը, անոնց տրամաբանական ներքին կապակցութիւնը միայն կ'ընձեռնէ ամբողջականութեան, որով եւ՝ յաւիտենականութեան զգացումը:

Ցեղակրօնութիւնը մեր ժամանակներու առաջին կազմակերպուած փորձն է՝ ամբողջական հայ մարդը ստեղծելու - տարօնատիպ հայը:

Անցեալը միայն մոխիր պատկերել ու ապագան՝ անորոշ, մշուշ, խաւար, կը նշանակէ՝ խորտակուիլ ներկայի մէջ: Այդպէս կ'ըլլայ, երբ չկայ ուղիղ ըմբռնում յաւիտենականութեան եւ ամբողջականութեան մասին, երբ ոգին, անցեալը եւ ապագան միմեանց զօդելու տքնութիւն չունի:

Ցեղակրօնութիւնը, ահա՛, այդ տքնութիւնն է: Եւ դա պատմագործումի լիազգաց կարօտ, նպատակ եւ իմաստ ունեցող միակ հոգեշարժն է:

Սպառազինուի՛լ տարօնական պատմական զգացումով, սպառազինուի՛լ ցեղակրօնութեան բերած ամբողջականութեան իդէալով եւ խռովքոտ ապագայատենչութեամբ - ահա՛ հոգեւոր այն զէնքերը, որոնք հայոց մարտական կազմակերպութիւնը կրնան վերածել պատմաստեղծ ոյժի:

Չհասկնալ այս բանը, կը նշանակէ կամ աղքատիկ գոհունակութիւն ցուցահանել ահաւոր եղածի եւ տխուր ներկայի հանդէպ, կամ չհասկնալ ժամանակի ոգին:

Իմաստութիւնը եւ ոգին քաղել տարօնականութենէն, խանդը՝ ցեղակրօնութենէն, եւ գործը վստահիլ դաշնակցականութեան: Ոյժերու այս համադրութեամբ միայն մենք ընդունակ կը դառնանք պատմական գործ կատարելու, ապագայ ստեղծելու:

---

*- Սոյն հօդուածը, որ մասնակի կրճատումներով արտատպում ենք «Տարօնի Արծիւ»-ից (1938թ., թիվ 5-6), «Տարօնականութեան հոգեվերանորոգչական դերը» վերնագրով, որպես խմբագրական՝ գրվել է «Ռազմիկ» թերթում, 1938թ.-ին:

# ՏԱՐՕՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԵՑՈՂՈՒԹԻՒՆ

Տարօնականութիւնը հիմնելով մենք ուզեցինք բարոյական եւ հոգեւոր վերանորոգումի հետ՝ կառուցած տեսնել հայկական աշխարհայեցողութիւն, ազգային ընդհանուր դաւանանք:

Այդպիսի դաւանանք չունի մեր ժամանակների հայութիւնը: Եկեղեցու աստուածաբանական կենսահայեցողութիւնը հանրապարտադիր չէ այլեւս - կան յարանուանութիւններ, կայ նաեւ կեանքի պատմական զարգացումը, որ վաղուց ի վեր խախտած է ո՛չ միայն «հանդերձեալ»ի հաւատը, այլեւ քրիստոնէական զգացումը՝ ընդհանրապէս: Ահա՛ Անգլիոյ եւ Ամերիկայի մէջ ծայր տուած «բարոյական վերազինման» շարժումը, որ ճիգ է վերականգնելու քրիստոնէական բարոյականը, որով՝ խոստովանութիւն, թէ տկարացած է մարդոց կրօնական զգացումը: Հայոց քրիստոնէութիւնը ժամանակ մը նոյնացաւ ազգային սկզբունքին - «հայ-քրիստոնեայ»: Բարձր, շա՛տ բարձր ըմբռնում մըն էր այդ՝ կեանքի բովանդակութեան մասին - մէկը հայոց պատմութեան ամենակենսիմաստ յղացումներէն, գործ առաւելապէս Մամիկոնեաններու, որոնց մէջ հայկականութիւնը յանգած էր բնազանցումի եւ աստուածայինը մարմին ստացած էր:

Առանց էաբանական խորքի իմաստ չունի մարդկային կեանքը: Ո՛ւր էութեան բարձր զգացում կայ, այնտեղ կայ գոյութիւնը բնազանցելու, այսինքն՝ աստուածայինով լեցնելու պահանջ: Ատով էր, որ Մամիկոնեանները ճշմարիտ աստուածապաշտութիւն, անգերազանցելի հայրենասիրութիւն եւ միաժամանակ մեծ հերոսական ստեղծեցին: Քաջ կրնան ըլլալ շատերը, բայց հերոսական կը ստեղծէ միայն նա, ո՛վ իր տքնութեան ու գործի, կեանքի ու մահուան խորհուրդի մէջ կը տեսնէ Աստուծոյ կամքի արտայայտութիւնը: Հերոսը մի՛շտ ալ Աստուծոյ խօսքի առաքեալն է եւ յաւիտենականութեան բանաստեղծը: Ղեւոնդ Երէցը Աստուծոյ հետ կը խօսէր եւ եղիշէն Մամիկոնեան մարդու հերոսականի իմաստը կը տեսնէր «իմացեալ» մահուան մէջ: Աստուծոյ հետ խօսո՛ղը միայն կրնայ «իմացեալ մահ» ունենալ եւ նմանը միայն ընդունակ է երկրի վրայ անմահ գործեր երկնել:

Ստեղծագործ են այն ազգերը, որոնց էաբանական խորքը ոգեշնչած գաղափարներու եւ հասարակական կազմակերպութեան ձեւի միջեւ հակասութիւններ չկան:

Նա՝ ո՛վ սուրը Աստուծոյ անունով եւ Հայրենիքի համար չէր վերցներ, կրնար ծագումով Մամիկոնեան ըլլալ, բայց բարոյապէս երբե՛ք պատկանիլ

այդ ընտանիքին:

Մամիկոնեանը նախ եւ առաջ աշխարհայեցողութեան մարդ է: Ատոր համար ալ անոր գործունէութեան մէջ կայ բարոյական հետեւողականութիւն: Մամիկոնեանի մօտ դուք չէք տեսներ գաղափարաբանական պատեհապաշտութիւն: Մետաղեայ կուռ համոզումներու տէր էակ է ան եւ անոր բոլոր կառուցումները դրուած են բարոյական ժայռի վրայ:

Դարձէ՛ք դէպի օրուայ մեր իրականութիւնը եւ դուք պիտի տեսնէք խարխափումներ եւ հակասութիւններ: Միեւնոյն կազմակերպութիւնը իր շարժումը կը սկսի Հայաստանի անկախութեան նշանաբանով, իր գաղափարաբանութիւնը կը հիմնաւորէ մարքսական նիւթապաշտական վարդապետութեամբ, կը կռուի հայ ազգի փրկութեան համար, կը քարոզէ համերաշխութիւն իր ժողովուրդը ճնշող եւ խոշտանգող թուրք տարրի հետ, ցոյցեր կ'ընէ յոյսը դնելով եւրոպական պետութիւններու միջամտութեան վրայ, կը միանայ այս պետութիւններու կառոյցին սպառնացող Եւրոպայի ընկերվարական կազմակերպութիւններուն եւ օր մըն ալ ներկայ Խ. Հայաստանը կը դաւանի «ազատ», «անկախ», «երջանիկ» հայրենիք եւ Հայկական Դատը՝ լուծուած:

Այս խարխափումները եւ հակասութիւնները յատուկ չեն միայն հնչակեաններուն: Առհասարակ հայութիւնը զուրկ է քաղաքական նպատակի եւ գաղափարական համոզումներու կայունութենէ, հետեւողականութենէ: Նոյն անձը մէկ երեսով կը ներկայանայ ցեղապաշտ, միւսով՝ ընկերվարական, մէկով՝ իդէալիստ, միւսով՝ մատերիալիստ, մէկով՝ Մեծ Հայաստան երազող, միւսով՝ կովկասեան կոնֆետերացիայի մէջ միակ ելքը տեսնող, ընկերային երեսով՝ թշնամի բոլշեւիզմին, քաղաքականով՝ բարեկամ: Այս քաոսի պատճառով ստեղծուած է օրուայ անվճռական հայը: Բարոյական անկայունութիւնը կը ստեղծէ մտածումի ցրուածութիւն, երկրորդը՝ նպատակի անորոշութիւն, իսկ վերջինը՝ ճիգի, գործունէութեան աննպատակութիւն:

Մտածումի ցրուածութեան անմիջական արդիւնքներէն մէկն է նաեւ «ես»ի ներքին պառակտումը, ինչպէս եւ հասարակական կամքի բեկորացումը եւ հատուածապաշտութիւնը: Օրուայ հայ կեանքի պառակտումները հետեւանք են ազգային ընդհանրարժէք եւ հանրապարտադիր աշխարհայեցողութեան չգոյութեան: Բաւական չէ միութիւն քարոզել, պէտք է գտնել կառուցողական նիւթերը, միջոցները - հոգեւոր զէնքերը: Միութիւնը կը կառուցի: Կը կառուցին բոլոր ճշմարտութիւնները: Ճշմարտութիւնը հնարաւոր է, երբ գոյիմաստ խօսքի մը շուրջ կը հիւսին շարք մը աններհակասելի դատողութիւններ: Միութիւնը կը կառուցի, երբ կայ հանրապարտադիր նպատակը, նաեւ բարոյական բռունցքը, որ ծգողական իր կարողականու-

թիւնը կը ստանայ էաբանական խորքէ մը: Երէկ եկեղեցին միացուցիչ ոյժ էր, որովհետեւ զօրաւոր էր հայ մարդու կրօնական զգացումը: Որո՞նք են օրւայ հայի տիրական զգացումները: Ինչի՞ շուրջ կարելի է կեդրոնացնել հայութիւնը:

Նախ՝ հայ մտաւորականութիւնը չունի գիտական պատրաստութիւն (արժանաւորները թող ներեն մեզ) եւ ընդունակ չէ մետաֆիզիկական խորքով եւ պատմա-իմաստասիրօրէն հիմնաւորուած հայկական աշխարհայեցողութիւն ստեղծել: Մեր քաղաքական կազմակերպութեանց ծրագիրները օտար ճշմարտութեանց թարգմանական խառնարաններ են: Այդտեղ կան հայկական նշանաբաններ, բայց ո՛չ հայկական գաղափարախօսութիւն: Բոլորը կը սկսին «մարդկութիւն», «մարդկային» բառերով եւ հայ զանգուածի փրկութիւնը կը տեսնեն ընկերային բարենորոգումներու մէջ: Այդ ընկերային պահանջները չեն բղխիր Հայաստանի առաւելապէս երկրագործական նկարագիրէն, այլ՝ Եւրոպայի բանւորական դասակարգի պայմաններէն: Փոխուած են Հայաստանի ազգագրական պատկերը, քաղաքական վիճակը, անգամ Եւրոպայի պայմանները, բայց եւ այնպէս մենք կառչած կը մնանք հին «դասակարգային» մտածումին:

Անստեղծագործ է այդ մտածումը եւ իր բնոյթով՝ զանգուածը պառակտող: Դասակարգային վարդապետութիւնը կը ստեղծէ «ընկերային շահակիցներ», բայց ո՛չ ճակատագրի եղբայրներ: «Դասակարգ»ը կը նախատեսէ շահակիցներու միութիւն, որ իր խորքին մէջ հակազօր է ազգային օրգանիզմի ընկերային մասնատումին: Մի՛ ըսեր «հայ աշխատաւորութիւն», «հայ քաղքենիութիւն», «հայ աւատատէր», «հայ կղեր», ազգը մի՛ պատկերեր ներքուստ պառակտուած, այլ ըսէ՝ «յաւիտենական հայկականութիւն», «հայութիւն»: Ամբողջականութեան զգացո՛ւմը միայն կրնայ քեզ մղել օրգանական միութեան գիտակցութեան պահանջին: Քանի դեռ հատուածապաշտ ես՝ կեղծ են բոլոր քո քարոզները՝ միութեան մասին: Քանի դեռ ներքուստ միազգաց, ընկերօրէն ամբողջազգաց չես՝ ունայն են եւ ինքնախաբէութիւն քաղաքական քո բոլոր գործերը: Միութիւնը կը ստեղծուի ո՛չ թէ կողմերու, հատուածներու սակարկութիւններով, այլ ընդհանուր նպատակի մը, արժեքի մը ենթարկւելու բացարձակ կամքով: Ո՛ւր հատուածներ, դասակարգեր կան՝ այնտեղ չկայ նպատակի, արժէքի ընդհանրութիւն, ուստի եւ՝ ճշմարտօրէն հայրենանպատակ քաղաքականութիւն, որովհետեւ սա, ամեն բանէ առաջ, ընդհանրական ապագայի մտահոգութիւն է: Մենք չգիտենք՝ ընկերային ի՞նչ դիրք, բախտ, ճակատագիր կ՛ունենան մեր որդիները եւ ասոնց յետնորդները, բայց մենք գիտենք, որ անոնք հայասերունդ են եւ կ՛ուզենք, որ բոլոր պարագաներուն անոնք մնան այդպիսին - հա՛յ: Ըն-

կերային վիճակը, դիրքը անցաւոր են, կա՛յ միայն ոգիի եւ արիւնի յաւիտենականութիւն: Եւ կենսաբանօրէն առողջը ա՛յն ժողովուրդն է, որ արթուն բնազդ ունի իր տեսակի յաւերժացման համար: «Տեսակ» հասկացողութիւնը կենսաբանական է եւ ո՛չ ընկերային: Այդ կը նշանակէ՝ կենսաբանական որակները՝ ոգին, արիւնը, կրնան կազմել գոյիմաստ աշխարհայեցողութեան մը հիմքը եւ ո՛չ թէ պատմական կամ ընկերային որեւէ մտածում, գաղափար, բովանդակութիւն կամ ձեւ: Այդ կը նշանակէ նոյնպէս, որ առողջ, ուստի եւ՝ պատմաստեղծ է ազգային, քաղաքական, հասարակական ա՛յն կազմակերպութիւնը, որ իր կենսազգացութիւնը, բարոյական հրամայականը, նպատակադրութիւնը, գաղափարախօսութիւնը, ճշմարտութիւնները, համոզումները, տեսիլքները եւ գործելու կամքն ու մեթոդը կը ստանայ իրեն հարազատ էաբանական խորքէն՝ ցեղէն:

Որեւէ աշխարհայեցողութիւն պիտի ունենայ իր բնազանցական խորքը: Առանց վերացումի չկայ ընդհանուր դատողութիւն, առանց վերջինի՝ ընդհանրապարփակ ճշմարտութիւն: Աշխարհայեցողութիւնը նախ եւ առաջ այդպիսի ճշմարտութիւն մըն է: Մենք ընդհանրացումի, վերացումի կ'ենթարկենք նիւթական երեւոյթները եւ «նիւթ» ընդհանուր հասկացողութեամբ կը յօրինենք «մատերիալիստական» աշխարհայեցողութիւնը: Հոգեւոր որակներու բացարձակումով մենք կը հիմնաւորենք «իդէալիստական» (աւելի ճիշդը՝ «սպիրիտուալիստական») աշխարհայեցողութիւնը: Ասոնցմէ մէկը «քանակական» ըմբռնում է, միւսը՝ «որակական» - նիւթ եւ ոգի: Ասոնց զուգադրութեան կամ հակադրութեան ըմբռնումով՝ մենք կը յօրինենք «դուալիստական» աշխարհայեցողութիւնը:

* * *

Ցեղի մէջ մենք կը հանդիպինք երկու այդ գոյարմատներու կենսաբանական ներդաշնակութեան: Ժառանգականութեան օրէնքով մենք այդտեղ կը հաստատենք նաեւ ոգու եւ նիւթի (արեան) անսպառելիութիւն: Այս անսպառելիութիւնը ապացոյց է, որ ցեղը էաբանական խորք է: Անկէ կը բղխին ազգութիւնը, որ առաւելապէս որակային՝ մշակութային-ոգեկան ըմբռնում է եւ ժողովուրդը, որ առաւելապէս քանակական, կենսաբանական գումարի, հաւաքի հասկացողութիւն է: Ասով պիտի բացատրել այն երեւոյթը, որ խառնւածքով իդէալիստ մարդը սովորաբար ազգայնական է, մինչ մատերիալիստը՝ ընկերապաշտ է, ժողովրդական, դասակարգազգաց: Ազգայնականի համար խանդի եւ իմաստութեան աղբիւրը ոգու հերոսագործութիւններու պատմութիւնն է, ժողովրդականը՝ կեանքի մեծագոյն արժէքը կը տես-

նէ ներկան շահագրգռող ընկերային գաղափարներու մէջ:

* * *

Մինչեւ տարօնականութիւնը՝ հայ մարդը շա՛տ քիչ անգամ առիթ ունեցած է զբաղիլ իր կեանքի էաբանական հարցերով: Նա ապրած ու գործած է օտար ճշմարտութիւններով, յարատեւօրէն ենթակայ զգացումի եւ բանականութեան ներքին հակասութեան: Ո՛ւր չկայ էաբանական խորքի եւ որդեգրուած բանական համոզումներու հարազատութիւն եւ ներդաշնակութիւն՝ այնտեղ չկայ կամքի նպատակաիմաստ ուղղութիւն, որով եւ՝ պատմաստեղծ ճիգ ու գործունէութիւն:

Յին հայերն ունէին իրենց դուալիստական աշխարհայեցողութիւնը (շեշտը դրուած ոգեկան կողմի վրայ): Քրիստոնէական մոնոֆիզիստական (միաբնութենական) դաւանանքը երկրէն կտրելու աստիճան «ոգիացուց» հայ մտածումը: Այստեղ՝ գլխաւոր պատճառը, որ մե՛նք եղանք քրիստոնէութեան համար ամենէն շատ արիւն թափողը, բայց գործնականապէս անկէ ամենէն քիչ օգտուողը: Նոր ժամանակներուն՝ Դաշնակցութիւնը գնաց իդէալիստական գծով (թէպէտեւ ծրագրի մէջ խօսքեր կան դուալիզմի եւ համադրական մոնիզմի մասին), հնչակեանները՝ մատերիալիստական (թէպէտեւ գործունեութիւնը վիպապաշտական էր), բոլշեւիկները տեսութեամբ ու գործով՝ մատերիալիստական: Մատերիալիստական ուղղութիւնը օտարամուտ է եւ հակասութեան մէջ՝ հայկական էութեան հետ: Այստեղ՝ պատճառը հնչակեաններու վաղաժամ քայքայումին եւ ա՛յն փաստին, որ բոլշեւիզմը չի հարազատիր հայ զանգուածի՝ մասնաւորապէս ցեղօրէն արթուն տարրի կողմէ:

Գաղափարախօսական մեր բոլոր խարխափանքները, քաղաքական սխալները, կազմակերպական թերիները պայմանաւորուեցան անով, որ մենք չունեցանք հայկականօրէն հիմնաւորուած աշխարհայեցողութիւն: Անծանօթ մեր էաբանական խորքին - ցեղին՝ իմաստութիւնը եւ ուղղութիւնը չառինք հայոց անցեալը վարող ոյժերէն, այլ՝ Եւրոպայի ներկան խռովող ընկերային հոսանքներէն: Այդ հոսանքները սնանկացան Եւրոպայի մէջ, իսկ մենք կորսնցուցինք նաեւ Յայրենիքի եւ ժողովուրդի մեծ մասը եւ ասոր հետ՝ կամքի եւ մտքի կեդրոնացման ընդունակութիւնը: Բայց կառչած մտաւոր հին նախապաշարումներու, մենք կը շարունակենք մնալ բազմագաղափար, բազմանպատակ, բազմուղի, ուստի՝ հատուածամոլ, ցրուողական եւ քաղաքականապէս՝ անստեղծագործ:

Բոլոր պատմակառուցումներու առաջին պայմանը հոգեկան ույժերու կեդրոնացումն է եւ ամբողջականութեան զգացումը: Մէկը ճակատագրական քայլերէն դէպի ոգեկան կեդրոնացումը եւ ուժաստեղծումը՝ նոր աշխարհայեցողութեան կառուցումն է: Քանի դեռ պակասաւոր էր հասկացողութիւնը կենսաբանութեան մասին՝ մարդիկ կը խօսէին «բացարձակ»ներէն: Այդ տիեզերապաշտութիւնը մեր ճակատագիրը կը ստորադասէր գերբնականին, ընդհանուրին: Գերբնականը անկենսաբանական յաւիտենականութիւնն էր եւ ընդհանուրը՝ մարդկութիւնը: Յաւիտենականը կ'ապրէր որպէս նախախնամութիւն, կամք տիեզերական մեքենականութիւն յինքեան, իսկ մարդկութիւնը՝ որպէս վերացական գաղափար: Էապէս սա համազօր էր բնական կապի խզումին՝ կենդանի մարդու եւ Աստուծոյ, անհատական անցաւորութեան եւ տեսակի յաւիտենականութեան միջեւ: Մարդու կրօնական զգացումի աղարտման գլխաւոր պատճառներէն մէկը «մարդկութիւն», «մարդկային» վերացական հասկացողութիւնները կուռք դարձնելն էր: Այս է պատճառը այն իրողութեան, որ աշխարհաքաղաքացիական բոլոր ոգորումները, ի վերջոյ, կը յանգին անկրօնութեան:

Մենք մատնանշեցինք մեր նոր աշխարհայեցողութեան էաբանական խորքը - ցեղը: Որպէս կենսաբանական ըմբռնում՝ դա կը նախատեսէ բնական կապ մարդու եւ յաւիտենականութեան միջեւ: Ոգիի գծով՝ դա մեզ կ'առաջնորդէ դէպի աստուածայինի կենդանի զգացումը, արիւնի գծով՝ դէպի կեանքի յաւիտենականութեան զգացումը: Ո'ւր յաւիտենականութեան առողջ զգացում կայ, այնտեղ ներկայ է Աստուծոյ կամքը: Իր խորքին մէջ, ցեղը Աստուծոյ կամքի արտայայտութիւն է: Դա նաեւ օրգանական միութիւն է ոգիի եւ նիւթի, որով՝ բնօրէն համադիր աշխարհայեցողութեան խարիսխ:

Ցեղն է միայն ընդունակ դնել յաւիտենական, սրբազան եւ զօրութենաւոր նպատակ: Ցեղի յաւիտենական խնդիրը Հայրենիքն է: Ցեղի համար դա ո'չ թէ շահագործելի հող է եւ աւելի լաւ ապրելու միջոց, այլ՝ էութեան պահանջ: Հայրենիք տենչալով, մենք աւելի կ'ուզենք Մասիսի ճակատը տեսնել, քան Արարատեան դաշտի մէջ բամպակ մշակել: Մեր նախահայրերու սրբատաններն եւ գերեզմանները ծգողական աւելի մեծ խորհուրդ ունին, քան Մշոյ, Կարնոյ կամ Վանայ շուկաները:

Տարբեր են ցեղի եւ ժողովուրդի բարոյական բովանդակութիւնները: Ժողովուրդը մի'շտ ալ առօրեայի մտահոգութիւն է, ցեղը՝ էութեան տանջանք: Տանջանքով շաղախուած նպատակը միայն կրնայ շարժման մէջ դնել մեր ողջ էութիւնը: Դաւանելով ցեղային աշխարհայեցողութիւն, մենք մեզ ամբողջացած պիտի զգանք՝ որպէս ներքին մարդ եւ ընկերութեան անդամ: Ներքին ամբողջականութեան զգացումը ինքնին ույժերու կրկնապատկում է

անհատի մէջ եւ հասարակական ներդաշնակութեան, ազգային օրգանական միութեան պահանջ:

Ցեղի առաջին հրամայականն է՝ հայրենատիրութի՛ւն: Այդ կամքով վերցո՛ւր սուր, գրիչ, բահ, ինչ որ կրնաս: Բոլոր պարագաներուն դու նպատակի զինւոր ես եւ ճակատագրի եղբայր անոնցմէ ամեն մէկուն, որոնք տքնած են, կը տքնին ու պիտի տքնին յաւիտենական Հայաստանի համար:

Այդպէս գործելով՝ դու քո մէջ պիտի զգաս ներկայութիւնը Մամիկոնեան հայու: Դա արդէն բարոյական սպառազինութիւն է եւ յաղթանակի ապահովութիւն:

*«Տարօնի Արծիւ», 1939թ., թիվ 11*

# ԴԱՐՁ ԴԷՊԻ ՈԳԻՆ

Մեռնել, բայց չտեսնել Հայրենիքը պարտւած: Յաղթանակից կեանքի բարոյական կանոն յօրինել, պարտութիւնը ստեղծագործաբար ողբերգել եւ դրանից՝ մեծագործումի նոր ոյժ եւ խանդ երկնել:

Այդպէս չէ՞ր երբեմն հայը:

Ասում ենք՝ այդպէս էր, ուզում ենք էլի՛ այդպէս լինի եւ քարոզում ենք տարօնականութիւն:

Մեր առաջ, սակայն փռւած է հոգեւոր վերջալոյսի մի պատկեր: Վերջալոյսին՝ քնի կարօտից յօրանջում են ստւերները: Մեծ ստւերը՝ գիշերը, արդէն մայրն է քնաբեր առաքինութիւնների: Ստւերները յօրանջում են - «հին հայը վաղուց է մեռած»:

«Ոգին մահ չունի»,- ասում ենք մենք:

Ոգու մահւան հաւատում են վերջալոյսին ստւերօրէն սպառւածները: Նրանք՝ որ բռնւած են վախճանի տենդով: Ապրելու ազահութիւնը եւ մահւան զգացումը - միեւնոյն տոպրակում սրանք դեղնում են, ինչպէս աշնան տերեւները: Ամեն բան չի դեղնում կատարելութիւնից - շատ բան դեղնում է սպառումից: Դեղին երգերի բանաստեղծները, շա՛տ անգամ, քուն են քարոզում - ցաւագին ճիչ եւ ծանծրոյթի աղօթք:

Քնաբեր ամեն խօսք, մտածում եւ աղօթք վախճանի կարօտ է, վերջինը՝ տկարութիւն, իսկ տկարութիւնը՝ կենսագործ բոլոր ճշմարտութիւնների թշնամին:

«Արթնացի՛ր, Հայաստա՜ն - օրերի զանգահարումը խռժռում է հոգով մեռածներին: Արշալոյսի կանչը - դա մեծագոյն թշնամին է յոգնած-պարտասածների: Ստւերները ձայն չունեն, բայց նրանք ընկերներ են շարժւող կեանքի: Նրանք ունեն իրենց համր երանութիւնը - ուզում են քնել: Շարժումների թշնամին մի՛շտ էլ ստւերոտ մի էութիւն է:

Տարօնականութիւնը ոգու շարժում է, նոր կեանքի խօսք: Դա ունեցաւ իր թշնամիները - մահապաշտները, ստւերային էութիւնները, նրանք, որ տաժանքով են քայլում կեանքը փոթորկող ոյժերի հետ, ստւերի տաժանքով:

Մենք ասում ենք. «Ոգին անմահ է»:

Բայց երբեմն ոգու կայծը՝ հոգին աւելի՛ շուտ է մեռնում, քան մարմինը: Անմահ է միայն ժամանակը բոցավառող, տարածութիւնը նւաճողաբար ծծող ոգին, ստեղծագործը:

Յիսուսն էր ասում. «Մինչդեռ յաշխարհի եմ, լոյս եմ աշխարհի»: Ստեղծագործ ոգին միշտ էլ աշխարհում է եւ լուսագործում է:

Ժամանակը ոգեսպառի համար անջրպետ է, ոգու կրողի համար՝ կապ: Ժամանակներն իրար են կապւում յաւիտենականի զգացումով - անցաւորը յաղթահարող ոգու ճիգով: Մամիկոնեաններից անցել է մէկուկէս հազարամեակ. հայ բոլշեւիկները տիրում են այսօր: Բայց նրանք մեզ աւելի՛ մօտ են թւում, քան վերջինները: Այդպէս չէ միայն նրանց համար, որոնք ժամանակը ըմբռնում են որպէս իրար հակասող դէպքերի մի շարժ, որպէս անցումների մի քաոս:

Ժամանակը հոգեբանական առաջընթաց է: Բարոյապէս աճող մարդու համար՝ նրա արժէքները, հոգեւոր բովանդակութիւնները աճում են այդ առաջընթացի հետ: Հայօրէն անկարելի է հերոսանալ առանց Մամիկոնեան մի հսկայ կենդանիօրէն պատկերելու: Հերոսականը ժամանակները յաղթահարող պատկերում է: Հրէութեան հզօրանքի գաղտնիքը նրանում է, որ ամեն հրեայի սրտի մի անկիւնում կենդանիօրէն տրոփում է Մովսէսը: Ոգու բոլոր նահանջները առաջ են գալիս ժամանակի մասին ունեցած անկենսաբանական ըմբռնումից: Հակասութիւնները պարտութիւն են վիժում: Կա՞րսը - այդ պիտի չունենայինք, եթէ այնտեղ ճակատող հայկական բանակը չապրէր իր եւ Վարդանների ոգու հակասութիւնը, եթէ ժամանակը յաղթահարելով՝ նա կարողանար անցումի իր երանութեան մէջ դնել Մամիկոնեանավայել հերոսական: Բոլոր պարտութիւնները արդիւնք են պատմական ոգու աղօտումին - նախ՝ դրան:

«Յեղաշրջւած ոգին է յեղաշրջում իրականութիւնը»,- ասում ենք մենք: Իւրաքանչիւր ազգ ապրում է ճակատագրական մի նշանախօսքով: «Յիշի՛ր մահը»,- ասում է մի ժողովուրդ, եւ դրանով էլ բարոյակարգում իր ընկերային կեանքը: «Յիշի՛ր Մամիկոնեան հայը»,- ասում ենք մենք, որովհետեւ ուզում ենք յաղթահարել պարտւողականութիւնը, փոխել, յեղաշրջել ճակատագիրը: Ուզում ենք տարագրութեան ցաւն ու ամօթանքը վերածել հայրենատիրումի, հզօրանքի կամքի: Մեծագոյն ստորնութիւնների ընդունակ ժողովուրդը, ընդունակ է նաեւ գերագոյն հերոսականի: Մեծ անկումներն էլ գործ են հուժկու խառնւածքի: Միեւնոյն խառնւածքի բացասական արտայայտութիւնը կարող է ա՛յնքան անկումնային լինել, որքան դրականը՝ վերացնող: Ոգու ծգողական եւ վանողական կարողութիւնները ծագում են միեւնոյն արմատից: Իբր հոգեբանական տիպ՝ հրեան ե՛ւ բեւեռացած ստորնութիւն է ե՛ւ բեւեռացած նւիրում: Ժողովուրդներ կան, որոնց համար ստորնութիւնը ինքնապաշտպանութեան ամենահատու զէնքն է: Կան էլ, որ առանց դրական բարոյականի՝ փլուզւում, ոչնչանում են: Հայը ընդունակ չէ ոգու երկու ուղղութիւններ կրել իր անձի մէջ: Մեր այս հոգեգծով մենք հակապատկերներ ենք հրեայի: Այդ է պատճառը, որ օտարութեան մէջ մենք չենք կարող օգտել նրա ցեղային ինքնապաշտպանութեան մեթոդից: Նա մոռա-

նում է լեզուն, ծպտւում է իբր ոչ-հրեայ, բայց Թալմուտի մի բառով պահում է ցեղային ներքին կրակի մոլեգնութիւնը: Ծպտումի ընդունակ հային չի կարող փրկել ամբողջ «Նարեկ»-ը: Հրեան յօրինում է համամարդկային գաղափարներ, խառնում է ազգերը իրար եւ յաճախ հանդիսատես դառնում իր «թալիսման»ով փոթորկւած աշխարհի խելագարութիւններին. հայն ինքն իր մէջ փխրւում, այլասերւում է, հէնց որ բռնւում է օտար մի հովից: Հայը «միջազգային» ասպարէզի էակ չէ: Փաւստոսի այլաբանութեամբ՝ նա իր Արշակ թագաւորի նման հզօր եւ ազատահոգի է միայն իր հողի վրայ: Հայրենիքն է նրա ինքնապաշտպանութեան միակ զէնքը:

«Դա՛րձ դէպի Երկիր»,- ասում ենք մենք: «Ո՞րն է այդ պայմանների ո՞րը»,- հարցնում են իրենց կեանքում ընդհանրապէս պայմաններով ապրողները, սակարկողները: «Պատմական բոլոր իրականութիւնների հեղինակը եւ ստեղծիչը ոգին է»,- ասում է տարօնական մեծ հայերի հերոսականը: Այդ է ասում նաեւ մեր ժամանակների գիտութիւնը:

«Հոգեվերանորոգում եւ ճշմարտութիւնների յեղաշրջում» - ահա՛ առաջին քայլը դէպի նոր ճակատագիրը: Որպէսզի մի բան փոխւի՝ նախ պիտի կամենալ, որ փոխւի: «Կամենալ»ը հոգեւոր որակ է: Ոգու ամեն ճիգ որակ է: Այդ է պատճառը, որ ոգու ներգործութիւնն է իմաստաւորում բնութեան ամեն մի երեւոյթը եւ պատմութեան դէպքերը:

Տարօնականութիւնը հոգեվերանորոգչական շարժում է, որով եւ՝ կեանքը իմաստաւորելու ճիգ: Նիցշէն ասում էր. «Գերմարդն է երկրի իմաստը»: Մենք ասում ենք. «Հայաստանն է հայ մարդու իմաստը»: Այսպէս ասելով՝ մենք ընդունում ենք Սամիկոնեան մի ճշմարտութիւն: Ծագում են հարցեր. «Ինչո՞ւ այս ճշմարտութեամբ գործող հայը հզօր էր: Ինչո՞ւ տկար է այսօր հայը: Ո՞րն է օրւայ հայի ճշմարտութիւնը: Մենք չկործանւեցի՞նք այն ըմբռնումից, թէ հայրենիքը միջոց է»:

Կեանքի լրջագոյն հարցերին մարդիկ պատասխանում են ըստ իրանց նկարագրի, խառնւածքի, բարոյական խորքի: Յոռետեսի կարծիքով՝ կեանքը մահւան առաջընթաց է: Մեզ համար՝ կեանքը մահւան յաղթահարելու ճիգ է: Վախկոտի կարծիքով՝ չկայ աւելի մեծ յանցագործութիւն, քան հերոսականի պահանջը: Եսականը «նւիրում» բառը հասկանում է որպէս պատուհասումի պատգամ: Ձեռծահոգի էակը որոգայթ է լարում ճշմարտութեան դէմ: Յիսուսին խաչում են իր քարոզած գաղափարների սարսափից: Նոր գաղափարներից սոսկում են հոգեպէս սպառւածները: Անկումի երանութեան զոհերին՝ հզօրանքի խօսքը թւում է մահապատիժ: Տկարութիւնը գիտակցական սարսափ է մահից եւ անգիտակցական մահաբաղձութիւն: Տկարի չարութիւնը - դա գերեզմանափորի հոգեւոր զէնք է: Գերեզմանափորը հոգեբանական եղկելի այն տիպն է, որ մահու սարսափից մահւան դէպ-

քերը օգտագործում է որպէս ապրուստի միջոց: Մեծ գաղափարների մանր թշնամիները միշտ էլ ունեն գերեզմանափորի հոգեբանութիւն:

Յասկանալի է, որ տարօնականութիւնը իբրեւ ոգու շարժ եւ կենսանորոգումի ճիգ՝ պիտի անհանգստացնէր հոգեւոր գերեզմանափորներին, նաաստութեան երջանիկներին, իրենց անձերի բարոյական դիակնացումը առանց ցնցող տագնապի տեսնող-ապրողներին:

Մեծ գաղափարները յղութիւն են ստանում կեանքի մեծ ճգնաժամերից: Ամեն ճգնաժամ տալիս է իր զոհերը: Դրանցից է առօրէական ապրումներին գերի մարդը - յաւիտենականութեան ատամնաթափ այդ թշնամին:

Ծանր է մեզ համար չոր ճշմարտութիւններով խօսել, բայց ճշմարտութիւն է, որ յաւիտենականութեան գծի վրայ առօրէական արժէքները եւ նրանց կրողները չեն մեռնում, այլ՝ սատակում են:

Մենք սոսկում ենք առօրէականին գերի դարձող գաղութահայութեան ճակատագրից:

Մենք ասում ենք, որ հայը մէ՛կ տեղ միայն կարող է իմաստալից մահ ունենալ - Երկրի ճանապարհին: Եւ մէ՛կ տեղ միայն իմաստալից կեանք - Յայաստանում:

Ոմանք կարող են այս բանը չհասկանալ: Տգիտութիւնը յանցանք չէ, եթէ դա օժտուած չէ չարութեան դինամիզմով: Դա անշո՛ւշտ, մի ոյժ է - ա՛յն ոյժը, որ հոգեւոր լէշեր է ստեղծում եւ թմբում կեանքի հոսանքը: Կանգ առնել անգամ տգիտութեան զոհերի առաջ եւ խաչ հանել - դա ամեն բարոյաշունչ մարդու պարտականութիւնն է: Բայց չմաքրել կեանքի ուղին - դա միայն բարոյապէս սպառուածների տկարութիւնն է:

Չարութեան դինամիզմը պատմականօրէն անստեղծագործ է ա՛յն պատճառով, որ նրա կրողը մեծ նպատակների ծարաւ չունի: Դա, երբեմն, յաջողութիւններ է շահում, բայց յաղթանակի նւաճումը մի՛շտ էլ վերապահուած է դրականօրէն ստեղծագործ ոգուն:

Տարօնականութիւնը մեր ցեղի դրական հոգեզծերի շարժն է: Դա յաղթանակի վստահութիւն է:

Ճանաչում ենք մեր իրականութիւնը, որում ոգու սպառումը կասկածամտութիւն է վիժում, իսկ վերջինը՝ դաւ եւ ուրացում: Գիտենք նաեւ , որ ամեն մի ոչնչութիւն գոյութեան մի սկզբունք ունի - արժէք ստանալու նպատակով բացասել մեծ գաղափարները, ժխտել բաներ, որոնց մասին հասկացողութիւն չունի, եւ տրորել իսկական արժէքները: Առօրեան մի՛շտ էլ մանրագործ հերոսներ է վիժում եւ յաւիտենականութիւնը մի թշնամի ունի - առօրեայի «հանճարը»:

Ովքե՞ր են գործում մեր դէմ - մեր ցեղը հայրենատէր եւ յաւերժական դարձնելու ճիգի թշնամիները. «ռէալ պայմանների» փոխասացները: Բայց

մենք առանց լապտերի չենք իջել մութ փողոց, ո՛չ էլ առանց զէնքի՝ պատերազմի դաշտ: Մեզ առաջնորդող լոյսը մեր պատմութիւնը վարող ոգեկան ոյժերի իմաստասիրութիւնն է, մեր զէնքը՝ Մամիկոնեանների բարոյականը: Հրամայողաբար մերժել որեւէ ներքին պայքար, ո՛չ թէ չափուել տկարութեան ու տգիտութեան հետ, այլ միայն վերանորոգող լոյս եւ հզօրանքի բարոյական բաշխել նրանց, որոնք տառապում են հարցից - «ինչո՞ւ, ինչո՞ւ այսպէս եղան հայն ու Հայաստանը»: Ցեղակրօնութիւնը միայն հզօրանքի ուսմունք չէ, այլ նաեւ ներցեղային սրբութեան փիլիսոփայութիւն, այսինքն՝ ոչ-սովորական բարոյագիտութիւն: Դա միաժամանակ Աւետարանի ողբերգանքը չէ. «Յիւրսն եկն եւ իւրքն զնա ոչ ընկալան»: Դա մի ուսմունք չէ «բոլորի եւ ոչոքի համար», այլ՝ միայն ընտրեալների: Դա կանչ է՝ ուղղուած միայն նրանց, որոնք ընդունակ են բարոյական նորոգումի:

Հոգենորոգչական շարժումը նախատեսում է ընտրանի: Ընտրանին նա է, որ սրտի կսկիծով ապրում է տխուր ներկան եւ հոգու աչքով տեսնում երջանիկ ապագան:

Տխուր չէ՞ մեր ներկան: Անհրաժեշտ չէ՞ երջանիկ ապագայ: Եւ ներկան մի բան չէ՞, որ պիտի յաղթահարուի: Ապագան չի՞ նուաճւում տագնապալի մարտնչումներով: Յաղթահարող, նուաճող ոյժը ո՞րն է: «Պատմազգաց ոգի՛ն»,- ասում ենք մենք: Միայն դա՛, պատմազգաց ոգին է ընդունակ պատմութիւն երկնելու:

Ցեղակրօնութիւնը, ահա՛, այս ոգու իմացումն է. եւ այդ նոյն ոգին վերանորոգաբար մշակելու աշխատանքը, ճիգը: Նրանք, որ այս բանը չեն հասկանում, ոգու թշնամիներ են՝ խառնուածքով:

«Կենդանեաւ մերով տեսաք զդիակունս անձանց մերոց»,- այսպէս էր ասում Եղիշէն: Այդ ողբերգութիւնից Մամիկոնեան հայերը ստեղծեցին նոր հերոսական: Պիտի ստեղծենք ե՛ւ մենք: Դա՞ւը, թշնամա՞նքը - թո՛ղ շարունակեն նրանք, որոնք ապագան չեն տեսնում: Ապագան տեսանողներինն է:

Ապագան տեսնում են նրանք, որոնք անցեալն ապրում են իբր ոգու յայտնութիւն, եւ պատմական արարչագործումը՝ իբր ոգու արժէքների շեղջաւորում:

Մեր ճշմարտութիւնները տեմպերամենտային ճշմարտութիւններ են - նրանք աճում են եւ աճման կամքը ներբնակ է: Միայն ոգու զգացողական ոյժերն են ներբնակ: Ոգում գործում է տիեզերաստեղծ ոյժի - դուք ասէք՝ Աստուծոյ - կամքը: Առանց մետաֆիզիկայի եւ օնտոլոգիայի,- բնազանցութեան եւ էաբանութեան,- կարելի չէ հասկանալ ոգին: Իրերի հիմքը այն չէ, ինչ տեսանելի է պարզ աչօք: Ոգին ընդհանրապէս մատչելի չէ զգայնութեանց: Նրա ճշմարտութիւնները խո՛ր իմացաբանական են, էաբանական: Պատմութիւնը ռէալ դէպքերի արձանագրութիւն չէ, այլ՝ ոգու յայտնութիւն:

Առանց ոգու իմացութեան՝ կարելի չէ hասկանալ պատմութիւնը: Աննն բան չի լինում գիտացեալ իրերի կամքով: Շա՛տ բան, եւ ճակատագրականը, լինում է անգիտակցականի - դուք ասէք՝ Աստուծոյ - կամքով: Յաղթանա՞կ - դա հնարաւոր է, երբ մետաֆիզիկական ուժերն են մարտնչողի առաջնորդը, երբ վերջինն զգում է, որ բացարձակ մի ուժ է գործում իր մէջ:

Այդպէս չէի՞ն Մամիկոնեաններբը - աստուածահաղորդ: Այդպէս չէ՞ր Մեսրոպը, որ ըստ հայոց պատմութեան վկայութեան, նախ ծուլեց աստուածայինին եւ ապա հնարեց մեր երկրի լոյսը: Ղեւոնդ Երէցը չէ՞ր ասում, որ ինքը խօսել է Աստուծոյ հետ:

Այդպէս էին նրանք, եւ դրա շնորհիւ էր, որ նրանց օրերի Յայաստանը հզօր էր՝ անգամ իր պարտութեան մէջ:

Տարօնական հայը աստուածահաղորդ է, աստուածախօս - ստեղծիչ կրօնական զգացումի եւ պատմակերտ ոգու:

Տարօնականութիւն - դա մեր պատմութեան իրրացիոնալն է, անգիտակցականը, ոգու այն տարերքը, առանց որի իմացութեան՝ անհնար է խօսել ճակատագրի հետ:

Այն բոլորից յետոյ, ինչ որ տեսանք, Ղէր Զօրից, Կարսից յետո՞յ էլ հարց չտանք.- «Որտեղի՞ց ենք գալիս, ո՞ւր ենք գնում»:

Մենք գալիս ենք մի աշխարհից, որի բոլոր իրականութիւնները սարսափի երազներ վիժեցին: Մենք գնում ենք դէպի մի երազ, որ իրականութիւն պիտի դառնայ:

Երբ չկայ պատմաստեղծ ոգու առաջնորդութիւն՝ իրականութիւնը կը դառնայ երազ· երազ չէ՞ այսօր երէկւայ մեր երկիրը, իր բոլոր իրականութիւններով:

Երբ կայ այդ ոգու առաջնորդութիւնը՝ երազները իրականութիւն կը դառնան. վաղը իրականութիւն պիտի չդառնա՞յ Յայաստանը:

Որպէսզի այդպէս լինի՝ դարձէ՛ք դէպի ոգին: Մի՛ թշնամացէք, այլ հասկացէ՛ք, որ անոգի ժողովուրդը միութիւն, ուժ եւ ապագայ չունի: «Դա՛րձ դէպի ոգին»:

Չէ՞ք լսում ի՞նչ ենք ասում. մենք ասում ենք՝ հոգեւոր վերանորոգում, տարօնատիպ հզօրահոգի հայ մարդու վերակառուցո՛ւմ, հայակերտո՛ւմ:

Եւ ուրիշ ոչի՛նչ:

Մնացեալը մենք թողնում ենք քաղաքագէտներին, կուսակցութիւններին, եւ ցանկանում, որ նրանք իմաստուն լինե՛ն եւ զօրաւոր:

*«Տարօնի Արծիւ», 1938թ., թիվ 5 - 6*

# ԵՐԲԻ ԿԱՄՔ

Դիցուք թէ աշունն է եւ օրերի հետ՝ խամրում է շատ բան - անիմա՞ստ է ամենայն անցեալ: Դիցուք թէ ձմեռ է եւ բուքը խրճիթդ մտած՝ կոտրել է սրտիդ ապակին եւ խշրանքների սարսուռով տխուր առասպել է երգում - միայն մի՞ պատմություն ունի աշխարհը: Կամ թէ կեանքի սայլը ճռնչալէն խրուել է առեղծուածների ցեխում - սո՞ւտ է ճիգը եւ ելքը՝ ցնո՞րք:

Առեղծուածները սարդի ոստայն են հիւսում եւ դարանում ճակատագրին: Կալանուած ոգու ոյժը վախճանի տենդն է եւ առաքինութիւնը՝ փրկութեան մոլորանքը: Մտածի՛ր, որքան ուզում ես, գալարուի՛ր, քանի դեռ ցաւ ես զգում, աղօթի՛ր, եթէ հաւատում ես գերբնական ոյժերին - կը քամուես, կը չորանաս, կը մոխրանաս, եթէ չգիտես ճիշդ ժամանակին թաղել նախապաշարումներդ եւ ճիշդ ժամանակին կենտրոնանալ որպէս ինքնափրկումի կամք:

Մենք ասում ենք. «Չկայ անել դրութիւն»:

Չկայ թէկուզ ա՛յն պատճառով, որ գէթ ապրող էակների բաժին տիեզերքը եղել է եւ պիտի անցնի, եւ նրա առեղծուածների գաղտնիքը հէնց ա՛յն բանում է, որ նրանցից իւրաքանչիւրը լուծուել է ուզում:

Տիեզերքը առեղծուածների յղութիւն է, ծագումի ու վախճանի հանգոյց, խառնարան, կռիւ, կամ պատճառների կապակցութիւն եւ հետեւանքների շղթայակցութիւն, գոյութեան երանութիւն եւ յայտնութեան կամք:

Ուզում ես հաւատա՛, որ Աստծու կամքն է ստեղծել տիեզերքը, ուզում ես ասա՛, որ տիեզերքի կամքն է ստեղծել Աստուածը: Երկու դէպքում էլ դու մի մասնիկն ես արարչագործութեան: Դա ենթադրում է՝ յայտնութեան տենչի, կամքի ներկայութիւնը քո մէջ: Դու ծնունդ ես կամքի, եւ ճակատագրօրէն մասնակից ստեղծագործութեան:

Ամեն ստեղծագործութիւն անցումի ճիգ է - կորովների կուտակման եւ հոլովոյթի գործողութիւն, տարերքի երկունք, ոգու շարժ, սրտի ողբերգութիւն, էութեան զեղումի տենդ, թափուող բաժակի երանութիւն:

Մենք ասում ենք. «Յաւիտենականութիւնն ամեն բանից առաջ ոգու անցումի կարօտ է, եւ գոյութեան իմաստը հասկանում են նրանք, որոնք մեռնելու կամք ունեն»:

Ուզում ես Յիսուսի հողի մէջ ընկած ցորենի հատիկի առակը վերծանի՛ր, ուզում ես հայ Մանիկոնեաններիի բարոյականը հասկանալով՝ ապրի՛ր, ուզում ես ոգու խորհուրդով գիտութեան մօտեցի՛ր - միեւնոյն է՝ տեսակի յարատեւումը, կեանքի ստեղծագործութիւնը պայմանաւորուած են անցումի

խանդով, մեռնելու կամքով:

Գոյութիւնը ծագումի եւ վախճանի առեղծուած է: «Վախճան» նշանակում է ե՛ւ մահ ե՛ւ նպատակ: Դա ասել է՝ մեր ճակատագիրն անցումի մղում է: Բայց ամեն «անցում» իմաստ ունի, եւ իմաստը նպատակի մէջ է: Ո՞վ է գծել ճակատագրի ուղին, ո՞վ է չափել տիեզերքի խորքը, ո՞վ է կշռել Աստուծոյ կամքը, ո՞վ է որոշել իրերի վախճանը, ո՞վ է գտել պատմութեան օրէնքները: Մենք ասում ենք. «Նպատակն է մեր կեանքի առաջնորդը»:

Քո գործունէութեան ձեւը պայմանաւորւում է քո նպատակի բովանդակութեամբ: Դու գործո՞ւմ ես այնպէս որպէս թէ տիեզերքը քո կամքի արտայայտութիւնն է եւ Աստուածը՝ քո խղճմտանքի յղացումը - Աստուծոյ հետ ես, պատմաստեղծ ես: Առանց Աստուծոյ՝ դու ոչինչ ես, իսկ առանց քո խղճմտանքի արթնութեան՝ չկայ Աստուած: Այլ եթէ քեզնից դուրս կայ Աստուած, ապա դա զինակիցն է ուրիշների, եւ նրանք քեզ հետ կը վարուեն որպէս անոգի առարկայի: Դու կարող ես ե՛ւ աստուածապաշտ լինել եւ սակայն անհաղորդ մնալ Աստծուն: Քո էութիւնից պիտի բղխի աստուածապաշտութիւնը, այնպէս որպէս թէ տիեզերքի բացարձակ կամքն է գործում քո մէջ: Աստուածապաշտութիւնը ճշմարտագործութիւն է եւ ճշմարիտ նպատակները միայն կարող են քեզ մղել իմաստալից գործունէութեան: Քո նպատակը պիտի արձանացնես էութեանդ ա՛յն բեւեռում, որ քեզնից դուրս է թւում: Անհմանալի կապերով դու զօդուած ես մի Անյայտի, մի Բացարձակի, մի Գեր-Բանականի: Քո նպատակը պէտք է լինի ո՛չ թէ քո մտքի յղացումը, այլ՝ քո կախումի զգացումի բացարձակ յայտնութիւնը: Դու գործում ես նրա կամքով, որից կախուած ես: Յիսուսն էր ասում. «Եւ ինձ պարտ է գործել զգործս այնորիկ, որ առաքեացն զիս»: Այսպէս գործողներն են միայն պատմութիւն ստեղծում: Դու քո նպատակի գործիքն ես միայն, բարեկա՛մ: Եւ նպատակիդ միջոցով դու գործադրում ես քո մէջ յայտնութիւն ստացած Աստուծոյ կամքը: Երբ ասում ենք «Նմանի՛ր Սամիկոնեան հային», ուզում ենք հասկացնել, որ դու պարտաւոր ես քեզ զգալ որպէս ցեղիդ նպատակի անօթը, եւ այնպիսի վճռականութեամբ մօտենալ ճակատագիրդ շօշափող հարցերին՝ որպէս թէ Աստուծոյ կամքը բացարձակ յայտնութեան է յանգել քո մէջ: Երազող ես դու թէ գուշակ, երանգների ծարաւից խելագար բանաստեղծ թէ մտքի կմախքներով սիստեմներ հիւսող գիտնական, հացի սովորական ծառայ թէ գաղափարների իշխան, մարմնի թովչանք թէ հոգու ստուեր, սրտի աղքատութիւն թէ ուղեղի տագնապ, նոյնն է - դու ձեւ կը տաս յաւիտենականութեան ա՛յն մասին, որ ապրումի որոշականութիւն է ստանում քո մէջ: Ուզում ենք ասել, որ հայ մարդը անձնական ի՛նչ բարեմասնութիւն էլ որ ունենայ, պատմագործումի տեսակէտով նրա արժէքը մոխիր է եւ քամի, եթէ

դա չունի տարօնական հոգեգծութիւն: Միայն Մամիկոնեաններին յաջողւեց Յիսուսի մոլեռանդութեամբ մահով մահը յաղթահարել, այսինքն՝ որոշակա-նութիւն դնել նպատակի, վճռականութիւն՝ գործի եւ բովանդակութիւն՝ պատմութեան մէջ: Ե՞րբ է մշակւում յաղթանակի արւեստը - այնժա՛մ, երբ պատմաստեղծ կամքը պատկերւում է որպէս Աստուծոյ զինակիրը, իսկ յա-լիտենականութիւնը՝ որպէս մայր ամենայն կարելիութիւնների: Ինչպէս Աս-տուծոյ, այդպէս էլ նրա ներկայութիւնը վկայող կամքի համար ոչինչ է ան-կարելի: Տիեզերքը հասկացւում եւ յաղթահարւում է յաւիտենազգաց ոգու գործունէութեամբ: Մամիկոնեանները գիտէին աստւածաբանութիւնից ռազմարւեստ բղխեցնել, բարոյականով քաղաքականութիւն հիմնաւորել եւ յաւիտենականութեամբ նպատակ օծել: Նրանք նախ՝ աղօթում էին, յե-տոյ՝ ծրագրում եւ ապա՝ գործում: Այդ էր պատճառը, որ նրանց օրերի Հա-յաստանում չկար երկու բան - հոգեւոր պարտւողականութիւն եւ բարոյա-կան անկում: Նրանից յետոյ Նարեկացին հիւսեց տիեզերական ողբ: Հան-ճարի ցաւով նա թաքախեց իր գրիչը Բզնունեաց ծովի ալիքներում եւ աղի խօսքերի մրմուռ ցանեց դարերի սրտին: Երկար ժամանակ հայի իմացա-կան իղձալն եղաւ՝ հասկանալ «Նարեկ»-ը: Հասկացա՞ւ. նա թուքակեց «ող-բաձայն» մրմունջը, խարխափեց խորքի, իմաստի եզրին, գալարւեց բանա-կանութեան վիժած առեղծւածների ցանցում եւ մի օր էլ ընդմիշտ մոլորւեց իր էութեան անդունդներում: Աստւածն այլեւս մեր կամքի զինակիցը չէր, այլ՝ մեր մոլորանքների քննադատը: Պատմութեան փառքի գծից շեղածը, ենթագիտակցօրէն, իրան ծռւած է զգում Աստուծոյ ճանապարհից: Նմանի համար Աստւածն այլեւս առաջնորդ չէ, այլ միայն «տեսող գաղտնեաց»: Հայն է հիւսել աշխարհի ամենաասպանիչ, գոյութեան տենչի ժխտումին հա-մահաւասար «Մեղա»-ն: Պատուհասւելու սարսափից, նա իր հաւատի պա-րարտութիւնը ճենճերելով՝ բուրվառեց երկնքին - ներսից այրւեց, ծուխը տւեց քամիներին եւ դատարկւեց իր էութեան ոյժերից: Տէր-Ջօ՞ր. առանց խոր վերածնունդի՝ դա անխուսափելի էր: Մինչեւ այդ՝ մեր կեանքում ամեն ինչ սկսւում էր ցաւով, շարունակւում՝ ողբով, վերջանում՝ աղօթքով: Մենք շուռ եկած էութիւն էինք եւ տառապանքի ծարաւ: Մենք յիշողութեամբ էինք միայն տարօնական, բայց ո՛չ կենդանի զգացումով: Դրա համար էլ մեր կեանքը քաւութեան բաղձանք էր միայն եւ անստեղծագործ տանջանք - նահատակութեան սարսուռ եւ երկիւղած թերահաւատութիւն: Յոռետեսու-թիւնը աւելի՛ ծանր արժէքներ եւ սրբութիւններ է ստեղծում, բայց դրանք բո-լորն էլ ճակատագրօրէն խորասուզող են, անկումնային:

Անիմաստ չէ՛ ամենայն անցեալ. աշխարհը միայն մի պատմութիւն չունի. ճիգը սուտ չէ, ոչ էլ ելքը՝ ցնորք:

Դեռ զգւանք չունե՞ս քո անզօր ճակատագրապաշտութեան, յոյսի աւելցուկներով կերակրւելու քո տկարութեան, քո ծեծգութեան, երկմտութեան, ունայնագործութեան, սողացող մոլորանքների հանդէպ: Ինչի՞ն ես սպասում եւ ի՞նչպէս սպասում: Հայաստանում ամեն ինչ սպասում են Մոսկւայից, գաղութներում՝ Հայաստանից: Հարուստներն իրենց հոգեպահուստ գանձը նախընտրում են իրենց աղջիկների հետ տալ օտարներին. Չունեւորները մխիթարւում են ա՛յն նախապաշարումով, թէ միայն աղքատութեան մէջ կարելի է մի քիչ աւելի լաւ հայ մնալ: Հոգեւորականութիւնը մոմ ծախելու նպատակով հաստատած իր պղօթատուները հռչակում է «Հայրենիք»: Քաղաքական կուսակցութիւնները գիտեն, որ ինչպէս էլ դարձնես՝ «մէկ անգամ մէկը անում է՝ մէկ»: Բարեգործական ընկերութիւնները «քիւֆթէ փարթի» են խաղում եւ թէ՛ զւարճանում թէ՛ ողորմութիւն անում թէ՛ ազգային աւանդութիւնները պահում...: Մամուլի ներկայացուցիչները իրանց դէմքին մածուն են քսում եւ խելքի մրոտած թղթերի առաջ՝ կանգնում ճերմակերես: Եւ բոլորը միասին սպասում են ինչ-որ աքլորակ: Այս չէ՞ տարագրութեան տանջանքը, հսկումը, «ոգին պահելու» ճիգը: Եւ դու պատմութի՞ւն պիտի ստեղծես: Վա՜յ նրան, ո՛վ աքլորակի յոյսով «ոգին է պահում», նմանը, սովորաբար, մինչեւ աղջամուղջը աւանդում է այն:

Մենք ասում ենք. «Ոգին չի պահւում. ոգին աճում է գործելով»:

Գործի՛ր այնպէս որպէս թէ գերբնական ոյժերից զօրութիւն ես ստանում եւ ո՛չ թէ դատարկւում նրանց առաջ: Այդպիսով՝ դու կը գործես քո Աստուծոյ հետ: Կը գործես կարելիութիւնների մի աշխարհում, որի բոլոր իրացումների աղբիւրը քո կամքն է:

Այսպես չէի՞ն տարօնական հայերը: Ասում ենք՝ այսպէ՛ս էին, եւ «անել» բացող այսօրւայ դրութեան մէջ մենք դիմում ենք նրանց ոգուն: Տարօնականութի՛ւն - դա միայն բարոյագիտական պատգամ չէ, այլեւ կարելիապաշտական իմաստասիրութիւն, անցեալը յաւիտենականին հիւսելու իմաստութիւն եւ ճակատագրի առեղծւածները Աստուծոյ խորհուրդով լուծելու կամեցողութիւն:

Քանի դեռ չկայ այս կամեցողութիւնը, «անել դրութեան» նախապաշարումը պիտի շարունակէ բազմած մնալ իմաստութեան գահին եւ պատմութեան գծից դուրս նետւած հայը պիտի մոխրանայ մանր իր զոհունակութիւնների հետ, ինչպէս կալանւած ոգին՝ առեղծւածների ոստայնում: Տարօնականութիւնը հին մի բարոյականի ոգեկոչում չէ միայն. դա նաեւ ելքի կամք է՝ նախապաշարումների ցանցից:

*«Տարօնի Արծիւ», 1939թ., թիվ 9*

# ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ

*(հատված խմբագրականից)*

Մի՞թէ ոգիներու անապատի մէջ կը քարոզենք մենք: Ենթադրենք, թէ այդպէս է: Բայց վտանգւած ժողովուրդի մը համար ի՞նչն է աւելի ներկայայորդոր, քան արթնութեան կանչը՝ պատմութեան հազարամեակներու ձայնով:
Նարեկացին կ'ողբերգէր. «Ձայն կու տան եւ չեմ արթննար, փող կը հնչեն եւ կուի չեմ պատրաստուիր»: Այդպէս չէ՞ օրւայ հայութիւնը: Այդ չէ՞ մեր նւաստաշունչ ներկայի եւ անլոյս ապագայի, մեր պատմական զգացումի աղօտման եւ հոգեւոր նահանջողականութեան պատճառը: Ամօթանքի ողբերգութի՞ւն, թէ անկումի երանութիւն - ո՞րն է ապրող հայ սերունդի ճակատագիրը:
Քնախտաւորներու համար խռովարարներ ենք մենք - կը խռովենք անապատի մը մեռելային երջանկութիւնը: Վե՞րջը: Իրերու վերջը ենթակայ է վերանորոգումի տիրապետութեան: Ո՛չ մէկ դրութիւն առանց ընդդիմութեան տեղ կու տայ ուրիշ դրութեան մը, բայց ճակատագիրը դրութիւններու հոլովոյթ մըն է: Ոգիի խռովքները, ի վերջոյ, կը վերածուին հասարակական ոյժի: Չկայ «ձայն բարբառոյ յանապատի», եթէ խօսքը օժւած է տառապանքի սրբութեամբ: «Յիւրսն եկն եւ իւրքն ո՛չ ընկալան»ը մեծ ողբերգութիւն է, բայց խորքոտ ու խռովքոտ ամեն ողբերգութիւն ունի իր տրամասութիւնը, իր դիալեկտիկան: Ծուռ է յաւիտենականութեան ճանապարհը եւ ոգիի զարգացումը տեղի կ'ունենայ հակասութեանց ոյժով: Մեծ ճշմարտութիւնները հետեւանք են մեծ տագնապներու եւ կեանքի արժէքաւոր բոլոր գործերը, պատմութեան ուղեգիծը որոշող բոլոր շարժումները առաջ կու գան որեւէ դատարկութիւն բովանդակութեամբ մը լեցնելու ծարաւէն:
Պատմական իմացութեան տեսակէտով դատարկ էր մեր իրականութիւնը - բայց ահա՜ տարօնականութիւնը: Կարճաշունչ էինք մեր ոգորումների մէջ - ահա՜ Մամիկոնեաններու «մեռնելու կամքի» ստեղծագործ բարոյականը: Միայն վերացական «հանդերձեալ»ով կը մխիթարուէինք - ահա՜ ցեղային յաւիտենականի կենսաբանական զգացումը: Անթիւ կիսանպատակներու կը ծառայէինք - ահա՜ Ցեղը որպէս լիագումար նպատակ: Փրկութիւնը իրերու երազային դասաւորումէն կ'ակնկալէինք - ահա՜ հոգեգիտական ճշմարտութիւնը, թէ ճակատագրիդ միակ առեղծւածը դու ես:
Լուսաւորչի կրօնը կը դաւանիս, Մեսրոպի գրով կը լուսաւորուիս, Հայրենիքի մասին մտածելու պահուն Վարդանը կ'ոգեկոչես, Խորենացիէն, Ե-

դիշէէն կը ստանաս հայկականութեանդ ներշնչումները եւ չես ըմբռներ տարօնականութիւնը: Տգէտ չես դու, այլ՝ բարոյապէս պակասաւոր: Տարօնական քո գիտակցութեան եւ զգացումի աղօտումն է պատմական դժբախտութիւններուդ բուն պատճառը: Խաբուած ես - մի՛ արդարացիր մեղադրելով ռուսը, անգլիացին, գերմանացին, ֆրանսացին, անգամ թուրքը: Խաբուած ես, որովհետեւ անծանօթ էիր քո էութեան: «Ծանի՛ր զքեզ» եւ պիտի տեսնես, թէ որքան հեշտ է բարոյապէս վերանորոգուիլ իբրեւ տարօնական հայ: Յարազատէ՛ «մեռնելու կամք»ի բարոյականը եւ քաղցրութեան հետ՝ դու պիտի զգաս թեթեւութիւնը յաղթանակի:

* * *

Անապատի մէջ կը քարոզենք եւ մեր խօսքերն ունին բնազանցական շեշտ: Բոլոր մեծ ճշմարտութիւնները յղութիւն կը ստանան անապատի զգացումէն եւ գործնական կեանքի ամբողջ հիմքը աշխարհի բնազանցական ոյժերու մէջ է: Չկա՛յ աւելի մեծ թովչանք, քան յաւիտենականութիւնը, եւ աւելի ազդու խօսք, քան հազարամեակներու ձայնը: Մամիկոնեաններու մեծագործութեան գաղտնիքը ա՛յն բանի մէջ էր, որ յաւիտենականութեան զգացումը անբաժան էր իրենց խղճմտանքէն: Այս զգացումով կարելի է միայն աշխատիլ սեփական անձի առաքինութեան վրայ եւ Աստուծոյ համար: Այսպէս աշխատողնե՛րը միայն կրնան Յայրենիք յաւիտենագործել:

Կտրուած է յաւիտենականութեան թելը եւ հաւուածականացած տարագրութիւնը կը մոխրանայ իր մանր նպատակներու հետ: Տարօնականութիւնը մեծ այդ տագնապէն եւ մեր ցեղի բոլոր դարերու ցաւի ու կարօտի զօրութենականութենէն յղութիւն ստացած առաջնորդող ճշմարտութիւն է:

Մեր եսի խորագոյն էութեան մէջ մենք հող չենք, որ հող դառնանք, այլ՝ ոգի, որ ոգի մնանք: Տարօնականութիւնը պատմական ոգիի ուսմունք է, միաժամանակ, ցեղագումար հայկականութեան շարժում: Որպէս մեր ցեղի յաւիտենականը արտայայտող կորով, դա նաեւ երկրի վրայ անմահ գործեր երկնելու բաղձանք է, որով՝ ազատագրական կամք:

Ոգիներու անապատի մէ՞ջ ենք դեռ - բայց չկայ հոգեվիճակի քարացում, չկայ պարտուողական գոհունակութեան լճացում: Ինչ որ այսօր կ՛ապրինք՝ յիշողական սարսափներու նախապաշարում է: Փաստօրէն, մենք կանգնած ենք ճակատագրական անկիւնադարձի մը առջեւ: Յեղաշրջուող ոգին կ՛ընթանայ իրերու հոլովագործումի գծով:

Տարօնականութիւնը անապատի մէջ հասունացած խօսք է: Ո՛վ գիտէ

նման խօսքի դիալեկտիկան՝ գիտէ կեանքի զարգացման օրէնքը: Մարդիկ կրնան շեղիլ օրէնքէն, բայց կեանքը՝ երբե՛ք յաւիտենականի գծէն: Կայ յաւիտենական դարձի օրէնքը, իրերը կը մղուին դէպի հոն, ուր է իրենց էութեան ծանրութեան կեդրոնը: Ո՛ր կողմէն ալ որ վերցնենք հայոց պատմութիւնը՝ մեր ուշադրութիւնը կը գրաւեն տարօնական հայու մեծագործութիւնները: Պատահականութիւն չէ սա, այլ՝ կեանքի խորհուրդ: Ապագան անոնց է, որոնք կը գործեն խորհուրդներու ոյժով:

Դժուարութիւններ կան մեր առջեւ, բայց մեզ հետ է ժամանակի ոգին: Պարտուած, պառակտուած, ներկայապաշտ եւ հաւատաքափ է օրւայ հայութիւնը, բայց նաեւ երբե՛ք մինչեւ իր էութեան խորագոյն անկիւնը այս ատիճան ողբերգօրէն ցնցւած: Նման ցնցումները կ'առաջադրեն վերանորոգումի պահանջ: Իսկ վերանորոգում կը նշանակէ՝ դա՛րձ դէպի կենսաբանական, ոգեկան եւ բարոյական ա՛յն ոյժերը, որոնք պատմական վաւերականութիւն ունին:

*«Տարօնի Արծիւ», 1939թ., թիվ 10*

# ԻՐԻՑՈՒԿ ՄԵՌԵԼՆԵՐԸ ՎԿԱՅ

*Մուսա լերան հայերը գաղթեցին՝ վառելով իրանց գիւղերը եւ գերեզմաններից առնելով նահատակների աճիւնները:*

Ողբերգութիւնները ցաւ պատճառելով՝ լուծում են նաեւ առեղծւածներ: Ինքը՝ ցաւը որպէս անցումի տանջանք թէ երանութիւն, յիշատակի վառ մի մոմ է՝ մեր էութեան անծանօթի առաջ:

Շա՛տ եմ մտածել ա՛յն մասին, թէ ինչո՞ւ վերապրող տարօնցիները ստեղծեցին ցաւի երգումը - նրանք էութեան սարսուռով երգում են «իրիցուկ մեռելներով»:

Ո՞վ է չափել հայ ոգու տարողութիւնը: Մեր սիրտը խորհուրդների ոստայն է եւ մեր ոյժը՝ հակասութեան մէջ: Մեր բոլոր յաղթանակները ոգու ողբերգական աքտեր են եւ մեր կամքն օծւած է աւելի այրւած մեռելների ցաւով, քան երկաթի շառաչի կարօտով: Ի՞նչ ցեղ էր այն, որ հարաւային Ռուսաստանում, Թրակիայում, մեր Տարօնում, Բագրեւանդում, Այրարատում արւեստական բլուրներ է կառուցել՝ իր մեռելների համար եւ դրանք դարձրել նաեւ ինքնապաշտպանութեան բերդեր: Ի՞նչն է ժառանգւել մեզ այդ ցեղից, որ չէր կարողանում առա՛նց գերեզմանների իշխանութեան ապրել, առա՛նց հայրերի ոգու եւ աճիւնների առաջնորդութեան՝ կռիւ վարել: Պատկերեցէ՛ք Հայաստանը եւ կարդացէ՛ք մեր կեանքի խորհուրդների գիրքը - մեր գերեզմանոցները, սովորաբար, հաստատւած էին բարձունքների վրայ, որ ասել է՝ ողջերն ապրում են մեռած հայրերի հսկողութեան տակ: Մեր էութիւնը անբաժան է հայրերի գերեզմանից. դրանից էր հայն ստանում սրբութեան կրակը: Հռովմայեցին ասում էր «փա՛ռք», հայը՝ «լո՛յս»: Ո՛չ մի ժողովրդի լեզւի ոգուն այնպէս հարազատ չեն «լուսահոգի», «լոյս իջնէ հորդ հոգուն, գերեզմանին» դարձւածքները եւ ո՛չ ոք է «արեւ»ը, «լոյս»ը, «կենդանի կրակ»ը այնպէս խանդով երգել, որպէս մեր Շնորհալին, Նարեկացին: Վահագնի ուրւականը կրակի խորհուրդով դեռ յածում է հայ հողի վրայ: Լուսաւորիչը (այլ ո՛չ մի ազգ իր առաքեալին այսպիսի տիտղոսով է օծել. այս մակդիրն էլ իր հերթին արդիւնք է հայոց խոր լուսապաշտութեան) մեր առաջին մկրտութիւնը կատարում է Թոնդրակի հրաբուխներից իջնող Արածանու ջրերում: Մամիկոնեանների դամբարան Ս.Կարապետը դառնում է հայոց աշխարհի ամենահզօր սուրբը: Հայն իր ոյժի, լոյսի, ծիրքի աղբիւրն

համարել է մեծ նախահայրերի գերեզմանը: Աշխարհածանօթ է հայ լարախաղացների երկիւղած պաշտանքը դէպի իրանց հովանաւոր եւ ծիրքատու Ս.Կարապետը: Սայեաթ-Նովան ասում է, որ «Ս.Կարապետի կարողութիւն»ով է ձեռք բերել նւագողական իր վարպետութիւնը: Հայոց սրբերի «սուլթան»ի հմայքով իշխում էր Մամիկոնեաններ դամբարանի խորհուրդը - տարօնական ոգու խորհուրդը: Տեսնողներից ո՞վ չի յիշում լոյսի պսակը գնդապետ Սամարցեւի - մոլեռանդ այն հայը, որ իր գնդի անունը դրեց «Սուրբ Կարապետսկի պոլկ»-ճակատին, երբ դա Ս.Կարապետի անունով խաչ էր հանում: Այսօր, ո՞վ չի սարսռում, երբ լսում է տարօնցի մայրերի ցասումնախառն բարեպաշտութեամբ օծւած երդումը. «էն իրիցուկ սուրբ մեռելները վկայ»...: Վկա՛յ ամբողջ Հայոց Աշխարհը, հայ ցեղը, որի խորհուրդները այնքան կենդանի կերպով դեռ ներազդում են հեռաւոր Մուսա լերան իր որդիների ոգում:

Օրհասական մի վայրկեանում նրանք թաղեցին խորհուրդների զանգը եւ կրօնական խանդով բարձրացան իրանց լեռը՝ աշխարհը զարմացնող հերոսական ստեղծելու: Այսօր, երկու պետութիւնների քաղաքական սակարկութիւնների հետեւանքով հարկադրւում են լքել իրանց հնամեայ գիւղերը, բայց վառում են տները եւ գերեզմաններից վերցնում նահատակների աճիւնները. «Թուրքը չի կարող շնչել մեր հայրերի բնակարաններում, ո՛չ էլ պիղծ իր ոտքը դնել նրանց գերեզմաններին»:

Հիացէ՛ք որքան ուզում էք. երկու աքտերով էլ Մուսա լերան հայերը փրկեցին մեր ցեղի պատիւը: Բայց ո՞ւր է գաղտնիքը կրօնականութեան հասնող այդ ցեղազգացութեան: Գաղտնիքը նրանում է, որ աշխարհագրական եւ ազգագրական պայմանների բերումով, հայկական այդ գիւղախումբը, պատմական յիշողութեամբ թէ կեանքի առօրեայով, ապրել է որպէս ինքնամփոփ ցեղ եւ ո՛չ թէ իր էութիւնից դուրս եկած ժողովուրդ: Մուսա լերան հայերն իրանց համարում են Տիգրան Մեծի հայկական աշխարհակալութեան առաջամարտիկ ոյժի յետնորդները: Պատրանք լինի դա թէ իրականութիւն. միեւնո՛յն է, այս հաւատը կենսաբանական խորք ունի եւ ըստինքեան բարոյական անխորտակելի ոյժ է: Փաստ է, որ Մուսա լերան հայերը ոգու խորհուրդի եւ հայրերի աճիւնների պատւով ապրող մարդիկ են: Դա նշանակում է, որ նրանք հին, շա՛տ հին հայեր են եւ Հայաստանից հեռացած դեռ ա՛յն օրերին, երբ մենք տարօնական ոգով ու բարքով ապրող ցեղ էինք եւ ո՛չ թէ «հայ ժողովուրդ»: Ահա՛ պատճառը, որ յիշատակները Մուսա լերան շուրջ հայ ոգու ամենահուժկու շանթը արձակեցին - պատմական ծաւալով փոքր, սրտի տարողութեամբ՝ անչափելի:

Ինչե՞ր կարող էր անել Տարօնը Նեմրութի վրայ, ուր Խորենացին Բէլն է

քաղել եւ մեր նոր պատմութիւնը՝ Սերոբներու տիտանացումը արձանագրել: Բայց ժողովրդական բարոյականի ռազմավարութիւնը այստեղ կոտրեց ցեղի սուրը: Մուսա լերան հայերի բնազդն անկաշկանդ մնաց. այնտեղ չկային ժողովրդի նախապաշարումներով առաջնորդւող ղեկավարներ:

Նրանք, որ դեռ «չեն հասկանում», թէ ցեղ, տարօնականութիւն, հայրերի ոգի քարոզելով ի՛նչ ենք ասում, թո՛ղ իրանց կարճաշունչ զննութիւնը մի պահ ուղղեն դէպի անցեալը, ապա դէպի օրւայ հայկական Պոլիսը կամ ժողովրդի բարքով ու տենչերով ապրող միւս գաղութները, եւ «կ'այլասերինք», «կ'ուծանանք» իրենց աղաղակներով ծունկի գան Մուսա լերան հայկական ցեղախմբի առաջ: Ուր ժողովրդի հոգեվիճակն է իշխում, այնտեղ կայ «այլասերումի» երանութիւն, ամօթանքի ողբերգութիւն: Մօտ մէկ միլիոն հայեր կան «սփիւռք»ում, բայց այս քսան տարւայ ընթացքում հպարտանքի ողբերգութիւն ստեղծեցին Մուսա լերան հինգ հազար հայերը:

Մարդկային ամեն նախիր բարոյական ոյժ չէ, ո՛չ էլ «կ'ուծանանք» աղաղակը՝ քաղաքական գործ: Բարոյական ոյժ է միայն ցեղը եւ քաղաքական գործ՝ միայն հայրերի պատիւն ու ոգին յաւերժացնելու ճիգը: Զէնքի շառաչով յաղթանակ չտարաւ Մուսա լեռը, բայց իր գիւղերը հրկիզելով եւ նահատակների աճիւնները հետն առնելով՝ ապացուցեց, որ հայրենի հողի մրմունջ չափ խոր է աններողութեան զգացումը՝ թուրքի հանդէպ: Թո՛ղ ժողովրդի ոգու ներկայացուցիչները հաշտւողականութիւն քարոզեն, թո՛ղ նրանք Մեծ Հայաստանը ցնորք համարեն եւ մեր հայրերի գերեզմանները հայոց երկրի հետ՝ անդառնալիօրէն կորած: Կորած են միայն իրանք, որ չեն հասկանում ժամանակների շարժը: Ազգերի պատմութիւնը գրւում է ցեղի արիւնով եւ ոգու տանջանքով, բայց ո՛չ ժողովրդի քրտինքով եւ հացի ժխորով: Եւ գրում են նրանք, որոնք յաւիտենականութեան համար աւելի՛ կենդանի զգացում ունեն, քան՝ անցաւորի, լինի դա դժբախտութիւն թէ հաճոյքի երանութիւն:

Թո՛ղ գիտնան նաեւ մակերեսայինները, որ մեր ճակատագիրը վարում են յաւիտենական ոյժերը, որ Մուսա լերան հայերի ներկայ աքտը նրանով է մեծ եւ պատմական, որ դա վկայութիւն է այն մասին, թէ մեզ ծգող ոյժերից ամենազօրութենաւորը ցեղն է - ցեղը՝ հողի իր կսկիծով, կարօտով, աններողութեան իր բարոյականով, ցասումով եւ կենդանիները մեռելներին շաղկապող խորհուրդներով:

Այդ խորհուրդների ոյժով մենք ոգեկոչում ենք Սամիկոնեաններին, եւ նրանց «մեռնելու կամք»ի հրամայականը իմաստաւորելով «այրւածների կտակ»ով՝ ձգտում ենք հայրենադարձումի կրօնախանդ ցեղաշարժ ստեղծել - տարօնականութի՛ւն:

Ո՛վ կարողացաւ խորքով ապրել Մուսա լերան հայերի գործի խորհուրդը - ապրեց տարոնականութիւնը: Ո՛վ հասկացաւ դա - հասկացաւ, որ ո՛չ միայն երկնային, այլեւ երկրային յաւիտենականութեան ճանապարհին՝ հայրերի գերեզմանն է ճակատագրի ամենախորհրդաւոր նշանաքարը:

Օրւայ պայմաններում հայ չկայ Արեւմտեան Հայաստանում, բայց դա մեր հոգեւոր սեփականութիւնն է: Այդ սեփականութեան զգացումը հիմնաւորւում է յիշատակների ձգողականութեամբ:

Մեզ քաշում է յաւիտենականութիւնը. քաշում է այրուածների ցաւի ծանրութեամբ, սրբազան այն մոլեգնութեամբ, որով Մուսա լերան հայերը մի օր իրանց խորհուրդների զանգը թաղեցին, այլ մի օր իրանց հայրերի տունը վառեցին, քաշում է էութեան ա՛յն սարսուռով, որ ապրում է տարօնցի հայը օտարութեան մեջ, երբ երդւում է. «Իրիցուկ մեռելները վկայ»:

*«Տարօնի Արծիւ», 1939թ., թիվ 11*

# ՀԱՅ ԵՒ ԳԵՐՄԱՆ ՈԳՈՒ ԷԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *

Մարդաբանական հետազօտութիւնները (կատարուած մասնաւորապէս գերմանացի գիտնական Ֆոն Լուչանի կողմից) աստիճանաբար հաստատեցին, որ Քրիստոսից 15 դար առաջ Փոքր-Ասիան, Հայկական Բարձրաւանդակը, Պարսկաստանի արեւմտեան մասը եւ Սիրիան բնակուած էին կազմաբանօրէն միացեալ մի ժողովրդով: Դրա զաւակներն ունէին կարճ գլուխ, բարձր գանգ, սեպօրէն ցցուած ճակատ, առհասարակ երկարաւուն դէմք, յետսակողմից ուղղահայեցօրէն իջնող գլուխ, հուժկուօրէն առաջակարկառ քիթ, թուխ աչք, թուխ եւ ողորկ մազ, խիտ եւ փարթամօրէն աճող մօրուք: Միջահասակ մարդիկ էին դրանք, թուխ մորթով:

Այս ցեղն այսօր ամենազուտ կերպով գտնւում է Հայկական Բարձրաւանդակում, Պարսկաստանի որոշ մասերում եւ Փոքր-Ասիայում ու Սիրիայում որպէս կրօնական աղանդներ՝ ինքնամփոփուած փոքրիկ խմբակցութիւնների մէջ - կըզըլբաշ, անսարիէ, թահթաջի, լիկիացի, դրուզ, մարօնիդ, եւն.:

Այս ցեղը ծանօթ է հայատիպ (armenoid), նախահայկական, ալարոդեան, կապադովկեան, փոքր-ասիական, հեթիտական եւլն. անուններով եւ իր մարմնական - կազմախօսական յատկութիւններով ներկայացնում է Կենտրոնական Եւրոպայի ալպեան-դինարեան ցեղի մի հատուածը (ըստ ոմանց՝ մայր արմատը):

Այդ Ցեղն էր ստեղծողը փոքր-ասիական երբեմնի նշանաւոր այն քաղաքակրթութեան (2000-1500 Ք.-ից առաջ), որի մոռացուած փառքը կապւում է հեթիտների անուան:

Լեզւաբանութիւնը մեծ ջանքեր է թափում «հայ», «հաթ», «հայասա», «խայաշա», կամ «արման», «արիմ», «արմինի», «արմին» (ինչո՞ւ ոչ՝ նաեւ «արմէն» - «էրման», գերման - (գ)երման) բառերի ստուգաբանութեամբ լուծել հայոց ցեղային ծագման խնդիրը:

Մարմնա-հոգեգծային (արեան եւ ոգու) յատկանիշների ուսումնասիրութիւնը, սակայն, աւելի ապահով ուղի է, որովհետեւ այդտեղ շօշափւում են խառնւածքի եւ կերպի ներյայտ, ինքնայայտ գծեր, որոնք զերծ են բառերի դիպւածական նմանութեան տարակոյսից եւ ընձայում են աւելի բարդ,

բայց աւելի հիմնաւոր սիստեմի կարելիութիւն: Մարդաբանութիւնն ասել է իր խօսքը: Հայերը արեան գծով մերձաւորագոյն ազգակիցներ են գերմանացիներին: Դեռ չի ուսումնասիրուել հայերի եւ գերմանացիների հոգեւոր էակցութեան կողմը, այսինքն՝ դեռ բաղդատութեան չեն դրուել նրանց խառնուածքի, որով եւ ոգու յայտնութեան բնորոշիչ գծերը:

Ոգու արտայայտութիւններն ունեն իրենց ծագման պատճառականութիւնը: Մենք կարող ենք չընդունել «ոգե-մարմնական զուգահեռականութիւնը» որպէս փիլիսոփայական տեսութիւն կամ բնազանցական վերացում, բայց ո՛չ ոք կարող է ժխտել ոգու եւ արիւնի փոխադարձ ազդեցութիւնը որպէս կենսաբանական ճշմարտութիւն: Որոշ որակի արիւնը կարող է միայն ծնունդ տալ որոշ որակի ոգու: Ոգու եւ ոգու միջեւ այնքա՛ն տարբերութիւն կայ, որքան՝ արիւնի եւ արիւնի: Տարբեր են ո՛չ միայն սպիտակների եւ դեղինների մարմնական յատկանիշները, այլեւ նրանց հոգեգծութիւնը:

Բայց անցնենք հայ եւ գերման ոգիների էակցութեան հարցին: Աւելի հիմնական ուսումնասիրութիւնը վերապահելով բարեպատեh մի առիթի, այժմ պիտի բաւարարուենք մի քանի շատ ցայտուն երեւոյթների հաստատագրումով:

Դրանք են.

1) Լինելիական զգացում.- Ցեղերի խառնուածքը կնքւում է նրանց գոյապրումի բովանդակութեամբ եւ կերպով: Ոմանց մէջ շեշտուած է կայական զգացումը, ոմանց՝ ուժականը: Առաջինների երջանկութեան իդէալը յառողական է, երկրորդներինը՝ լինելիական: Նրանք ներկայապաշտ են, սրանք՝ նորատենչ: Նրանց ինքնայաւիտենականացման իդէալը յարակայութիւնն է, սրանցը՝ տեւական շարժումը: Նրանց կամքը ասում է - «կայ», սրանցը՝ «եղիցի»: Նրանք կեանքն զգում են մեքենայօրէն, սրանք՝ կենսաբանօրէն:

Հայերն ու գերմանացիները հաւասար չափով դինամիկական խառնուածքով են օժտուած (տե՛ս կէտ «4»): Խառնուածքի այս նմանութիւնը ցեղակցութեան ամենախոր, միաժամանակ ամենավաւերական հիմքն է:

2) Լեզու.- Ներզարգացողական, աճեցողական հսկայաքափ ոյժ ունի հնդկա-եւրոպական լեզւախմբի արեւմտեան (եւրոպական) ճիւղին պատկանող հայերէնը: Դինամիկական այդ զօրոյթը արտայայտւում է յատկապէս իբրեւ բարդ բառեր կազմելու ընդունակութիւն - մի յատկութիւն, որով օժտուած է մասնաւորապէս գերմաներէնը: Երկու այդ լեզուները նորաստեղծելու ներքնական իրենց զօրոյթով՝ տարբերւում են «քարացած» ձեւերի մէջ կնքուած եւ կաղապարուած լեզուներից, որոնցից է, օրինակ, ֆրանսերէնը: Լեզւական դինամիկան պայմանաւորւում է խառնուածքի դինամիզ-

մով:

3) Դիւցազներգութիւն.- Հայոց աւանդական պատմութիւնը բացւում է նախահայր Հայկի եւ ասորական Բէլի կռւով: Արիական Հայաստանի եւ սեմական հարաւի էութիւնների սուր պայքարը շարունակւում է հնում՝ հայ Արայի եւ Շամիրամի, հայոց պատերազմական աստւած Վահագնի եւ Բարշամի, միջին դարում՝ հայ «Սասմայ Ծռեր»ի եւ արաբ «Մսրայ Մելիք»ի միջեւ:

Հայկի մարմնական («խայտակն», «քաջաբազուկ») եւ հոգեկան («վեհանձն», «ազատասէր») գծերը համապատասխանում են նորդեան կապտաչեայ եւ գոռոզ ցեղի յատկանիշներին: Վահագնի մազերն ու աչքերը կրակ-արեգնագոյն են, ինչպիսին էր Միջին Դարում գերման լեգենդար կայսր Ֆրիդրիխ Բարբարոսան:

4) Աշխարհի լինելիական ապրում.- Հայոց դիցաբանական կոսմոգոնիայի մէջ գոյարմատի հանգամանք ունեն կրակն ու ջուրը (Վահագնը ծնւում է ծիրանի ծովում, կրակով բռնւած եղէգնի բոցերից): Կրակն ու ջուրը գոյարմատական են նաեւ Հայաստանի ծնունդ (ուրմիացի) համարւող Զրադաշտի դուալիստական կրօնում: Դեռ չի ուսումնասիրւել Հայաստանի եւ հայկական էութեան ազդեցութիւնը յունական փիլիսոփայութեան, մասնաւորապէս փոքր-ասիական (յոնիական) դպրոցի վրայ, բայց Թալէսը ջուրն էր ընդունում որպէս գոյութեան արմատ, Հերակլիտը՝ կրակը: Հերակլիտի կրակը ենթակայ է յաւիտենական հոլովոյթի եւ երեւոյթների աշխարհը հնարաւոր է դառնում նրա շարժումով: Հայը անմահութեան գաղափարը կապում է ջրին, ստեղծագործութիւնը՝ կրակին:

Շնորհալին անգամ Յիսուսը պատկերում է որպէս «հուր կենդանի»: Միջին Դարում ստեղծւում է «Արեւորդի»՝ որով կրակ-արեւի որդիների աղանդը: Յաւիտենականութիւնը հայը ապրում է որպէս անվերջանալի շարժում: «Սասմայ Ծռեր» դիւցազնավէպի հերոսների նետած քարերը «գնում են մինչեւ այսօր», այսինքն՝ յաւիտենական է նրանց չուն, որովհետեւ քանի դեռ աշխարհը կայ՝ «այսօրը» վերջ չունի: Թւում է որ հին հայերն ունեցել են նաեւ նորատենչութեան մի աստւած կամ դեւ - «ցնորք», որ նշանակում է՝ մինչեւ նորը. սխոլաստիցիզմի շրջանում հայոց ամենամեծ փիլիսոփայ-բանաստեղծ Գրիգոր Նարեկացին (10-րդ դար) խօսում է «անցաւոր յաւիտենական»ի մասին, այսինքն՝ ընդունում է որ աշխարհում ո՛չ թէ կայականութիւնն է յաւիտենական, այլ՝ շարժումը:

Նոր ժամանակների ժողովրդական մի երգիչ - Ջիւանի - իր «Ձախորդ Օրերը» երգում կեանքի լաւատեսութեան հիմքը գտնում է հէնց այն բանում, որ աշխարհում ոչինչ է կայուն, որ «փոփոխակի անցքեր շարունակ կու գան

ու կ'երթան»: Վերջապէս հայու ամենայուսահատական վիճակի մխիթարիչ խօսքն է. «Վերջը լաւ կը լինի»:

Սա աւիդէն գերմանացիների լինելիական զգացումն է, Լուտերի - «այս կեանքը... մի էութիւն չէ, այլ մի լինելիութիւն»ը, «մենք դեռ չկանք, այլ լինում ենք»ը, Հեգելի հոլովաշրջական փիլիսոփայութիւնը, Նիցշէի «Զրադաշտական խանդը», «իրերի յաւիտենական կրկնադարձը»: Հայ եւ գերման էութիւններին յատուկ լինելիական այս տենչը համապատասխանում է նրանց լեզուների ներքին դինամիզմին:

5) Երկու ոգիների պայքար. - Հայ էութեան մէջ շեշտուած է ոգու ողբերգական պառակտումը: Նարեկացու հոգում կռւում են էմպիրիկ կեանքի խորին զգացումը եւ գիտնականի տանջող մտածումը - միստիցիզմը եւ լոգիզմը, քաղաքական անիշխանականութիւնը եւ կրօնական աբսոլուտիզմը, սիրտը եւ բանականութիւնը: Նա ե՛ւ հումանիզմի մի նախակարապետն է ե՛ւ սխոլաստիկ: Առհասարակ, հայի մէջ ներդաշնակ չեն կուլտուրաստեղծ էներգիան եւ քաղաքական զգացումը: Հենց Նարեկացին մի Ֆաուստ է 10-րդ դարում, համակւած Գէօթէի ասած «երկու հոգիների պայքար»ով:

6) Ազգային էութեան արձանացում. - Հայկական ճարտարապետութիւնը համարւում է «մայր քրիստոնէական եկեղեցական ճարտարապետութեան» եւ կրում է արիական կառուցակերպի, ոճի եւ գծի կնիքը: Դա արտայայտում է հայոց ազգային անձնաւորութեան արձանացումի տենդը: Այդպիսի արձանացման յանգում է նաեւ գոթական ոճը:

Նշանակալից է որ հայերի եւ գերմանների պատմութիւն եւ մեծապետութիւն ստեղծելու կամքը, այսինքն՝ պատմական զգացումի եւ ոգու զարգացման շրջանները, ժամանակագրօրէն զուգադիպում են միմեանց (Բ. եւ Ա. դար Ք.ից առաջ): Կա՞ր արդեօք գիտակցական կապ երկու ժողովուրդների միջեւ: Յամենայն դէպս, ընդհ. թշնամի Հռոմի դէմ նրանք գործեցին յօգուտ միմեանց եւ դրանով փրկւեցին ռոմանացումի վտանգից:

Նոյնանման երեւոյթ տեղի ունեցաւ Միջին Դարում, երբ հայերն ու բուլգարները, թերեւս առանց գիտակցական զինակցութեան, կռւելով Բիւզանդիոնի եւ բիւզանդական էութեան դէմ՝ փոխադարձաբար նպաստեցին միմեանց ազգային ինքնութիւնը փրկելու գործին:

Այս տեսակէտով նշանակալից է նաեւ 6 եւ 7-րդ դարում Հայաստանում ծայր տւած, Բուլգարիայում բոգոմիլիզմը խմորող եւ եւրոպական պրոտեստանտիզմի նախօրինակը համարւող պաւղիկեան շարժումը, որ ոտքի ելաւ բիւզանդական ցենտրալիզմի, օրթոդոքս էութեան, չափազանցեալ միստիցիզմի, պատկերապաշտութեան դէմ: Հետագային գերմանացիք նման շարժումով նսեմացրին Հռոմի Աթոռի կշիռը եւ ունիվերսալիզմից ան-

ցան ազգային էութեան արձանացումին:

Այս տենդն այնքան զօրաւոր էր հայերի մէջ, որ նրանք Գ. դարի վերջում կամ Դ-ի սկզբում ընդունելով քրիստոնէութիւնը, իրենց ազգային ինքնութիւնը հակադրեցին հռովմէականութեան եւ իրանիզմին, իսկ Արեւմուտքի քրիստոնէացումից յետոյ, դաւանապէս կղզիացան Ազգային եկեղեցու շուրջը:

Բաւարարուենք սաւածով եւ անենք մի քանի եզրակացումներ: Որպէս արեան եւ ոգու էակիցներ՝ հայերը եւ գերմանացիները ունեն խառնւածքի ընդհանուր գծեր: Դրանցից, պատմագործական տեսակէտով, մասնաւոր նշանակութիւն ունեն, լինելիական զգացումը, կենսաբանական հզօրաքափ դինամիզմը եւ էութեան երկուութիւնը («ես»ի տարանջատումը, որ կնքում է ազգարժէք երկու ստեղծագործութիւնների - «Նարեկ» եւ «Ֆաուստ» - նկարագիրը): Լինելիական զգացումով եւ կենսաբանական զօրաւոր դինամիզմով պայմանաւորւում է երկու ժողովուրդների մղումը՝ ինքնայատուկ խանդ, ոճ ու երանգ տալու յաւիտենականութեան եւ ազգային էութեան արձանացման վերաբերեալ ամեն ստեղծագործութեան: Էութեան չեշտւած դուալիզմի հետեւանք են ստեղծագործական կամքի պառակտումը եւ քաղաքական անհատապաշտութիւնը, որից հայերն ու գերմանացիները հաւասարապէս տառապեցին դարերով: Օժտւած իմացական կարողութիւններով (հակառակ որ վերջին դարերում հայերը իմաստասիրութեան մարզում անպտուղ մնացին) նրանց պակսեց համապետական կամքը: Հայաստանում զուր անցան տարօնական հայերի (Այրարատի եւ Տարօնի գլխաւորութեամբ) միութեան ճիգերը, իսկ Գերմանիայում՝ դարերով իրար դէմ մաքառեցին աւատապետական ոյժերը, պրոտեստանտիզմը, կաթոլիցիզմը, պրուսիական էութիւնը մարմնացնող Հոհենցոլլերնները, աւստրիական Հաբսբուրգները եւն.: Մեզանում քաղաքական միութեան իդէալը բանաձեւուեց («Միացեալ եւ Անկախ Հայաստան»), երբ ամեն բան կորցրած՝ սեղմւել էինք Այրարատում: Հայը իր ոգին շարժման մէջ է դնում, երբ կորցնում է իրականութեան հողը: Պակասաւոր է նրա իրականութեան զգացումը, հակասութիւն կայ հայի քաղաքական զգացումի եւ երազի միջեւ: Մինչեւ ռասիստական շարժումը՝ այդպէս էին ե՛ւ գերմանացիները (քանակական եւ որակական տարբերութիւնները - մեր նկատմամբ - հաշւի առնելով): Այդ շարժումով հնարաւոր դարձաւ գերմանական ազգի հոգեբանական միատարրութիւնը: Պատմա-հոգեբանօրէն դա նշանակում է՝ ալպեան եւ նորդեան մինչեւ այժմ ներհակ հոգեգծերի ներդաշնակում: Կայծակի հարւածով չեղաւ դա, այլ՝ դարերի հոգեւոր ճիգով: Քաղաքական իմաստով, Գերմանիան նո՛ր է դառնում ազգութիւն, բարոյական իմաստով՝ նա այդպի-

սին էր վաղուց: Քաղաքական յաջողութիւնը մի՛շտ էլ ենթադրում է բարոյական նախապատրաստութիւն:

Կարծում ենք, որ հասկանալի դարձաւ, թէ ի՞նչ է վերապահուած տարօնականութեան - հայութեան բարոյական նախապատրաստութիւնը, հոգեբանական միատարրութիւնը՝ վերաքննական ոգու միջոցով:

---

* - Սոյն հոդվածը՝ «Հայ եւ գերման ոգու եւ արեան էակցութեան մասին (գերմանացոց ռասիզմի եւ հայոց տարօնականութեան պատմական դերը)» վերնագրով, լույս է տեսել 1939թ.-ին, «Տարօնի Արծիւ»-ի թիվ 8-ում: Այն չի կարող դիտվել որպես՝ այդ տարիներին, զուտ քաղաքական նկատառումներով արված բարեխոսություն. դեռ ժամանակին Րաֆֆին էր ասում՝ «Հայն ասիական գերմանացի է... Մեր մեջ նմանություններ կան, ամեն կողմից նայելով»:

Արյան գծով հայերի ու գերմանացիների էակցությունը հիմնավորող հեղինակի բերած փաստարկները, հաշվի առնելով գիտության արդի նվաճումները, ժամանակավրեպ են, եւ մենք բավարարվել ենք հոդվածի՝ երկու ազգերի ոգո՛ւ էակցությանն առնչվող մասերը ներկայացնելով: - ԽՄԲ.

# ՄՈՆԳՈԼԱԿԱՆ ԵՂԵՌՆԱԲԱՂՁՈՒԹԻՒՆ

(հատված Հայկ Ասատրյանի «Հայաստան - Արիական նախադիրք Առաջավոր Ասիայում» գրքից)

Մոնգոլական ցեղի ցայտուն հոգեգծերից են՝ սեռակենտրոնութիւնը եւ եղեռնաբաղձութիւնը: Առաջինով մոնգոլատիպ էակն ուրւագծում է իր բաղձանքները, երկրորդը՝ ծառայեցնում է որպէս նպատակահասութեան միջոց: Սեռակենտրոնութիւնը թէ եղեռնաբաղձութիւնը հետեւանք են ներքին անզօրութեան զգացումի: Արիատիպ մարդը նպատակին ձգտում է ոգեկան ոյժերի լարումով, մոնգոլատիպը՝ ոճիրով: Առաջինն ողբերգական խորք ունի, երկրորդը՝ անխտրողական է կարճագոյն ելքին ծառայող միջոցների խնդրում: Նա մտածում է նաեւ իրերի վախճանաբանութեան մասին. սա տեսնում է միայն իրերը, ուստի՝ ամենավերացական համարւած իր յղացումներն իսկ հազիւ են հասնում անընազանցական մի ճակատագրապաշտութեան սահմանին: Իրականում անհաւատ՝ մոնգոլն ամենավարպետ կերպով կեղծում է մոլեռանդութիւն: Վերացական ամեն բանի երեւութական արժէք է տալիս, երբ դրանից գործնական շահ ունի: Սիրում է հաճոյքը, բայց չունի ուրախ հոգի: Անընդունակ է արժէքներ ստեղծել, բայց ունի զգայական վայելքի մոլուցք: Մշակոյթ, արւեստ չի ստեղծում, բայց համեմատաբար շուտ է իւրացնում նիւթական քաղաքակրթութիւնը եւ սրա յարմարութիւններից օգտւելու ձեւերը: Մեծագլխութիւնը եւ կարճոտութիւնը նրան դարձնում են ծոյլ եւ մակաբոյծ: Ձին չի հեծնում ասպետական գործեր կատարելու խանդով, այլ՝ իր մարմինը փոխադրելու պահանջից: Ձիու վրայ աւելի քնանում է, քան թէ երազում: Ժանտազգացօրէն նեղսիրտ է եւ իր ամենազօրաւոր զգացումն է ատելութիւնը: Իր ոյժերը ծնունդ են իր ներքին տկարութեան: Անչափելիօրէն վախկոտ է, բայց եւ անհունօրէն անգութ: Մի վայրկեանում դա աւելի է ստրկանում, քան թէ արիատիպ մարդը՝ տարիների, սերունդների ընթացքին: Որպէս ներքին սարսափի էակ՝ դա աշխարհում իրան պարտադրում է սարսափով: Ներքին սարսափի զգացումը միացած ծուլութեան՝ նրան դարձնում են ամենադաժան մակաբոյծը: Մոնգոլն է միայն ընդունակ ստեղծելու «ենիչերիական» դրութիւն: Դրա քաջութիւնը բղխում է նենգութիւնից, քաղաքական իրապաշտութիւնը՝ հաւատարմութեան զգացումի կատարեալ բացակայութիւնից: Դա զուրկ է պատմական ապրումից, բայց սքանչելիօրէն գիտէ օգտւել վայրկեանից: Դա ո՛չ տեսնում է հեռաւորը, ո՛չ էլ մտածում նրա մասին, բայց որպէս չոր ներկայապաշտ՝ յաջողւում է անցաւոր արդիւնքներով իրան ապահովել անստոյգ մի ապագայ: Դա խորշում է

վերացականից, զուրկ է յաւիտենականութեան զգացումից, տենչութիւնից, անընդունակ է անցաւորում արժէքներ տեսնել եւ սարսափում է ապագայից, ուստի՝ ո՛չ կարողանում է դիւցազներգութիւն ստեղծել, ո՛չ էլ ճշմարիտ բանաստեղծութիւն: Յաւաքաբար դա կատարում է քաջութեան գործեր, բայց ծնունդ չի տալիս հերոսների, այսինքն՝ նպատակի մարդկանց: Հերոսը, սուլթանը, նրա համար այնքան հմայք ունեն, որքան դեռ մարմնապէս ապրում են: Կարճայուշ է, ուստի եւ՝ ապերախտ: Դա հասկացողութիւն չունի ոգու պաշտամունքի մասին եւ շուտ է մոռանում իր հօրը, իսկ պապերով չի էլ հետաքրքրւում (հայրութեան զգացումի չգոյութիւնն էր, որ մղեց նրան «թրքութեան հայր» յայտարարել Քէմալին դեռ նրա կենդանութեանը): Դա անփոյթ է նաեւ դէպի իր զաւակների ապագան: Այդ բոլորով հանդերձ, անձնական «ես»ի զգացումն էլ աղօտ է իր մէջ: Նրա ընտանեկան, ընկերային թէ կրօնական ամբողջ կեանքը դառնում է սեռային յոյզերի շուրջ: Նրան մահմեդական է դարձրել ո՛չ թէ Կորանի իմաստութիւնը, շքեղ ոճը, այլ նրա զգայական խոստումը՝ դրախտային կանանց մասին: Սեռակենտրոնութեան հետ՝ բնութիւնը նրան տուել է ե՛ւ ժանտատեսիլ կերպարան: Տեղային երկու այս յատկանիշների շնորհիւ՝ նրա մէջ միացած են պղծումի եւ եղեռնագործումի բաղձանքները: Արիատիպ մարդը բնազդական գարշանք ունի դէպի միւս ցեղերը, որովհետեւ նրա մէջ ազդու է ներքին զգացումը՝ սեփական արեան ազնւութեան մասին: Մոնգոլը իրանից դուրս է տեսնում գեղեցկութիւնը, ազնւութիւնը, ուստի՝ ունի արիւնախառնումի անյաղթահարելի մղում: Այդ անյաղթահարելիութիւնը հանդիպելով մասնաւորապէս սպիտակ ցեղի գարշողական վանումին՝ մոնգոլի մէջ յարուցում է նախանձի մղձաւանջ, որ բաւարարութիւն է ստանում պղծումով կամ ոչնչացումով: Ահա՛ թէ ինչո՞ւ մոնգոլական ցեղի վարած բոլոր կռիւների շարժառիթներն եղել են սեռային, եւ հետեւանքները՝ ոճրախառն պղծագործումներ: Ահա՛ թէ ինչո՞ւ այդ ցեղի բոլոր ներկայացուցիչների մէջ անեղծանելի բնազդների ոյժով գործում են նենգամտութիւնը, ճարպիկօրէն կեղծելու անմրցելի ընդունակութիւնը, պղծաբաղձութիւնը, եղեռնաբաղձութիւնը, կողոպուտի, ոչնչացումի տենդը, եւ այդ բոլորի հետ՝ դաժան սրամտութիւնը, սադիստական հեգնանքը:

Դեռեւս Ե. դարու մի պատմագիր - Ամմիանոս Մարկելինոս - նկարագրելով հոների կեանքը, ասում է. «Նենգամիտ եւ փոփոխամիտ են նրանք եւ վայրի գազանների նման... անընդունակ ուղիղը զանազանելու անիրաւից: Ո՛չ մէկ յարգանք ունեն որեւէ կրօնի... հանդէպ. չափազանց ցանկացող են ոսկու, եւ այնչափ են յեղյեղուկ, որ օրը մի քանի անգամ կռւում են իրար հետ՝ առանց որեւէ պատճառի եւ շուտով էլ հաշտւում՝ առանց զոհացում ստանալու: ... Նրանց սրունքներն այնքան անճոռնի են, որ արգելք են դառնում քայլելու: ... Յաճախ կնոջ նման են նրանք ձի հեծնում»...

Տասնեւմէկերորդ դարից թաթար հորդաներն երեւում են Հայաստանում: Դէպքերին ականատես հայ պատմագիրներից Կիրակոս Գանձակեցին նրանց մասին վկայում է. «...կաթնկեր մանուկներին զարկում էին քարերին, մատաղատի աղջիկներին յափշտակում... հոսում էր արիւնը. ո՛չ մայրերի արցունքներին էին խղճում, ո՛չ ծերերի սպիտակ մազերին: Հայոց աշխարհը ծածկւեց դիակներով»:

Համրածանօթ են Բաղդադի զարհուրանքները - մարդկային գանգերի բուրգեր: Ուրիշ տեղերում՝ արեան լճգանքներ: Սեբաստիայում՝ 4 000 հայ պատանիների կենդանի թաղումը:

Կողոպուտի տենչը, սեռային ցանկութիւնը, պղծաբաղձութիւնն ու եղեռնաբաղձութիւնն են եղել մոնղոլական բոլոր աշխարհակալներին եւ հորդաներին առաջնորդող ոյժը: Այդ ոյժն է վարել անգամ թուրքական երկու ամենաերեւելի աշխահակալներին - սուլթաններ Մէհմէդ Բ.-ին եւ Սուլէյման Ա.-ին, որոնք ստեղծել են օսմ. պետութեան փառքը եւ պատմութեան մէջ էլ ճանաչւում են որպէս զօրաւոր եւ լուսամիտ անձնաւորութիւններ (Մէհմէդ Բ. Ֆաթիհը ցուցահանում էր անգամ գրական հակումներ, եւ շատ եւրոպացիներ նրան ընդունում են որպէս Ռէնեսանսային մի դէմք): Բիւզանդիոնի պարիսպների առջեւ (28 մայիս, 1453) սուլթան Մէհմէդ Բ.-ը ճառ է խօսում, իր բանակին խոստանալով գրաւելի քաղաքի կիները, աղջիկները եւ գեղեցիկ պատանիները: Կ. Պոլսի գրաւման օրն այդպէս էլ եղաւ: Պղծւեցին անխտիր կանայք, կոյսեր, պատանիներ եւ մանուկներ՝ երկու սեռից: Անասելի այդ խայտառակութիւններին անձամբ մասնակցեց ինքը՝ «ռէնեսանսային» սուլթանը: Նա ոչնչացնել տւեց գերի մնացած յոյն հրամանատար Նոթարասն ու սրա ամբողջ ընտանիքը, որովհետեւ նա զլացել էր 14-ամեայ գեղանի իր տղան յանձնել սուլթանի կրքերին: Սուլէյման Ա.-ի ժամանակ, երբ Հռոդոսում պաշարւած քրիստոնեաները դիւցազնաբար դիմադրելով, ի դերեւ էին հանում թուրքական ներխուժումի բոլոր փորձերը (1522), սուլթանն իր բանակը խանդավառելու միջոց ընտրեց հետեւեալը - ամբողջ 12 ժամ անընդհատ նա մունետիկներին կանչել տւեց. «Վաղը յարձակում, հողն ու քարը՝ Փադիշահին, բնակիչների արիւնն ու ինչքը՝ յաղթողներին»: Արեան եւ կողոպուտի տենչը հետեւեալ օրը 12 հազար թուրքերի դիակներ թափեց Հռոդոսի ափերին, բայց ողջ մնացողները շարունակեցին յարձակումները (տալով 60 հազարի չափ զոհեր), որովհետեւ մոնղոլը կանգ առնել չգիտէ միայն մի բանի առաջ - կողոպուտի, եղեռնագործումի հեռապատկերի:

Ի՞նչն է փոխւել այդ օրերից. փոխւել է մասամբ թուրք ազգի արիւնը: Նա ծուլել է փոքր-ասիական բազմաթիւ փոքր ժողովուրդներ: Օսմանեան կայսրութեան պատմութեամբ եւ թուրք ազգի ցեղային բաղկացութեամբ զբաղւող բազմաթիւ հեղինակաւոր պատմաբաններ, ցեղաբաններ միաբերան

վկայում են, որ դա ամենախառնարիւն ժողովուրդն է: Աւելին. օսմ. հզօրութեան գաղտնիքը հէնց այդ բազմազան ժողովուրդների շաղախից կազմուած ենիչերիական գնդերի մէջ է. «Նրանք թուրքի համար շահեցին կայսրութիւնը... Օսմանեան մեծութեան ամենափայլուն օրերին՝ բնիկ թուրքերն իջած էին գրեթէ հպատակ մի ժողովրդի վիճակին: Սուլթանների վարչական պաշտօնները ղեկավարում եւ բանակներին հրամայում էին Արեւելքից բերուած գերիներ, Արեւմուտքից յօժարակամ հաւատուրացներ, յոյն եւ սլաւ ընտանիքներից հարկահաւաքումի ենթարկուած տղաներ: ...Սատանայի կամ մարդու խորամանկութիւնը չի կարողացել երբեք հնարել բռնակալութեան այսպիսի սոսկավիթխար մի մեքենայ: Նուաճուած ազգերի շղթաները դարբնեցին իրանց իսկ ձեռքերով: Նրանց ամենալաւ արիւնը քաշւեց, առնւեց իրանցից, որպէսզի առաջն առնէ իրանց՝ յաղթականների արեան վատասերման: Նրանց ամենաhուժկու եւ ամենագեղեցիկ զաւակները, ամենակորովի մարմնակազմ եւ իմացական ամենասուր կարողութիւն ունեցողները... վերցւեցին եւ դարձւեցին մասնաւոր գործիքներ՝ իրանց արենակիցների ստրկացման» (Ֆրիման): Օսմանեան պատմութիւնը խորապէս ուսումնասիրած մի հեղինակութիւն (Իվըրսլի) ասում է, որ օսմ. աշխարհակալութեան գլխաւոր ոյժը հանդիսանում էր Փոքր-Ասիայի ոչ-թուրք ժողովուրդների զինւորականութիւնը: «Թուրք ցեղից չէին մեծագոյն մասն այն զորավարների, որոնք նշանաւոր հանդիսացան յաղթութիւնների կանխագոյն օրերին, այլ՝ իսլամացած յոյներ, սլաւներ, ալբանացիներ, իտալացիներ»:

Նոյնն են ասում բոլորը, որոնք փորձել են լրջօրէն պատասխանել այն հարցին, թէ ինչո՞ւ օսմանեան կայսրութիւնը չունեցաւ Ատտիլայի, Չենկիզ Խանի, Թիմուր Լանգի աշխարհակալութիւնների վախճանը, այսինքն՝ ինչո՞ւ դա երկարատեւ եղաւ: Պատմական այս երեւոյթի գաղտնիքը քրիստոնեաներին օգտագործելու դաժան, այլ իմաստուն այն քաղաքականութեան մէջ է, որում օսմանեան աշխարհակալները մնացին անմրցելի:

Օսմանեան պատմութեան քաջածանօթ բոլոր հեղինակները կայսրութեան անկումն էլ բացատրում են ցեղային գործօնների ներազդեցութեամբ: Նախ՝ հոգեբանութեամբ աստիճանաբար թուրքացան իսլամացած քրիստոնեաները, ապա՝ 1648 թւականից վերջ տրւեց ենիչերիական գնդերը քրիստոնեայ երեխաներից կազմելու դրութեան: Բազմացել էր կայսրութեան իսլամ բնակչութիւնը եւ զինւորութիւնը հաւաքւում էր առաւելապէս թուրք եւ արաբ տարրերից, որով՝ ինչպէս Իվըրսլին է նկատում, «բանակին պակասեց անցեալում յոյների եւ քրիստոնեայ այլ ցեղերի տւած ոգին»:

Այստեղ ծագում է ցեղաբանական-հոգեգիտական շա՛տ կարեւոր մի հարց: Անկասկած, ոգու եւ արեան միջեւ գոյութիւն ունի բնական մի զուգահեռականութիւն, փոխադարձ ազդեցութիւնների մի օրէնք: Բայց եւ այնպէս

կենսաբանութիւնը, հոգեբանութիւնը, ժառանգաբանութիւնը դեռեւս լրիւ կերպով չեն բացատրել այն հարցը, թե ինչո՞ւ արենախառնումի դէպքում տիրապետող են մնում մարմնական թէ հոգեւոր ստորին յատկանիշները, այսինքն՝ ինչո՞ւ, օրինակ, սպիտակ ցեղի եւ դեղինի կամ սեւի խառնուրդից առաջացած սերունդը մարմնական յատկանիշներով, մանաւանդ հոգեգծութեամբ աւելի դեղին է, սեւ, քան թէ սպիտակ: Շատերն են պրոֆ. Շըվլի նման հարցնում. «Կարո՞ղ է պատահել, արդեօ՛ք, որ մի ժողովրդի նկարագիրն որոշելու խնդրում ունակութիւնները, գաղափարները վճռական աւելի՛ դեր ունենան, քան արիւնը, ցեղը... Օսմանցիք, որ ցեղային տեսակէտով եւ մարմնական յատկանիշներով հազիւ թէ կարող են թուրք կոչուել (այնքա՜ն արիւնախառնուել են նրանք), այնուամենայնիւ, թուրք են կատարելապէս... թուրք են իրանց մտքերով»: Եւ շատերն են իտալացի պատմաբան Ֆերրերոյի հետ պատասխանում. «... մարդու հոգեբանութիւնն իր խորքում նոյնն է մնում, եւ նոյնիսկ, եթէ դարաշրջանից դարաշրջան մեծապէս փոխուի նրա միջավայրը, դա չի փոխում նրա մտքերի հիմնական բնոյթը»: Բայց մարդու ո՛չ միայն մտքերի, այլեւ հոգեգծերի բնոյթը փոխւում է այլասերումի միջոցով: Այլասերումն ինքնին հնարաւոր է դառնում ա՛յն իրողութեամբ, որ դրան ենթակայ էակների մէջ ծլլուած են իրանց նախկին ցեղի բարոյական թէ հոգեկան ոյժերը: Այլասերուածները պահում են միայն արեան խառնւածքը (տեմպերամենտ), իսկ հոգեգծութեամբ նրանք ամբողջովին նւաճւում են ձուլող ցեղի, ազգի, ժողովրդի կողմից: Ոգին աւելի՛ է պահպանողական, քան արիւնը, բայց ինքնապահպանումի հնարաւորութիւն ունի միայն ազգային, ցեղային ձեւ ու բովանդակութիւն ստացած ոգին: Այլասերուածը կորցնում է ոգեպահական իր կարողութիւնը: Նրա մէջ գործող բնազդական ոյժերը մղում են նրան իր ինքնապաշտպանութիւնը պայմանաւորել ձուլող ժողովրդի հոգեբանութեան իւրացումով: Յայտնի է, որ կենսաբանական թէ հոգեբանական պատճառներով, ցեղերի արենախառնումով չի ազնւանում նրանցից նւազարժէքը, այլ խաթարւում, վատասերւում է արժէքաւորը: Այսպէս՝ քրիստոնեայ ժողովուրդներից ստացած արիւնն ո՛չ թէ բարեխառնութիւն մտցրեց թուրքերի բնազդների աշխարհում, այլ հոգեբանութեամբ թուրքացրեց ձուլուածներին: Աւելին. ուրացող սերունդների մէջ առանձնապէս շեշտւում է նւաճող ժողովրդի հոգեգծերն իւրացնելու եւ ցուցադրելու բռնազբօսիկ ճիգը, որ խաթարումի օրէնքով, աստիճանաբար յանգում է մոլեգնութեան: Այդ է պատճառը, որ, օրինակ, Կոնիայի շրջանի համեմատաբար զտարիւն մնացած նախկին սելջուկների օրւայ սերունդներն եղեռնաբաղձութեան մէջ աւելի՛ են կրաւորական, քան միւս շրջանների խառնածին, թաթարական տիպը գրեթէ կորցրած թուրքերը:

Առանց ըստ էութեան աւելի խորանալու հարցի մանրամասնութիւնների

մէջ, մենք բաւարար հիմքեր ունենք եզրակացնելու, թէ արիւնն է նախապէս որոշում ոգու ճակատագիրը, բայց մի անգամ կաղապարւած ոգին ապրում եւ իշխում է տւեալ ժողովրդի մէջ, թէկուզ սա ամենայորդ արենախառնումով փոխած լինի մարմնական իր յատկանիշները:

Պղծումով ոճրագործելու հրճւանքը հնուց ի վեր յատուկ է մոնգոլ ցեղին եւ հետեւանք է նրա եղեռնաբաղձ ոգու անփոփոխելիութեան: - «Թիմուր Լանգը վայրենի իր ձիաւորների ոտքի տակ ոչնչացնել է տալիս վրացի պատանիների եւ երեխաների ամբողջ խմբեր: Սուլթան Ջալալէդդինը, ԺԳ. դարում, հազարաւոր երեխաներ թափում է գետերը. նա ոչնչացնում է 100 000 վրացի: Վերցնել է տալիս Սիոնի տաճարի գմբէթը եւ բարձրանում նրա վրայ, որպէսզի հրճւի Թիֆլիսի բնակչութեան պատճառած չարչարանքների պատկերից»: Արտայայտութեան իրանց ձեւերով 19 թէ 20-րդ դարերում տեղի ունեցած յունական, բուլգարական, հայկական, քրդական եւն. եղեռներն ոչնչով են տարբերւում պատմական անցեալում թուրքաթաթարների գործած նախճիրներից: Դրանք բոլորն էլ պարտւածների, խաբէութեամբ անձնատուր եղածների կամ դիմադրելու որեւէ հնարաւորութիւնից զրկւածների զանգւածային ոչնչացումներ են - զազրելի, գարշագործ տեսարաններ՝ պղծումի, չարչարումի եւ արիւնարբումի: Պատմութիւնից յայտնի է, որ դեռ Տուղրիլ Բէգի, Ալփ Արսլանի օրերին սովորութիւն էր խմել զոհերի տաք արիւնը կամ նրանով բաղնիքներ առնել: Թիմուրն ողջ-ողջ թաղել էր տալիս մարդկանց եւ նրանց հողաթմբերի վրայ ձիարշաւային խրախճանքներ սարքում: Ռուսաստանում՝ թաթարները գետին էին պառկեցնում տղամարդկանց եւ նրանց վրայ՝ հաւաքական բռնաբարման ենթարկում կանանց: Նրանք ապականում էին եկեղեցիները, գերեզմանոցների խաչքարերը, պղծում սրբերի, սրբուհիների պատկերները: Անիի մայր տաճարի գմբէթը խորտակելուց յետոյ, Ալփ Արսլանը վերցնել տւեց նրա ճաճանչափայլ մեծ խաչը, որ իբրեւ մահմեդականների ոտից կոխան՝ զետեղւեց Նախիջեւանի մզկիթի դրան շեմին:

Պղծումով ոչնչացնելու բոլոր այս ձեւերը վերակրկնւեցին Հայկական Եղեռնի օրերին: Շատ դէպքերում, անգամ կանոնաւոր բանակի զինւորները ճեղքել են յղի կանանց որովայնները եւ ծնանելի երեխաներին ցցած իրանց սւինների ծայրը՝ խրախճանքներ են սարքել: Գանակոծումից կամ վէրքերից հոգեվարող ծնողների առաջ, պղծումով սպանել են նրանց երեխաներին: Շատ վայրերում, ինչպէս Մանազկերտի, Արճէշի գիւղերում, երեխաներին ողջ-ողջ նետել են եռացող կաթսաների մէջ, ապա նրանց խաշւած դիակները դրել զարհուրանքից խելագար մայրերի առաջ, պահանջելով՝ կա՛մ իսլամն ընդունել, կա՛մ ուտել սեփական զաւակների եփւած միսը: Գեղանի աղջիկներին, հարսներին, որոնք մերժել են ենթարկւել սպանիչների կրքե-

րին կամ ընդունել իսլամը, նահատակել են աստիճանական անդամահատումով՝ քաշելով նրանց եղունգները, ատամները, մէկիկ-մէկիկ կտրելով մատները, ականջները, քիթը, շրթունքները, փորելով աչքերը: Զազրելի անարգանքների են ենթարկել մասնաւորապէս հոգեւորականներին, որոնցից շատերին խոշտանգելուց յետոյ, կիսամեռ կամ մեռեալ վիճակում՝ նաեւ խաչել են: Եկեղեցիները, վանքերը կործանելուց առաջ (եւ թանկարժէք առարկաները կողոպտելուց յետոյ), ապականել են: Գրքերն այրել են, որմնանկարների սրբերի աչքերը փորել են ուժնով: Յիսուսի, Տիրամօր, սրբերի, սրբուհիների պատկերներն ոչնչացրել են հրիշային պղծումներով - որպէս թէ իրական մարդկանց բռնաբարելիս, չարչարելիս եւ սպանելիս լինեն: Այս բոլորն ո՛չ միայն 1915-ին՝ թուրքաց Հայաստանում, այլեւ հետագային՝ անգամ Կովկասում: Բագւի 1918թ.-ի դէպքերին ականատեսները պատմում են, որ թուրքերը խմում էին մորթւած հայերի արիւնը կամ ջախջախելով նրանց գանգերը՝ ուղեղները քսում էին իրանց լաթերին: Եւ, վերջապէս, նախորդ համաշխարհային պատերազմի օրերին ֆրանսիացի, անգլիացի, մասնաւորապէս յոյն սպաները, զինւորները զգացին, որ թուրքի ձեռք գերի ընկած մարդը չի կարող իր պատւով մեռնել, որ դա իր զոհերին չարչարում է պղծելով, սպանում է երկարատեւ խոշտանգումով եւ թաղում՝ ապականելով:

Արիական ցեղին է յատուկ հաւատը, թէ ստեղծագործ ոգին մահ չունի: Թուրքի ոգում անկործնելի է միայն ոչնչացումի, եղեռնումի, պղծումի զգացումը: Դա կարող է պատմական եւ ո՛չ մի յիշողութիւն չունենալ Տուղրիլի, Ալփ Արսլանի, Թիմուրի, Չենգիզի մասին, բայց բնազդների շղթայազերծման ժամանակ, հարազատօրէն վերակրկնում է նրանց գործերը: Այս պարագան ինքնին մի ապացոյց է բնազդների, ոգու զօրաւոր ինքնապահպանութեան, ինչպէս նաեւ այն բանի, թէ քաղաքակրթական ձեւերի իւրացումով, ստորնաբնազդ մի ցեղ չի կարող ընդունակ դառնալ նաեւ մշակութաստեղծումի, եւ թէ արտաքին բոլոր կարգի ազդեցութիւնները - անգամ կրօնը, դաստիարակութիւնը - նպաստում են միայն ներքին ընդունակութիւնների զարգացմանը, բայց ո՛չ երբեք փոխում նաեւ ոգու բնութիւնը: Այստեղ՝ բուն պատճառը Հայկական Եղեռնի:

*Սոֆիա, 1942թ.*

# Գ. ՆԺԴԵՀԻ «ՑԵՂԻ ՈԳՈՒ ՇԱՐԺԸ»

*(մի փոքրիկ մեկնաբանութիւն)*

Քչեր, շա՜տ քչեր մեր կեանքում խօսում, գրում կամ գործում են «արիւնով ու ջղերով»:

Բարձր տեմպերամենտի եւ հզօր անհատականութեան հոգեբանական տիպարներ են դրանք, որոնք աչքի են ընկնում իրենց հարազատած գաղափարներն ու ճշմարտութիւնները կրօնական էնտուզեազմով ապրելու յատկութեամբ եւ իրենց ինքնատիպ ոճով - ընդհանրապէս ֆրագմենտար բնոյթի:

Անկասկածօրէն դրանցից մէկն այս գրքոյկի հեղինակն է - մի մարդ, որ իր խառնուածքը խորհրդանշող ֆրագմենտար մտածումով ու ոճով, յաճախ երեւում է հայ խօսքի ամբիոնի կամ հայ մամուլի եւ գրքի էջերում:

Սոյն հրատարակութեան առումով-որ ի դէպ միայն բեկորներ է բովանդակում Նժդեհի հռետորական ստեղծագործութիւնից - չենք ուզում լայնօրէն զբաղուել հեղինակի անձնաւորութիւնը կերպաւորող հոգեւոր տարրերով, չենք ուզում անգամ նրա աշխարհայեցողութեան ամբողջական պատկերը տալու փորձն անել: Դրա հանդէպ տուրք տալով ա՛յն վարկածին, թէ երկը հասկանալու համար անհրաժեշտ է երկասիրողը ճանաչել, մի քանի ընդհանուր գծերով պիտի դիմորոշենք հեղինակը, այսինքն պարզենք հոգեւոր կարգի ա՛յն տուեալները, որոնք պայմանաւորում են նրա ցեղաշունչ գործը եւ գրուածքը:

Որո՞նք են դրանք:

Ա) Բարձր տեմպերամենտ.- Ո՛չ միայն Նժդեհի խօսքը, այլեւ նրա գրական ոճը թողնում են ա՛յն անսայլայլ տպաւորութիւնը, որ նա բարձր տեմպերամենտի մի ստեղծագործ է: Յոգեբանական այս տիպարի առանձնայատկութիւններից մէկն ա՛յն է, որ նա հազիւ թե զբաղւում է արտա - «ես» - եան իրականութեանց վերլուծմամբ, եւ, ընդհակառակն, անդադար դեգերում է սեփական «ես»ի անդունդներում: Ինքնապրպտումով է կառուցում նա իր ճշմարտութիւնները: Նշանակապաշտ է նա եւ խորհրդապաշտ. մտածելիս՝ ընդվզում է բանապաշտական դատելակերպի դէմ, ճգնում է խուսափել հոգեւոր մեքենականութիւնից եւ յաճախ կառչում է տարերայինին եւ էնցիոնալին: Նա ապաւինում է ներգերբնականին, սակայն սեփական «ես»ի փլուզման վտանգից սարսափած՝ ներեսում է մի բնական պատուանդան, աստուածացնում է մի համա - «ես», եւ, համակուելով կրօնական վերացման

զգացումով, թափանցում է ենթագիտակցականի մարզում: Համա - «ես»-ը, որ դարձած է Նժդեհի հոգեւոր պատուանդանը՝ ցեղն է: Սա է շեշտում եւ երանգաւորում նրա տեսպերամենտը: Ցեղակրօնութիւնն է լեցնում նրա անձնաւորութիւնը: Ենթագիտակցականը, որում անհատական «ես»ը հանդիպում է ցեղային համա«ես»ի տարերքին, ամեն դէպքում չի՛ հանդիսանում հոգեւոր ներշնչարան: Այդ կախուած է նրանից, թե տուեալ տեսպերամենտն ո՞րպիսի դիրքորոշման է մղում իր անօթին-անհատին, բախողակա՞ն, թէ՞ ներդաշնակելի: Առաջին դէպքում՝ ցեղային եւ անձնական «ես»երի միջեւ ստեղծւում է անկամրջելի մի վիհ, որի հետեւանքով անհատը մատնւում է ներքին ողբերգութեան. նրա տեսպերամենտն սկսում է աղօտանալ եւ ի վերջոյ նա դառնում է սովորական եսապաշտ, անձնական փառասիրութեան մի գերի: Երկրորդ դէպքում՝ երկու «ես»-երի ներդաշնակ ձուլումով կաղապարւում է ցեղատիպ մարդու հուժկու անձնաւորութիւնը: Ներհոգեւորի այս բարեբախտ ձուլումով, ահա՛, կերպաւորուած է Նժդեհի էութեան երկրորդ գիծը - նրա անհատականութիւնը:

Բ) Հզոր անհատականութիւն.- Մէկի հոգեւոր ֆինիոնոմին բնութագրելիս՝ մարդս միշտ էլ որոշ երկմտութիւն է ապրում: Մենք գործ ունենք փոթորկալից անցեալի տէր մի անհատի, հայկական չափանիշով վերցրած պատմական մի անձնաւորութեան հետ:

Նժդեհի անձնաւորութեան մասին խորհրդածելիս՝ մեր դէմ ծառանում են մեկնաբանութեան կարօտ մի քանի բարդ կնճիռներ: Որո՞նք են այս մարդու անհատականութիւնը ձեւակերպող գործօնները. ո՞րն է նրա հոգեւոր գանձերի շտեմարանը. ի՞նչն է նրա կորովն անսպառ դարձնում եւ նրա խօսքի թափը՝ ահռելի: Կարիք չկայ հոգեբանական նոր պրպտումների դիմել: Անհատը միշտ էլ մնում է հոգեւոր թզուկ, եթէ նա չի ներձուլւում մի հաւաքական «ես»ի, եթէ ընդունակ չէ դառնալ նրա մղութիւնների եւ առաքինութիւնների կրողը, նրա ներկայացուցիչը, միկրոկոսմոսը բոլոր դէպքերում, իսկ վտանգի պատմական վայրկեաններին՝ նաեւ նրա մարգարէն, գուշակը եւ առաջնորդը:

Մեր եղերաբախտ ընկեր Յ. Զարիֆեանը յաճախ էր պատմում Դիլիջանի եկեղեցու բակում Նժդեհի խօսած ճառի - Ղարաքիլիսէի պատմական ճակատամարտը հոգեբանօրէն կարելի դարձնող խօսքի - մասին: Նա պատմում էր եւ զարմանում մարդկային խօսքի հոգիները յեղաշրջող եւ ցնցող ոյժի վրայ: Իսկ հիմա՞. 14 տարի յետոյ հա՛րկ է ճշմարտագրել, թէ առանց ցեղի հոգեւոր շտեմարանից օգտւելու բարոյական համարձակութեան, առա՛նց սեփական «ես»ի մակոյկը ցեղի ոգու խռոված ովկիանին յանձնելու բնազդական սիրոյ՝ անկարելի կը լինէր ներքին քաոսի մատնուած, խուճա-

պահար բազմութիւններին նման խօսք ասել եւ պարտուողական ոգիներում ցեղի հզօրանքի յոյսն ու կրակը բորբոքել: Ցեղի ոգու տարերքն էր Նժդեհին Զանգեզուրում դարձրեց հզօր անհատականութիւն, նրա՛ ձայնով է, որ նա ցայսօր էլ մնում է պերճախօս:

Նժդեհի անհատականութիւնը, համոզումները, կրօնը պայմանաւորուած են ցեղով:

Նա պաշտամունք ունի Աւարոնեանի հանդէպ, որովհետեւ սա «անցաւորից յաւիտենականը տանող ճամբի վրայ հանդիպել է իր ցեղի ոգուն» եւ առաջնորդւում է նրա շնչով:

Նա մոլեկրօն դաշնակցական է, որովհետեւ այս կուսակցութիւնը ծնած է մեր «ցեղի ոգու շարժից», որովհետեւ նրա մէջ «ցեղի ձայնը կայ», որովհետեւ նրա խոստացած քարոյական երջանկութիւնը հայ անհատ մարդու հոգեխառնումն է «ցեղի ոգու հետ»:

Նա փառաբանում է Հայրենիքը, որովհետեւ հայ ցեղի հոգեւոր բոյնն է: Օտար երկիրը հայրենիքի «ստուերն է»,- ասում է նա: Նրա համար բոլոր առաքինութիւնների չափանիշը հայրենապաշտութիւնն է: «Անհայրենասէրը անառաքինի է»: «Մշակոյթը հոգեւոր դէմքն է, որով հայրենապաշտումից զուրկ մշակոյթը մշակոյթ չէ»:

Նա երկիւղածութեամբ սպասում է «Հայ Գերմարդ»ի, «Նոր-հայ» մարդու յայտնւելուն, որովհետեւ նրանից է ակնկալում ցեղի վրէժը լուծելու, ցեղի տունը վերակառուցելու նւիրական գործը:

Նա երկրպագում է հայութեան տիտանական ցաւին, որովհետեւ նա ցեղի ցաւն է - ցաւը, որ նրան տալիս է ա՛յն յոյսը, թէ «տառապանքից ու ամօթանքից» ծնունդ պիտի առնի մեր «Նոր կրօնը - հպարտանքի կրօնը»:

Մենք կ՛ասենք՝ նաեւ փրկութեան եւ հզօրանքի կրօնը - «Մա՛ի ներքին տկարութեան»:

«Արիւնով ու ջղերով» ասուած եւ ապա գրի առնուած այս խօսքերը լուծում են Նժդեհի հզօր անհատականութեան գաղտնիքը: Նա պայմանաւորուած է ցեղային մեծ «Ես»ին ներդաշնակօրէն հոգեխառնւելու, համաձուլւելու կարողութեամբ, ասել է ա՛յն ոյժով, որ Նժդեհին մղում է դառնալ հայրենապրումի եւ ցեղապաշտումի մոլեռանդ քարոզիչը:

Գ) Ֆրագմենտարիզմ. - Արդէն նկատեցինք, որ բարձր տեմպերամենտի ու հզօր անհատականութեան հոգեբանական տիպարին իւրայատուկ է ֆրագմենտար մտածում, որով եւ ոճ: Մեր գրականութեան մէջ այսօրակ ոճն իր կատարելութեան է հասնում Նարեկացու մօտ, իսկ համամարդկային հոգեւոր ստեղծագործութեան մարզում՝ նրա տիտանը Նիցշէն է:

Նժդեհի ոճն ու մտածումն էլ կրում են ֆրագմենտարիզմի որոշ դրոշմ:

Նրա մտածումն արդէն զուրկ է սիստեմների շրջանակում սեղմելու ընդունակութիւնից: Բոլո՛ր ֆրագմենտարիստների պէս նա էլ ստեղծագործում է ո՛չ թէ թելերով, որոնք ի վերջոյ հիւսւածքի, այսինքն, սիստեմի պիտի վերածւեն, այլ՝ հանգոյցներով: Ո՛չ թէ խաղաղ զարգացում, այլ՝ խոյանք, ո՛չ թէ երկարապատում եւ զգուշաւոր շարայարումներ, այլ՝ կարճ խորհրդածութեանց յանկարծօրէն յաջորդող վճռաշունչ բանաձեւումներ - ահա՛ Նժդեհի մտածման եղանակը:

Ֆրագմենտար ոճն ըստինքեան ապացոյց է ենթակայի հոգեւոր աշխարհի հարստութեան եւ խորութեան:

Ֆրագմենտարիստը խուսափում է ձեւերից եւ սովորութեանց կոմպրոմիսներ անել: Զօրեղ է նրա մտքի կաղապարիչ ֆունկցիոնը: Բնազանցումի արւեստագէտ է նա: Նրա արտայայտութիւնները պատկերաւոր ընդհանրացումներ են՝ սինթէզ եւ ալեգորի միասին: Նրա երեւակայութիւնն անիշխանական մի ոյժ ունի, մի ոյժ, սակայն, որ միշտ նոր կերպեր է ծնում. ֆրագմենտարիստը նորաստեղծ է: Նրա երջանկութիւնն է դառնալ իր ներկայացրած հաւաքական «ես»ի պատգամախօսը: Այդ է պատճառը, որ մարդկային յարաբերութեանց աշխարհում, հոգեհաղորդ տարրերի համար նա դառնում է անգերազանցելի կազմակերպիչ եւ հրահրիչ, թշնամու հանդէպ, սակայն, մի՛շտ մնում՝ ատելավառ բացասիչ: Սլաքներ ունի ֆրագմենտարիստի խօսքը. նրա մտքերը պայթուցիկներ են, որոնք ձգտում են սրտերը հրդեհել. երկարաշունչ չեն նրանք, որովհետեւ շրթունքի խօսք լինելուց առաջ, սրտի պոռթկումներ են:

Ֆրագմենտար ոճաքանի հոգեբանութեան այս գծերը ընդնշմարում ենք արդէն «էջեր իմ օրագրէն» ու «Բաց նամակներ հայ մտաւորականութեան» գրքոյկներէն, «Որդիների պայքարը հայրերի դէմ» գրքի եւ «Յիշի՛ր պատերազմը» յօդուածաշարքի մէջ: Մենք հանդիպում ենք նրանց նաեւ այս գրքոյկում, ինչպէս նաեւ բոլոր դէպքերում, երբ կարդում եւ մանաւանդ երբ լսում ենք Նժդեհին:

* * *

Յապճեպով եւ հարեւանցիօրէն վերլուծելով երկասիրողի մի քանի գծերը, մենք գրեթէ սպառեցինք մեր խօսքը նաեւ երկի մասին: Նժդեհը նրանցից է արդէն, որոնք նոյնանում են իրենց երկին:

Ի՛նչ յատկապէս սոյն գրքոյկի հրատարակութեան առիթով ընթերցողների ուշադրութեան պիտի յանձնւէր՝ արդէն ուրւագծւեց այս խորհրդածութեանց ա՛յն մասում, ուր խօսք եղաւ հեղինակի անհատականութեան շուրջ:

կրօնականութեան հասնող ցեղապրումի քարոզն է այդ - մի քարոզ, որ իր էութեամբ նոր չէ, սակայն իր թափով՝ նորատիպ: Ժողովուրդների ինքնափրկութիւնն ու յաղթական վերելքը պայմանաւորւում են նրանով, թէ նրանց պատկանող անհատները որպիսի ընդունակութիւն ունեն իրենց անձնական կորովը նւիրաբերել ցեղադրօշ մի գաղափարի իրականացման գործին: Այս նւիրաբերումը, սակայն, ո՛չ այլ ինչ է, քան գործնական իմաստութիւն անհատական անցաւորը ցեղի մէջ յաւիտենական արժէքի, ասել է՝ մշակութագործ ոյժի վերածել: Բայց առանց գիտակցական եւ բնազդական խոր ցեղապրումի՝ անհատը միշտ էլ իր փոքրիկ ոյժով մնում է՝ կենտրոնախոյս:

Իսկ այդ դէպքում ո՞ւր կմնայ մեր վրէժի գործը, ո՞ւր՝ Հայրենիքը վերաշինելու մեր երազը:

Բայց ահա՛ Նժդեհը մատնանշում է ձգողական մի կենտրոն - ցեղի տառապանքը: Սա է աշխարհից մեզ ընծայւած ընդհանրական պարգեւը. ծանր յիշատակի պէս նա չոքել է բոլորիս սրտին: Նա է մեր ցեղի հոգեւոր պիտակը. նրանով է ճանաչում մեզ աշխարհը եւ նրա անունով է, որ պիտի գործենք բոլորս: Տառապա՛նքը, որ իր լծակից սպանիչ ամօթանքով պիտի խեղդէ բոլորիս, քանի դեռ թուրքը մնում է անպատիժ:

Եւ տառապա՛նքը, սակայն, որով կենագործ ազգերն իրենց ցեղի նժոյգն են մտրակում դէպի Յաղթանակ:

Պիտի կարողանա՞նք այս տառապանքը ստեղծագործ ոյժի վերածել - սա է մեր կեանքի մեծագոյն խնդիրը, մեր գալոց պատմութեան միակ խորհուրդը:

Այս գրքոյկն ասում է՝ այո՛: Նա աւետում է մեզ Հայ Գերմարդու երկունքը:

Մեր օրերում, երբ վերջապէս որոշ յուսատու խռովք է նկատւում ոգիներում, երբ անակնկալներով հարուստ մի յղութեան նախանշաններն են ընդնշմարւում հայ կեանքում՝ պէ՛տք է այս ցեղաշունչ գրքոյկը կրկին եւ կրկին կարդալ: Բայց եւ խորհրդածել նաեւ միջոցների, մեր ինքնափրկութեան տեխնիկի մասին: Նրա քարոզած խօսքերը հաճելի են, բայց եւ ծանր պարտականութիւն են դնում մեր ուսերին: Որովհետեւ «մա՛հ ներքին տկարութեան» պատգամը հոգեբանական մեծ նախապատրաստութիւնն է պատմական ա՛յն գործնական եզրակացութեան, որ վաղը չի՛ կարող այլ խօսքով բանաձեւուել, քան «մա՛հ արտաքին թշնամուն»: Իսկ այդ հնարաւոր կը դառնայ ցեղի հոգեւոր տիտանականութեան համապատասխանող մի տեխնիկով:

*«Ցեղի Ոգու Շարժը», Սոֆիա, 1932թ.*

# Գ. ՆԺԴԵՀԻ «ՑԵՂԸ ԵՒ ԻՐ ՏԱԿԱՆՔԸ»

*(խորհրդածութիւններ)*

## Ա.

Մի իմաստասէր նկատում է - մի գրքի արժէքը հասկացւում է նրա առաջին տողերից:

Շատ մտածողներ էլ ասում են - աշխարհի եղելոյթները տառապելով ապրել՝ նշանակում է իմաստասիրել:

Բացէ՛ք Նժդեհի գիրքը եւ անմիջապէս, անգամ «երկու խօսքի» առաջին տողերից պիտի զգաք, որ հեղինակը մեր կեանքի եղելոյթներին մօտենում է տառապելով եւ իմաստասիրօրէն մտածելով:

Սովորական հայ գիրք չէ դա, այլ՝ ուղեփոխիչ մի երկասիրութիւն, որ մեր օրւայ մտածական ինքնուրոյն գրականութեան առջեւ նոր հորիզոններ է բացում:

Նրա արժէքը այն տարբերութեան մէջ է, որ ունի դա մեր հասարակաբանական եւ քաղաքական սովորական յօդւածագրութիւնից:

Օրւայ հայը ձգտում է աւելի երեւոյթների կերպարանը ճանաչել, քան՝ նրանց բովանդակութիւնը ըմբռնել: Նրա մտածումը խորշում է իրերի խորքը, էութեան անդունդները թափանցելու ճիգից:

Այս ճիգը նկատւում է Նժդեհի իւրաքանչիւր խորհրդածութեան մէջ:

Օրւայ հայը զբաղւում է հարցերով, բայց չի շօշափում նրանց սիրտը: Նա ազդւում է դէպքերից, զգայուն է իրականութեան հանդէպ, բայց խուսափում է դրանց ծնուցիչ պատճառների իմաստը մեկնաբանելու տքնութիւնից:

Նժդեհը իր սիրտն է դրել հարցերի մէջ եւ իր երեւակայութիւնը լծել մի գործի - մեր ողբերգութիւնը ներկայացնել պատճառագիտօրէն:

Օրւայ հայը աշխատում է, նոյնիսկ աշխատասէր է, բայց քիչ դէպքերում յաջողւում է ճշմարտօրէն երկասիրել: Իր աշխատանքը նա պայմանաւորում է արտաքին դրդապատճառներով, աշխարհի պարտադրած կարիքներով, որով՝ իր ջանքը չունի ներքխականութեան դրոշմ:

Նժդեհը ամեն վայրկեան բախում է իր ցեղի ոգու դուռը, պրպտումներ է անում նրա էութեան կրակարանում եւ ամէն միտք կամ ճշմարտութիւն բխեցնում է նրանից:

Օրւայ հայը սիրում է արտաքին դիտողութիւնը, դրա համար էլ նրա գրականութիւնը աւելի նկարագրական բնոյթ ունի: Նա նախընտրում է դիւրաբար տպաւորել եւ ոչ թէ իր էութիւնը ստեղծագործօրէն պարտադրել: Նա աւելի խօսում է, քան թէ ապրում, աւելի գրում է, քան թէ մտածում, աւելի քննադատում է, քան թէ քննում:

Նժդեհը աշխարհը դիտում է իր հոգու լուսամուտից եւ նրան պարտադրում իր ներապրումները: Նրա իւրաքանչիւր բառը արդիւնք է ներքին զննութեան, դրա համար էլ՝ ամեն մի խօսքը խտացեալ մտածում է:

Օրւայ հայը սիրում է օտար գաղափարներն ու մտքերը թարգմանել միայն, քիչ դէպքերում նա կարողանում է դրանք ներծուլել եւ մանաւանդ դրոշմել՝ ըստ իր էութեան պատկերի: Նրա մտաւորական ոգորումները յաճախ զուրկ են մնում ցեղային զգացումի վերահսկողութիւնից: Դրա համար էլ նա մտաւորապէս շուտ է այլասերւում:

Նժդեհը օգտագործում է միայն օտար մտքերն ու գաղափարները: Նա չի՛ ղեկավարւում նրանցով, այլ՝ ղեկավարում է դրանց: Իր հուժկու ցեղզգացութեան թափով նա ճմլում է նրանց սիրտը եւ ստիպում, որ սա տրոփի հայօրէն:

Օրւայ հայու իմացականութիւնը զինւած չէ կենսազգացութեամբ, այլ՝ միայն անթեւ բանապաշտութեամբ: Անզօր բանապաշտութիւնը յաճախ ենթակային մատնում է մտքի խուճապի, իսկ խուճապահար միտքը միշտ էլ ուրւականներ է ստեղծում, երեւակայութեան անտեղի տառապանք եւ խնդիրների քաոս: Նմանը դառնում է ջղային, զրկւում է ապրումների մշտավառ կրակից, ներքին լարումից ու լաւատեսութիւնից: Այդ է պատճառը, որ այսօր, երբ ազգերի կեանքը դառնում է մէկ էական կնճիռի - կենսաբանական-ցեղայինի - շուրջը, հայը հրապարակ է նետել անթիւ «կնճիռներ» եւ իր բանական ողջ պաշարը վատնում է դրանց վրայ: Նա չգիտէ խնդիրների «խնդիրը» զանազանել եւ հարցերի «հարցը», իր կեանքի մեծ հրատապը պարտադրել իր մտածում-զգացումին: Յաւիտենականը թողած՝ նա զբաղւում է առօրեայով, տունկը լքած՝ նա կծում ու աղմկում է թափւող տերեւների համար, ինչպէս դասալիքը, որ կռւի ժամանակ իր սիրտն ու սուրը գործի դնելու փոխարէն՝ դժգոհում է իր ձիու պայտից, իր կօշիկի գամերից եւ նրանց տալիս «ռազմագիտական» նշանակութիւն:

Նժդեհի միտքը գործում է իր սրտի զարկով. այդ պատճառով էլ նա զբաղւում է կենսաբանօրէն էականով: Հոգու յորձանումով նա մղւում է դէպի ծգողական այն ոյժը, որ կոչւում է յաւիտենական-ցեղային. դրա համար էլ նա համակւած է զգացումի կրակով, մշտախռով ապրումներով, անցումի կարօտով եւ լաւատեսութեամբ: Այս հոգեվիճակը նրան ընձեռում է մտքի

լարում, ուշադրութեան կենտրոնացում, որով՝ հարցերից «հարցը» ընտրելու եւ նրա մասին յայտնութեան լեզւով խօսելու ընդունակութիւն:

Օրւայ հայը ծառայելով չոր բանապաշտութեան՝ անտեսում է այն ճշմարտութիւնը, թէ իմացութիւնը կենսաբանական մի գործիք է: Դրա համար էլ նա ոչ թէ բովանդակութիւնը, այլ ձեւն է դարձնում նպատակ: Նա վիճում է՝ յենւած կրքերի «տրամաբանութեան» եւ ոչ թէ կենսաբանական բարոյականին: Այդ է պատճառը, որ նա անվերջ խօսում է, բայց չի կարողանում իր «գաղափարական» հակառակորդը տարհամոզել: Նա մոռանում է, որ, ընդհանրապէս, տրամաբանութեամբ «տարհամոզելը» մի նախապաշարում է, որ աշխարհում ամեն նւաճում լինում է յաղթահարումով, իսկ վերջինս՝ կենսաբանական ըմբռնում է: Նա չգիտէ, որ «յաղթահարել»-ը պայմանաւորւում է ինքնայաղթահարումով, ներքին տկարութեանց նւաճումով: Նա չգիտէ, թէ նւաճել սեփական անձը՝ նշանակում է պատմագործութեան մարզը իջնել ամբողջական «ես»-ով, այսինքն՝ ժառանգական եւ ստացական բոլոր կարողականութիւնների զօրահաւաքումով: Մինչդեռ օրւայ հայը գործի է լծել միայն իր լեզուն: Երբ սիրտը չի կառավարում լեզուն՝ սա դառնում է շփոթահարոյց գործիք: Սրտի իշխանութիւնը՝ դա «ես»-ի օրգանաւոր ներդաշնակութեան, անձի ներքին հաւաքականութեան յայտարարն է: Անկարելի է ներքուստ ցրւած լինել եւ շինարար լեզու ունենալ: Իսկ ներքուստ ցրւած են բոլոր նրանք, որոնց իմացութեան աղբիւրը ցեղը չէ: Այդպիսիք ընդհանրապէս ունեն երկարապատում, մանւածապատ ոճ եւ բեկորային մտածում:

Նժդեհի ոճը բեկորային է, մտածումը՝ ամբողջական: Բեկորային ոճը արդիւնք է մտքի անհանգստութեան - Նժդեհը «ցեղահոգ» է: Մտածման ամբողջականութիւնը պայմանաւորւում է նրա խորին ցեղազգացութեամբ - Նժդեհը ցեղամարդ է: Ցեղամարդը կենսազգաց իմացականութիւն ունի. նրա լեզուն սիրտն է, որում ցեղի արիւնի հետ՝ տրոփում է նրա գոյութեան խորհուրդը: Սրտով եւ արիւնով խօսել, ասել է՝ էութեան կսկիծն ու բերկրանքը վերածել բառի, դառնալ պատգամախօս - Նժդեհը պատգամախօս է: Նմանի իմացութեան աղբիւրը ցեղի էութեան անդունդն է, ենթագիտակցականը, յաւիտենականը: Նմանի իմացական իդէալը ինքնապաշտպանութիւնն է, ներիմացութիւնը: Ներքուստ ամբողջացած, ինքնայաղթահարումի յանգած «ես»-ը միայն ընդունակ է ներիմացական ապրումի: Այստեղ էլ ճշմարտագրվում է այն տեսութիւնը, թէ Բացարձակին ձուլւելը հնարաւոր է միայն սեփական ոգու երկնքի տակ՝ անցաւորը ապրելով եւ յաւիտենականի մասին մտածելով:

Երկու խօսք եւս:

«Ցեղը եւ Իր Տականքը» հակադրութեանց գիրք է: Կեանքի անկատա-

րութեան պատճառներից մէկն էլ թերեւս այն է, որ օրգանաւոր «գոյ»-ը բազմատարր է եւ տարբերարժէք, որ նա, ինչպէս Նիցշէն է ասում, կազմւած է ե՛ւ ոգուց ե՛ւ աղբից: Այս այլազանութիւնն ու այլարժէքութիւնը հիմք են դառնում մարդկային բարոյական զգացման: Դրանց վրայ է խարսխւում արժէքների ուսմունքը - բարոյագիտութիւնը: Վերջինս արժէքների հակադրութեանց գիտութիւն է: Համեմատական եղանակաբանութեան կիրարկմամբ, բարոյագիտութիւնը ձգնում է յանգել արժէքների համադրութեան իդէալին, հանրարժէք բարոյականի ըմբռնումին:

Այդպես է նաեւ Նժդեհի մեթոդը: Նա միմեանց է հակադրում ցեղազգաց ընտրանու լիարժէքութիւնն ու ցեղի տականքի անարժէքութիւնը, եւ մեր առջեւ դնում ցեղամարդ հայու գաղափարատիպը:

Ցեղամարդ հայը՝ դա զօրութենական բարոյականով օժտւած, ցեղային արժէքազգացութեամբ համակւած հայն է: Դա համադրական հայ «ես»ն է, հոգեւոր երկւութիւնից ձերբազատւած ամբողջական հայը:

Ա՛յս հայն է միայն ստեղծագործ, նա՛ է միայն հոգեւոր ինքնակառուցումի ընդունակ, նրա՛ ճակատը միայն կարող է մի օր պսակւել յաղթանակով:

Նժդեհի գիրքը կարօտի եւ զզւանքի գիրք է: Եւ հենց այդ պատճառով էլ, նա հոգեւոր ինքնակառուցումի նորատիպ մի փորձ է: Ամեն կառուցում նախատեսում է կառուցանիւթերի զննում, մերկացում, ճանաչում: Հեղինակը գտել է մեր կեանքի լուսաւոր եւ ստւերային գծերը եւ դրանք հակադրել միմեանց - ցեղը եւ իր տականքը: Ցեղը՝ դա կենսազօրոյթի յաւիտենական լուսաղբիւրն է, որ ոգիները վառում է ինքնայաղթահարումի, մեծագործութեան կարօտով: Տականքը՝ դա այրւած ոգու մնացորդն է, սրտի ապականութիւնը - հոգեւոր դիանեխութիւն, որ միայն զզւանք է յարուցանում:

Այս երկու զգացումները - կարօտ եւ զզւանք - ստեղծագործ ոյժեր են: Զզւանքը՝ դա ինքնաժխտումի խռովքն է, տկարութեանց բացասման նախաքայլը: Կարօտը՝ դա բարձրատիպ գոյութեան տենչն է, իբր արժէք յաւիտենականացնելու ճիգը: Զզւանքը իրականութեան խթանումն է, կարօտը՝ իդէալի երազը:

Ստեղծագործական ամեն յղութիւն պատճառւում է իրականութեան խայթումով, ստեղծագործական ամէն ծնունդ պայմանաւորւում է աշխարհի ցաւը յաղթահարելու կարօտով:

Հայ ցեղի տականքը՝ դա մեր օրերի ցաւն է:

Իսկ ի՞նչ է ասում ցաւը: Ինչպէս իմաստասէրն է նկատում, նա ասում է. «Անցի՛ր»: Զզւանքը՝ դա «թռչող թեւեր» է տալիս, իսկ ամէ՛ն թռչող ոգի, ամէ՛ն մտրակւած երեւակայութիւն համակւում է նորաստեղծութեան կարօտով:

Այդ կարօտը: Դա մեր կեանքի լինոյթն է. դա լինելիական հայու հոգեւոր

առաջընթացն է, դա յաւիտենական հայու անդադար չուն է:

Նորաստեղծւի՛ր այրելով մէջդ ինչ որ զգւելի է: Նորաստեղծւի՛ր վառելով մէջդ ինչ որ վսեմ է:

Այդ ասել է՝ հոգեկերտւի՛ր ցեղօրէն, համակւի՛ր հզօրանքի զգացումով, եղի՛ր դաշնակցական:

Այս է Նժդեհի կոչը, այս է նրա գրքի իմաստը:

Բ.

Նժդեհի գիրքը կրում է «Ամերիկահայութիւնը» ընդհանուր վերտառութիւնը: Նրա բովանդակութիւնը, սակայն բնորոշւում է «Ցեղը եւ Իր Տականքը» ենթախորագրով: Գրւածքի յօրինման իբր անմիջական շարժառիթ հանդիսացել են ամերիկահայ կեանքի վերջին տարիների իրադարձութիւնները: Նիւթը, սակայն, ընդհանուր է, համահայկական: Դա ներկայացնում է օրւայ հայ կեանքի համայնապատկերը:

Հեղինակը խորապէս ըմբռնել է, թէ ներկան ո՛չ այլ ինչ է, քան անցեալի եւ ապագայի հանգոյցը - մի կամուրջ, որի վրայից պատմագործ ցեղերը կատարում են իրենց յաւիտենական չուն: Այդ պատճառով էլ գրւածքն ստացել է վերլուծական նկարագիր, իսկ վերլուծման չափանիշը համարւել է յաւիտենական-ցեղայինը:

Հայութիւնը պատմականօրէն բաժանւած է երկու հակամարտ հոսանքների: Դրանցից մէկը «ցեղահոգ» է, միւսը՝ անձնազոհ: Մէկի ճակատը պսակում է ցեղի ձեռքը, միւսի էութիւնը կնքւած է ընկածութեան մրով: Մէկը վառւում է ցեղի կենդանանորոգ զօրութենականութեամբ, միւսը՝ մոխիր է միայն: Մէկն առաջնորդւում է ցեղի լինելիական բարոյականով, ինքնակատարելագործումի տենչ ունի եւ մարմնացնում է ճակատագիրը յաղթահարելու, բարձրանալու բնածիգը, միւսը՝ էութեամբ ստորնահակ է, «տականք»: Ըստ այդմ էլ՝ գիրքը բաժանւում է երկու մասի - Դաշնակցականութիւն եւ հակադաշնակցականութիւն:

Հեղինակի լաւատես ոգին մղել է նախ՝ զբաղւել հակադաշնակցական տականքի էութեան բնութագրմամբ: Նա քրքրում է այս հոգեւոր տիղմը, մերկացնում նրա զազրատիպ դէմքը, ախտորոշում նրա վէրքերը, յետոյ իր ընթերցողները դաշնակցականութեան լուսաւոր դէմքով մխիթարելու, նրանց դաշնակցական հզօրանքի շնչով վարակելու համար: Հենց այստեղ է գործի դաստիարակչական արժէքը. դա հոգեւոր ինքնակառուցումի գիրք է:

Ամբողջ գիրքը մշակւած է ամերիկահայ «եռագոյնի բանակին» ձօնւած «երկու խօսք»-ի եւ գրքի 15 հատւածների մէջ:

«Երկու խօսք»-ով արդէն ուրուագծւում է օրւայ հայութեան ներքին պայքարի դէմքը: Դա պայքարն է ցեղօրէն «յաւիտենական»-ի եւ ժողովրդօրէն «առօրեայ»-ի. նպատակադրութեան եւ «անուղի, աննպատակ» հոգեշփոթի, ցեղային «լիարժէքութեան» եւ մարդկօրէն «ընկածութեան գիտակցութեան»: Կողմերից մէկը - հակադաշնակցականութիւնը լծւած է «վատութեան» եւ «ամբարիշտ ուրացում»-ի գործին, միւսը՝ դաշնակցականութիւնը՝ խայթւած է ազգային ամօթանքի զգացումից:

Սրանով էլ պայմանաւորւում է գրքի ողբերգական բնոյթը, նրա ցեղացաւ շեշտը: Բոլոր ողբերգութիւնների հիմքը նրանում է, որ մարդս բարոյական զգացում ունի, իսկ երեւոյթները ենթակայ են չարի եւ բարու սկզբունքներին: Այս սկզբունքները ենթակայական ըմռնում-ապրումներ են, բայց տիեզերական ցաւի շեշտ կայ աւետարանչի ա՛յն խօսքի մէջ, թէ «Յիւրսն եկն եւ իւրքն զնա ո՛չ ընկալան»: Կեանքի վրայ մի անէծք կայ եւ այդ նրանում է, որ նոյն արգանդից ե՛ւ Աբէլ է ծնւում ե՛ւ Կայէն, որ մէկը չարն է գործում իսկ միւսը տառապում է ուրիշի գործած վատութեան համար: Մեր վիշտը նրանում չէ, որ աշխարհում թուրք կայ, այլ նրանում, որ թրքատիպ հայ կայ: Հայ՝ որ ցեղի ձայնը չի լսում, որ նրա առաքելութեան խորհուրդին չի հաւատում, հայ՝ որ չարութեան անօթ է եւ պղծւում է մեր ոգու ստեղծագործ երկունքը, որ անասնազգաց է, ընդունակ չէ ապրել ու հասկանալ, թէ իր ընկածութեամբ ի՛նչ սպանիչ ամօթանք, բարոյական ի՛նչ զարհուրելի տառապանք է պատճառում ցեղօրէն զգայուն հայ մարդուն:

Այստեղ է հայ կեանքի մղձաւանջը, այստեղ՝ նրա այրող ցաւը, այստեղ՝ մեր ողբերգութիւնը:

* * *

«Միջավայրը» հատւածում թւելով մարդա-աշխարհագրական, հոգեւորմշակութային, հոգեբանական եւ տնտեսական ա՛յն գործօնները, որոնք նպաստում են ամերիկահայութեան ցրվածութեան՝ հեղինակն այդ գաղութը բաժանում է երկու մասի - «Հայ հասարակութիւն դառնալու իղձալով առաջնորդւող ազգայնական հոսանք եւ ցեղօրէն դիմազուրկ ցրւածութիւն»:

Կենտրոնահակ եւ կենտրոնախոյս այս տրամադրութիւնները ունեն կենսա-հոգեբանական հիմք: Ցեղը կենտրոնաձիգ զօրույթ է, անցեղազգաց խուժանը՝ կենտրոնացիր հակում: Ցեղօրէն զգայուն տարրերն ունեն համախմբւելու բաղձանք, այսինքն՝ ընկերօրէն «հասարակութիւն», ազգօրէն պետութիւն դառնալու իղձալ: Դրա հանդէպ ցեղօրէն ուծացած տիպերը համակւած են վանողական զգացումով. ձգտում են ձերբազատւել ցեղի գերիշխանութիւնից եւ ապրել անձնօրէն: Դրանք զուրկ են կախումի, որով

պարտականութեան, ինչպէս նաեւ կարգապահութեան գիտակցութիւնից: Դրանք անձնիշխան չեն, այլ՝ միայն «ես»-ական, այսինքն՝ մանր շահերի եւ կրքերի գերի, որով՝ չունեն ցեղի ինքնիշխանութեան ըմբռնումը, այսինքն՝ հոգեբանօրէն ստրուկ են:

Հոգեբանօրէն ստրուկը նա չէ, որին քաղաքականօրէն ծանր մի դրութիւն է պարտադրուած, այլ նա՛, որ անձնիշխան դառնալու խռովք չունի: Նմանին պակասում է երկու բան - խորին հայրենազգացութիւն եւ խորին ինքնազգացութիւն, որով՝ հայրենասիրութիւն եւ ինքնասիրութիւն: Հայրենասէրը կարող է տարագրուել, բայց երբե՛ք հոգեպէս տեղափոխուել, ինքնասէրը կարող է պարտուել, բայց երբե՛ք անպատւօրէն տեղի տալ: Այս հակամերժ զգացումների փոքրրկումն է, որ այսօր գաղութահայ իրականութիւնը վերածել է կուսադաշտի: Ինքնազգաց հայը խօսում է Միացեալ եւ Անկախ Հայաստանից, վրէժից եւ հայ ճակատագրին ու դատին շուրջը ցեղօրէն համախմբուելու անհրաժեշտութիւնից, անցեղազգաց հայը երջանկութիւն ասելով հասկանում է անձնական շահը, իսկ այդ կարելի է ապահովել միայն անհատական ճիգով եւ նաեւ Հայաստանից դուրս:

Կենտրոնաձիգ եւ կենտրոնախոյս այս տրամադրութիւնները հեղինակը պատմա-հոգեբանօրէն բացատրում է նրանով, որ «հայութեան մի մասը՝ Ամերիկայում արմատ ձգելու նպատակով չի հեռացել երկրից, այլ եղել է պանդխտութիւն», մինչ «միւս մասը՝ Հայրենիքը թողել է ընդմիշտ, գնացել դրամ շահելու եւ նոր կեանք վայելելու նպատակով»:

Դաշնակցականը՝ դա ակամայից Հայրենիքը թողած «պանդուխտ» հայն է, որի «սրտում հայրենի հողի զգացումը դեռ այսօր էլ կենդանի է»: Հակադաշնակցականը՝ դա հոգեբանօրէն «անհայրենիք, ապահայրենական» հայ տիպն է:

Իբրեւ հայրենաստեղծական երկունքով համակուած էակ՝ դաշնակցական հայը տառապապաշտ է իր հոգեբանութեամբ. դրա հանդէպ՝ անստեղծագործ հակադաշնակցականի ոգին «չարութեան շտեմարան է»:

Տառապանքը ինքնաբուխ բարոյականի մէկ արտայայտութիւնն է, չարութիւնը՝ արտաքուստ հրահրուելու տրամադրութիւնը: Տառապապաշտը ինքնագիտակ երկնող է, ստեղծագործ, նրա իդէալն է սեփական էութեան արծանացումը (քաղաքականօրէն՝ այդ ասել է ազգային պետութեան կառուցումը): Ցեղօրէն վատը, չարը - դա արտաքին թշնամու գործիքն է, նրա զինակիցը, անինքնակամը, դրսից գրգռուողը - դրա իտէալն է բարոյական անձնատուութիւնը օտարին (քաղաքականօրէն՝ այդ ասել է օտարահպատակ մնալու տենչ):

*«Ցեղ եւ Հայրենիք», 1936թ., թիվ 2, 3*

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՏԱԳՆԱՊԻ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

(տպագրվում է որոշ կրճատումներով)

Կայ կրօնական, բարոյական, գաղափարական ընդհանուր տագնապ: Թւում է թէ կրօնը դադարել է քաղաքական գործօն լինելուց: Բայց դարաւոր հաւատալիքները ստեղծում են կեանքի համար բախտորոշ համոզումներ: Մասնաւորապէս քրիստոնէութիւնը մեր ժամանակներում ապրում է անթրոպոմորֆիզմի, մարդակերպացումի շատ նշանակալից մի առաջընթաց: Խզւել է ընդհանուր կապը, բայց հին համոզումները կենդանի են ազգերի մէջ, եւ դրանցից իւրաքանչիւրը իր կրօնն է կառուցում «ըստ պատկերի իւրում»: Թէպէտեւ գոյութիւն ունի, օրինակ, Պապական Աթոռ, բայց անգամ կաթոլիկ ազգերի համար չկան այլեւս քաղաքական կշիռ ունեցող ընդհանուր դոգմաներ: Բարոյական միութիւն չէ նաեւ իսլամը: Սա էլ չունի այլեւս ընդհանուր եւ հեղինակաւոր կենտրոն: Այստեղ էլ կրօնական համոզումները գնում են ազգային անհատականացման գծով: Չկան այլեւս միջազգայնօրէն ազդեցիկ քրիստոնէութիւն, իսլամութիւն, բայց կան քրիստոնեայ, իսլամ ազգեր: Այս երեւոյթը անզգալաբար նոր շեշտ եւ ուղղութիւն է տալիս քաղաքականութեան, որ այլեւս նոյնիսկ ձեւականօրէն չի ընթանում ընդհանուր սկզբունքներով, այլ՝ զուտ ազգային տրամադրութեամբ:

Սխալ հասկացողութեան արդիւնք են նաեւ մշակութային-տնտեսական «կապեր»ը: Տնտեսական գործունէութեան մի ձեւն է միայն իր բնոյթով միջազգային՝ առեւտուրը, որը ընթանում է մրցութեան սկզբունքով: Դրա հանդէպ մշակոյթը, որպէս ոգու արտայայտութիւն, զուտ ազգային ոլորտ է: Մշակոյթը էութեան յայտնութիւն է. իւրաքանչիւրին հարազատ է միայն ի՛ր էութիւնը: Չկա՛յ համամարդկային մշակոյթ, կա՛յ միայն ընդհանուր քաղաքակրթութիւն, որ ոգու եւ զգացումի տարածում չէ, այլ՝ մտքի եւ ձեռքի ստեղծած բարիքների, ձեւերի: Անգամ կրօնը զուտ մշակոյթ չի տարածում, այլ՝ բարոյական նորմեր եւ կենսահայեցողութիւն: Եւ դա մշակոյթ չէ, այլ՝ արդիւնքներից եւ միաժամանակ ազդակներից մէկը մշակութաստեղծ ոգու: Այդ պատճառով էլ իր յարուցած ապրումներն ա՛յնքան այլազան եւ տարբերաչափ են, որքան ազգային եւ անհատական «ես»ի

ստեղծած մշակութային որակները:

Ազգային կամ անհատական անձնաւորութեան կնիք է կրում անգամ իմաստասիրական-գիտական մտածումը: Իր արդիւնքներով էլ փիլիսոփայութիւնը դեռ չյանգեց գաղափարների ընդհանրութեան կամ իմացական մոնիզմի: Մարդկային իմացականութիւնն էլ ընթանում է մտաւոր բազմաձնութեան գծով: Այսօր կան գիտական բազմաթիւ սիստեմներ, անթիւ ճշմարտութիւններ, վարկածներ՝ գոյութեան հիմքերի, կեանքի իմաստի թէ բարոյականի մասին: Դեռ չկայ աններհակասելիօրէն ներածական մի բնազանցութիւն, որով՝ ընդհանրարժէք եւ հանրապարտադիր մի աշխարհայեցողութիւն, բարոյագիտութիւն, ընկերային դաւանանք: Կրօնական զգացումի, զուտ մշակութային որակների, քաղաքական-տնտեսական շահերի այլազանութեան հետ՝ ահա՛ նաեւ իմացական ըմբռնումների, գաղափարների, ճշմարտութիւնների եւ բարոյական չափանիշների քաոս:

Իմաստասիրական մտածումի բազմագծութիւնը իր կնիքը դրել է նաեւ ընկերաբանութեան, ուստի եւ հասարակական շարժումների վրայ: Սոցիոլոգիան չընծայեց գիտականօրէն անժխտելի ճշմարտութիւններ, այլ՝ միայն տեսութիւններ: Անծանօթ է մնում պատմական կամքի խորհուրդը եւ գիտականօրէն աննախատեսելի՝ նրա ուղղութիւնը: Այդ պատճառով էլ հասարակական շարժումները չունին գաղափարական միասեռ խորք եւ նրանցում գործում է նաեւ «երազների տրամաբանութիւնը»: Իսկ երազները մի՛շտ էլ կրում են անձնականութեան դրոշմ: Մասնաւորապէս Եւրոպայում միմեանց դէմ մահու եւ կենաց պայքար են մղում դեմոկրատիզմը, ռասիզմը* եւ բոլշեւիզմը...

Այս ուղղութիւններից դեմոկրատիզմը, իր խորքում, յենւում է «կամքի ազատութեան», բոլշեւիզմը՝ «նիւթապաշտական դետերմինիզմի», ռասիզմը՝ «կենսաբանական յաւիտենականի» վրայ: Բնազանցական այս ըմբռնումներով որոշւում է այս գաղափարաբանութիւնների հասարակաբանական արժէքը եւ նրանց գործնական բարոյականի նկարագիրը:

Դեմոկրատիզմը անզօր է ստեղծել իշխանութեան կենտրոնացում, որով եւ՝ ազգային ոգու լիագումար ամբողջացում: Որպէս իրաւախոհական ուսմունք, նա չի կարողանում վերացնել պետութեան, ժողովրդի, դասակարգերի փոխյարաբերութիւնների հակասութիւնները: Նա պառակտեալ մասերի գումար է եւ ո՛չ թէ օրգանական միութիւն: Որպէս «իրաւունքի» եւ «ազատականութեան» հին վարդապետութիւն, նա, անշո՛ւշտ, ստեղծել է աւանդութիւններ եւ քաղցր նախապաշարումներ («պարլամենտ», «ընտրութիւն», «քաղաքացիական ազատութիւն», եւն.), բայց իրենց խորքում դրանք կոմպրոմիսներ են խղճմտանքի հետ, որով՝ յարմար անօթներ գա-

ղափարաբանական պատեհապաշտութեան եւ քաղաքական բախտախնդրութեան: Այս տեսակէտով էլ երբեք զարմանալի չէ, որ անգլիական պահպանողականութիւնը ձեռք է երկարում «քրիստոնէական բարոյականը եւ մարդկային ազատական հասարակարգը խորտակող բոլշեւիզմին»: Դա համապատասխանում է «իրերի տրամաբանութեան». դեմոկրատիզմը եւ բոլշեւիզմը էակից են. տարբերութիւնը նրանց միջեւ որակական չէ, այլ՝ քանակական, բարոյական չէ, այլ՝ քաղաքական, հոգեւոր չէ, այլ `տնտեսական, բովանդակային չէ, այլ՝ ձեւական: Այսօր դեմոկրատիզմը բարոյական զէնքն է անգլեւֆրանսական այլացեղ եւ աշխարհագրօրէն ցրուած կայսրութիւնների տիրապետական քաղաքականութեան, բոլշեւիզմը՝ այլացեղ, բայց աշխարհագրօրէն միազանգ ռուսական պետութեան: Առաջինը ձգտում է մարդկութիւնը նուաճել բարոյական «կատեգորիա»ներով, երկրորդը՝ տնտեսական երջանկութեան հեռանկարներով: Նա ներկայանում է ամբոխի բոլոր խաւերի առաջնորդը, սա՝ նրա մի դասակարգի: Նա հաշւի է առնում պատմական ընդհանուր զարգացումը եւ շեշտը դնում քաղաքականութեան վրայ, սա՝ մեկնում է հասարակաբանութիւնից եւ քաղաքականութիւնը երանգաւորում է «ընկերային նպատակներով»: Դեմոկրատիզմը մտածումի անսկզբունքութիւն է, բոլշեւիզմը՝ բարոյական կեանքի: Երկուսն էլ չեն խոստանում ոգու, բանականութեան, սրտի, կամքի, բարոյական զգացումի ներդաշնակութիւն, որով՝ անհատի եւ հասարակութեան, ազգի եւ պետութեան, ժողովրդի եւ դասակարգի օրգանական միութիւն:

Այդ հակասութիւնները վերացնելու եւ օրգանապէս միացեալ ազգութիւն, ընկերութիւն, պետութիւն ստեղծելու ձգտում ունի ռասիզմը: Ցեղն է այս շարժումի էաբանական խորքը, ուստի՝ դա չի յենւում միայն սոցիոլոգիայի կամ պատմութեան վրայ, այլ հաշւի է առնում կեանքի բովանդակ ծաւալը եւ մղւում դէպի կենսաբանական մի մետաֆիզիկա: Նա դաւանում է ցեղային ոգու յաւիտենականութիւնը, եւ պատմութիւն, մշակոյթ, ընկերային կազմակերպութիւն, պետութիւն եւն. համարում նրա յայտնութիւնը: Յաւիտենականութեան կենսանաբանական ըմբռնումը նրան ընծայում է ցեղի - ոգու եւ արեան - անցեալի, ներկայի, ապագայի օրգանական միութեան զգացումը, եւ պահանջ է դարձնում ապրող հասարակութեան կեանքի կազմակերպումը՝ ըստ այդ զգացումի: Այստեղ էականը դասակարգային խնդիրը չէ, այլ՝ ոգեկան ոյժերի եւ արժէքների նւիրապետութիւնը: Այստեղ ամեն ինչ ստորադասւում է ցեղի յաւիտենականին եւ համակարգւում որպէս խղճմտանքի, անձնական շահու եւ հասարակական նպատակի ներդաշնակութիւն: Դրանով ստեղծւում է յաւիտենանպատակ - որով՝ ամ-

բողջական մարդը եւ ազգային հասարակութիւնը: Այստեղ չկան համամարդկային խարխափանքներ, անցեղ ընկերութեան երազանքներ, ո՛չ էլ ներազգային դասակարգային հակամարտութիւններ: Ցեղն է բոլորի ճակատագիրը եւ բոլորը գործում են նրա համար:

*«Տարօնի Արծիւ», 1939թ., թիվ 10*

---

* - խոսքը առողջ ցեղապաշտության մասին է եւ՝ ո՛չ ցեղամոլություն - խմբ.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ